ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵՔ

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

9

ՍԵՊՏԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ • 1976

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9

ՍԵՊՏԵՄԲԵՐ 1976

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угиов» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ









# ՍՄԿԿ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԾՐԱԳԻՐԸ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Կոմունիստական կուսակցության և սովետական պետության լենինյան արտաքին քաղաքականությունն արդի միջազգային հարաբերությունների կարևորագույն գործոնն է: Նրա դերը համաշխարհային զարգացման մեջ տարեցտարի ավելի է հզորանում: Եվ միանգամայն օրինաչափ է, որ ՍՄԿԿ համագումարները միջազգային կյանքի փուլերը նշանավորող ազդակներ են դարձել: Կուսակցության խաղաղասիրական կուրսը նոր ուժով հաստատեց ՍՄԿԿ XXV համագումարը:

Նախորդ տարիների միջազգային կյանքի էական իրադարձությունների, դրանց տենդենցների ու հեռանկարների խոր և բազմակողմանի վերլուծությունը, որը տրվեց Լ. Ի. Բրեժնևի «ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում» զեկուցման մեջ, իր փայլուն կիրառումն է գտնում մեր կյանքի բոլոր բնագավառներում, հիմք տալիս կրկին իմաստավորելու ՍՄԿԿ վարած կուրսի արդյունավետությունը, առավել խորությամբ լուսաբանելու առաջադրած ծրագրային խնդիրները: Վերջին տարիների միջազգային հարաբերությունների զարգացման արդյունքների ճիշտ գնահատումը կարևոր նշանակություն է ստանում մանավանդ այն պատճառով, որ մի շարք երկրներում այդ հարցը գաղափարական և քաղաքական պայքարի կիզակետում է գտնվում:

Հիրավի, անցած հինգ տարում միջազգային հարաբերությունները զարգացան ՍՄԿ XXIV համագումարի հռչակած խաղաղության ծրագրի նշանաբանով: Դրա գլխավոր իմաստն այն էր, որ, հենվելով համաշխարհային սոցիալիզմի հզորության, համախմբվածության ու ակտիվության վրա, բոլոր պրոգրեսիվ ուժերի հետ նրա ամրապնդվող դաշինքի վրա, խնդիր դրվեց ապահովել «սառը պատերազմից» դեպի հասարակական տարբեր սիստեմի պատկանող պետությունների խաղաղ գոյակցության, վտանգավոր լարվածությունից՝ իրոք դեպի նորմալ, փոխադարձ շահավետ համագործակցության շրջադարձը: Անցած տարիների միջազգային կյանքի իրադարձությունները համոզիչ կերպով հաստատեցին սովետական արտաքին քաղաքականության լենինյան սկզբունքների հույժ կենսականությունը, որը ցայտունորեն մարմնավորված է ՍՄԿԿ խաղաղության ծրագրում: Կրկին ու կրկին դրսևորվեց կուսակցության կիրառած արտաքին քաղաքականության կուրսի բարձր արդյունավետությունը, որի շնորհիվ խոշոր հաջողություններ ունենք մեր կենսագործունեության բոլոր բնագավառներում:

ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը կուսակցության XXV համագումարին սպառիչ պատասխան է տալիս այն հարցին, թե ինչպիսին կլինի սովետական պետության հետագա կուրսն արտաքին քաղաքականության ասպարեզում: Դա կլինի ժողովուրդների խաղաղության, ազատության և անկախության, միջազգային համագործակցության ընդլայնման համար մղվող պայքարի ծրագրի անշեղ իրագործմանն ուղղված կուրս: Պաշտպանելով լենինյան արտաքին քաղաքականության սկզբունքները, կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունն ավելի քան 58 տարի անդուլ և հետևողականորեն կենսագործում են խաղաղության և ընդհանուր անվտանգու-

թյան կուրսը: Ինչպես նշված է ՍՄԿԿ խաղաղության ծրագրում, երկու սիստեմների տևական և խաղաղ գոյակցությունը հնարավոր դարձնելու գործոնները շատ են. դրանք են՝ Սովետական Միության տնտեսական ու քաղաքական հզորության անշեղ աճը, սովետական ժողովրդի բարոյա-քաղաքական միասնությունը, նրա անսահման վստահությունը կոմունիստական կուսակցության նկատմամբ, մեր երկրի ժողովուրդների անխախտ բարեկամությունն ու եղբայրությունը, ամեն ագրեսորի խորտակիչ հակահարված տալու համար միշտ պատրաստ սովետական զինված ուժերի հետագա ամրապնդումը, գաղութային և կախյալ երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման ուժեղացումը:

Միջազգային կյանքը մեր աչքի առջև արագորեն փոխվում է: Եվ ինչպես փաստերն են վկայում, փոխվում է դեպի լավը: Համաշխարհային իրադարձությունների սրընթաց վազքը անհրաժեշտ է դարձնում արտաքին քաղաքական գործունեության մշտական զարգացումն ու կատարելագործումը:

Այո, փաստերը վկայում են, որ խաղաղության մեր ծրագրում նշված նպատակները ո՛չ միայն վեհասքանչ են իրենց բովանդակությամբ, այլև իրագործելի արդի պայմաններում: Անցած հինգ տարում հաջողվեց լուծել բազմաթիվ պրոբլեմներ, որոնց համար երկար ժամանակ պայքար էր մղվում:

Արդ, որո՞նք են այն կոնկրետ խնդիրները, որպիսիք առաջադրեց ՍՄԿԿ XXV համագումարն արտաքին քաղաքականության ասպարեզում: Նախ և առաջ դա եղբայրական սոցիալիստական պետությունների համատեղ ներդրումն է խաղաղության ամրապնդման գործում: Համագործակցության երկրների միասնության և համախմբվածության ամրապնդումը, հանուն նոր հասարակարգի կառուցման նրանց միջև բազմակողմանի համագործակցության զարգացումը միշտ էլ ՍՄԿԿ և սովետական պետության արտաքին քաղաքականության առաջնակարգ խնդիրն են հանդիսացել: Հիրավի, Սովետական Միության և սոցիալիստական մյուս պետությունների ընդհանուր ջանքերով ամրապնդվում են եղբայրական երկրների քաղաքական ու տնտեսական հզորությունը, նրանց միասնական քաղաքականության համաձայնեցվածությունը, հանուն կայուն խաղաղության և համագործակցության գործողությունները: Այս հանգամանքը հարաճուն դեր է խաղում միջազգային ասպարեզում տեղի ունեցող դրական վերափոխումների մեջ: Այդ եզրահանգումը հաստատվեց ՍՄԿԿ XXV համագումարում՝ եղբայրական կուսակցությունների պատվիրակությունների ղեկավարների ողջույնի ելույթներում:

Վերջին տարիների առավել նշանակալի իրադարձությունը Վիետնամի ժողովրդի հաղթանակն է: Հերոսական վիետնամական ժողովրդի ազատագրման կամքը, սոցիալիստական երկրների հզոր օգնությունը հանգեցրին Վիետնամի դեմ ուղղված իմպերիալիստական ագրեսիայի դադարեցման: Սովետական Միությունը, հավատարիմ լինելով ինտերնացիոնալիզմին, համաշխարհային սոցիալիզմի շահերին, բազմակողմանի օժանդակություն է ցույց տվել և շարունակում է օգնել Վիետնամին: Եղբայրական երկրների համաձայնեցված քաղաքականության խոշոր հաջողությունն է Գերմանական Դեմոկրատական Հանրապետության քաղաքական շրջափակման վերացումը, ԳԴՀ-ի ճանաչումը աշխարհի մոտ 100 պետությունների կողմից և նրա ընդունումը Միավորված ազգերի կազմակերպության կազմում: Ամրապնդվել է Կուբայի՝ արևմտյան կիսագնդի առաջին սոցիալիստական պետության, միջազգային դրությունը: Նոր հասարակարգի կառուցման ասպարեզում պատմական հաջողությունների են հասել նաև սոցիալիստական համագործակցության մյուս երկրները:

Հատկանշական է, որ սոցիալիստական համագործակցության երկրները համաշխարհային քաղաքականության՝ փաստորեն բոլոր հիմնական հարցերում ունեն միասնական համաձայնեցված գիծ: Այդ գիծը համընդհանուր խաղաղությունն ու միջազգային անվտանգությունն ամրապնդելու դասակարգային, ինտերնացիոնալիստական պլատֆորմն է: Սոցիալիզմի երկրների սկզբունքային ու ակտիվ խաղաղասիրական գործողություն-



ները հասցրին այն բանին, որ հետպատերազմյան ամբողջ պատմության մեջ որդեգրվեց թշնամական առճակատումից դեպի սոցիալիստական ու կապիտալիստական պետությունների ավելի ու ավելի հաստատուն խաղաղ գոյակցության, նրանց ողջամիտ համագործակցության, փոխադարձ շահավետության և ընդհանուր անվտանգության կուրսը:

Խաղաղությունն ամրապնդելու անհրաժեշտ պայմաններից մեկը իմպերիալիստական ագրեսիայի ծնունդ հանդիսացող կոնֆլիկտային իրավիճակների վերացումն է: Այս առումով կարևոր դեր ունի խաղալու Մերձավորարևելյան ճգնաժամի հաղթահարումը: Բանն այն է, որ այս աշխարհահատվածում ոչ միայն պահպանվում է լարվածությունը, այլև Իսրայելի ագրեսորները, հենվելով իմպերիալիստական որոշ շրջանների հսկայական օժանդակության, ինչպես նաև արաբական որոշ երկրների ղեկավարների ռեակցիոն քաղաքականության վրա, ձգտում են հավերժացնել տերիտորիալ զավթումները: Սովետական Միությունը և սոցիալիստական համագործակցության մյուս պետությունները միշտ պաշտպանել և պաշտպանում են իմպերիալիզմի և գաղութատիրության դեմ մաքառող ժողովուրդների արդար գործը:

Խաղաղության ամրապնդման ազդակներից մեկը ընդհանուր և լրիվ զինաթափումն է: Ներկայումս միջազգային իմպերիալիզմի մեղքով տարեկան ավելի քան 300 միլիարդ դոլար արժողությամբ միջոցներ են վատնվում ռազմական կարիքների համար: Միայն ԱՄՆ-ի ռազմական բյուջեն տարեկան հասնում է 110—115 միլիարդ դոլարի: Իհարկե, քաղաքական լարվածության թուլացումը բարենպաստ գոյավիճակ է ստեղծում ռազմական լարվածության թուլացման համար: Այդ միտումով կատարվող քայլերից մեկր Կենտրոնական Եվրոպայում սպառազինությունների և զինված ուժերի կրճատման հարցերի վերաբերյալ Վիեննայում տեղի ունեցող բանակցություններն են, որոնց սոցիալիզմի երկրները մեծ նշանակություն են տալիս: Այժմ տեղի է ունենում այդ բանակցությունների, ինչպես ընդունված է ասել, նոր «ռաունդը», որին մասնակցում են 19 պետությունների ներկայացուցիչները:

Այսօր, երբ սովետական ժողովուրդը, ինչպես նաև մյուս շատ երկրների միլիոնավոր մարդիկ թևակոխել են չորրորդ խաղաղ տասնամյակը, օգտակար է վերանայել անցյալի դասերը: Ավելի քան 30 տարիների ընթացքում, Հիրոսիմայի և Նագասակիի միջուկային պայթյունների պահից սկսած, մարդկությունն ապրել է այն բանի գիտակցությամբ, որ ինչ-որ տեղ, հորիզոնից այն կողմ, թաքնված է միջուկային աղետի սպառնալիքը: Վերոհիշյալ ողջ ժամանակամիջոցում խաղաղասեր մարդիկ ձգտել են, որպեսզի այդ սպառնալիքը մեկընդմիշտ վերացվի մարդկության կյանքից: Ներկայումս, վերջապես, ռեալ քայլեր են կատարվում այդ ուղղությամբ: ՍՄԿԿ խաղաղության ծրագրի կարևորագույն նշանակությունն այն է, որ վերջինս հատուկ խնդիրներ առաջադրեց պատերազմի սպառնալիքից կայուն խաղաղության և համագործակցության անցնելու համար ծավալված պայքարում:

Յուրաքանչյուր գիտակից մարդու համար միանգամայն պարզ է, որ ընդհանուր խաղաղության և միջազգային անվտանգության ապահովման համար արտակարգ կարևոր նշանակություն ունեն սովետա-ամերիկյան հարաբերությունները: Վերջին տարիների նշանակալից իրադարձություններից մեկը հենց այն է, որ կատարվեց դրական տեղաշարժ և լուրջ առաջխաղացում Սովետական Միության և Ամերիկայի Միացյալ Նահանգների միջև: Անցյալ տարիների փորձը համոզիչ կերպով ցույց տվեց, որ «սովետական սպառնալիքի» մասին առասպելներ տարածելն ու նիզակ ճոճելը, փոխշահավետ փոխանակությունների ոլորտում ինչ-որ խտրական պայմաններ փաթաթելու փորձերն այն լեզուն չեն, որով պետք է խոսել Սովետական Միության հետ: Երկու ժողովուրդների և ամբողջ աշխարհի անվտանգության շահերն անհապաղ պահանջում են պահպանել և ամրապնդել համատեղ ստեղծված ռեալիստական հիմքը: Ինչպես դա ընդգծվեց ՍՄԿԿ XXV համագումարում, Սովետական Միությունը մտադիր է հենց այդպես վարվել առաջիկայում: Լենինյան կուսակցության համաժողովի մյուս կարևոր առաջարկն արտաքին քաղաքական

որի նպատակն է զարգացնել բարեկամական հարաբերությունները Եգիպտոսի Արաբական Հանրապետության հետ, եգիպտական ժողովրդի հետ:

Մերձավոր Արևելքում այժմ պատերազմ չկա: Բայց այնտեղ չկա նաև խաղաղություն, մանավանդ անդորրություն: Եվ ո՞վ կհամարձակվի երաշխավորել, որ պատերազմական գործողությունների բոցը վերստին չի բռնկվի: Այդ վտանգը կպահպանվի, քանի դեռ իսրայելական բանակները մնում են օկուպացված հողերում: Այն կպահպանվի, քանի դեռ իրենց օրինական իրավունքներից զրկված են և հուսահատական պայմաններում ապրում են իրենց հողերից քշված հարյուր հազարավոր պաղեստինցիներ, քանի դեռ Պաղեստինի արաբ ժողովուրդը զրկված է իր ազգային պետությունն ստեղծելու հնարավորությունից: Մերձավոր Արևելքի կայուն խաղաղությունը պահանջում է նաև, որ երաշխավորվեն այդ շրջանի բոլոր պետությունների անվտանգությունը, նրանց անկախ գոյության ու զարգացման իրավունքը: Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա նա սկզբունքային և կոնստրուկտիվ դիրք է գրավում: ՍՍՀՄ-ը, որպես Ժնևի կոնֆերանսի համանախագահ, պատրաստ է գործակցելու կոնֆլիկտի իսկական կարգավորման նպատակ հետապնդող բոլոր ուժերի ջանքերին: Սովետական Միութունը կողմնակից է, որ պայմաններ ստեղծվեն՝ զարգացնելու հարաբերությունները Մերձավոր Արևելքի բոլոր երկրների հետ: Նա կանխակալ կարծիք չունի նրանցից որևէ մեկի դեմ: Մեր գերագույն նպատակն է ապահովել երկարատև և կայուն խաղաղություն Մերձավոր Արևելքում և ամբողջ աշխարհում:

Մեկ տարի անցավ Եվրոպայի մայրցամաքում անվտանգության և համագործակցության ապահովմանը նվիրված խորհրդակցության հաջող ավարտից: 1975 թվականի օգոստոսի 1-ին 35 տերությունների ղեկավար գործիչները ստորագրեցին արդի ժամանակաշրջանի միջազգային կյանքի պատմական փաստաթուղթը՝ Եզրափակիչ ակտը: «Հելսինկիի ոգին» այս մեկ տարվա ընթացքում ավելի ու ավելի մեծ ճանաչում է գտնում ամբողջ աշխարհում: Այն նոր թափ հաղորդեց խաղաղ համագործակցության կողմնակիցներին, հուժկու հակահարված տալով «սառը պատերազմի» ջատագովներին:

Համաշխարհային հասարակայնության ամենալայն խավերը խորին գոհունակությամբ են նշում, որ միջազգային լարվածության թուլացումը Հելսինկիից հետո դարձել է ավելի ակնառու, ավելի շոշափելի: Լարվածության թուլացման նյութականացումը այն ամենի էությունն է, ինչը պետք է իրոք կայուն և անսասան դարձնի խաղաղությունը Եվրոպայում: Հասկանալի է, որ պետությունների հարաբերությունների ճիշտ և արդարացի հռչակումը ինքնըստինքյան շատ կարևոր փաստ է: Սակայն պակաս կարևոր չէ այդ սկզբունքները արմատավորել արդի միջազգային հարաբերություններում, դրանք կիրառել պրակտիկայում և դարձնել միջազգային կյանքի օրենք:

Այս անցած մեկ տարվա ընթացքում կարգավորվեցին մի շարք բարդ պրոբլեմներ, որոնք խանգարում էին փոխադարձ հարաբերությունները եվրոպական պետությունների միջև դեռևս երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ընկած ժամանակաշրջանից: Այսպես, ամբողջ մայրցամաքի համար կարևոր նշանակություն ունեցան Լեհաստանի և ԳՖՀ-ի միջև մի շարք հարցերում ձեռք բերված պայմանավորվածությունները: Հարավսլավիան և Իտալիան վերջնական համաձայնության եկան Տրիեստի շրջանում պետական սահմանի մասին հարցում, լուծելով տերիտորիալ վիճելի փոքրաթիվ պրոբլեմներից մեկը Եվրոպայի քաղաքական քարտեզի վրա: Ներկայումս ակտիվ ջանքեր են գործադրվում համաեվրոպական խորհրդակցության մասնակից պետությունների միջև նաև մի քանի ուրիշ վիճելի հարցերում:

Որպեսզի արդարանան ժողովուրդների՝ Հելսինկիի խորհրդակցության որոշումների հետ կապված հույսերը, չսպասելով այլևայլ բարդացումների դեպքում, հարկավոր են հետագա ընդհանուր ջանքեր, հանդիպման մասնակից պետությունների ամենօրյա աշխատանք՝ լարվածության թուլացումը խորացնելու ուղղությամբ: Հռչակված սկզբունքների և պայմանավորվածությունների կենսագործումը Սովետական Միությունից, բոլոր խաղաղասեր երկրներից պահանջում է նոր ջանքեր, կպահանջի այսուհետև ևս հաղթահարել խաղաղության ու լարվածության թուլացման գործին հակազդող ուժերի հարուցած դժվարությունները ու արգելքները:



Սովետական Միությունն ու սոցիալիստական մյուս երկրները, մայրցամաքի կոմունիստները ու առաջադեմ բոլոր ուժերը Հելսինկիում իր աշխատանքն ավարտած համաեվրոպական խորհրդակցությունը համարում են կայուն խաղաղության և պատերազմը ժողովուրդների կյանքից բացառելու ուղիով հետագա համակողմանի առաջընթացի **մեկնակետ**: Այժմ գլխավորն այն է, որ քաղաքական լարվածության թուլացումը լրացվի ռազմական լարվածության թուլացմամբ: Այդ տեսակետից առաջնահերթ խնդիրներից մեկն էլ այն է, որ գտնվեն Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերն ու սպառազինությունները կրճատելու ուղիներ, առանց որևէ մեկի անվտանգությանը վնաս հասցնելու և օգուտ բերելով բոլորին: Մեր ժամանակի կարևորագույն պահանջներն են՝ հասնել սպառազինությունների մրցավազքի կրճատման, իսկ ապա նաև՝ դադարեցման, առաջ շարժվելով դեպի ընդհանուր և լրիվ զինաթափում, նվազեցնել ռազմական դիմակայությունը եվրոպական հողում, հաղթահարել Եվրոպայի պառակտումը հակադիր ռազմական բլոկների: Սովետական Միությունը ելնում է այն բանից, որ խորհրդակցության որոշումները մեծ նշանակություն ունեն ոչ միայն եվրոպացիների համար: Լարվածության թուլացումը պետք է ընդլայնվի, խորացվի, տարածվի աշխարհի բոլոր շրջանների վրա:

Եվրոպայի մայրցամաքը վերջին ժամանակներում ռազմական ճգնաժամերի անմիջական օջախ չի հանդիսանում: Միջազգային իրադրությունը մեր օրերին թունավորում են ամենից առաջ այն կոնֆլիկտները, որոնք բռնկվել են Եվրոպայից դուրս— Իսրայելի ագրեսիան Մերձավոր Արևելքում, ՆԱՏՕ-ի դավադրությունը Կիպրոսի հանրապետության դեմ, եղբայրասպան պատերազմը Լիբանանում, ռասիստների հակամարդկային գործողությունները Հարավային Աֆրիկայում: Ռազմական գործողությունների չգոյությունը Եվրոպայում մայրցամաքի խաղաղասեր ուժերի անվիճելի ծառայությունն է, դա հետևանք է Սովետական Միության և սոցիալիստական մյուս պետությունների կողմից՝ հանուն խաղաղության և անվտանգության մղվող պայքարի: Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ղեկավարությամբ խաղաղության պաշտպանության օգտին ակտիվորեն հանդես են գալիս Եվրոպայի բանվոր դասակարգը, ինչպես նաև դեմոկրատական առաջադիմական մյուս ուժերը:

«Այսօր մեր մայրցամաքը,— նշեց կոմունիստական ու բանվորական 29 կուսակցությունների Բեռլինի կոնֆերանսում ունեցած իր ելույթում Լ. Ի. Բրեժնևը,— արդեն բնավ էլ այն Եվրոպան չէ, որ երեսուն տարի առաջ երկրորդ համաշխարհային պատերազմից դուրս եկավ ավերված, արյունով ողողված, հրդեհներով ճարակված: Դա նույն այն Եվրոպան չէ, որպիսին էր նա ընդամենը տասնհինգ տարի առաջ, «սառը պատերազմի» ժամանակաշրջանում: Փոխվել է դասակարգային ուժերի հարաբերակցությունը միջազգային առումով և շատ պետությունների ներսում: Մեծապես աճել է այն դերը, որ Եվրոպայի հասարակական կյանքում խաղում են բանվոր դասակարգն ու նրա ավանգարդը կազմող կոմունիստական կուսակցությունները»: Այն, ինչ ձեռք են բերել Եվրոպայի ժողովուրդներն այսօր, շեշտեց Լ. Ի. Բրեժնևը, նախ և առաջ ֆաշիստական ագրեսորների և ստրկացնողների դեմ մղված ազատագրական պայքարի արգասիքն է:

Ավելի է զարգանում միջազգային առևտուրը, որը կարևոր գործոն է խաղաղության և անվտանգության ապահովման գործում: Ղեկավարվելով հասարակական տարբեր սիստեմներ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքով, մեր երկիրը հաջողությամբ է ստեղծում իր տնտեսական կապերը զարգացած կապիտալիստական պետությունների հետ: Վերջերս կնքված երկարաժամկետ առևտրական համաձայնագրերը Ֆինլանդիայի, Ֆրանսիայի, ԳՖՀ-ի, Ճապոնիայի, Իտալիայի, Շվեդիայի, Կանադայի, ԱՄՆ-ի,

Անգլիայի և մյուս զարգացած կապիտալիստական երկրների հետ նախատեսում են առևտրի հետագա զարգացում։ ՍՍՀՄ-ի խոշորագույն առևտրական պարտնյորներն են՝ ԳՖՀ-ն (որի հետ ապրանքաշրջանառությունը 1975 թ. կազմեց 2,8 միլիարդ ռուբլի), Ճապոնիան (1,9), Ֆինլանդիան (1,8), ԱՄՆ-ը (1,6), Իտալիան (1,4), Ֆրանսիան (1,3), Անգլիան (1,0 միլիարդ ռուբլի)։ Այդ յոթ երկրների հետ ունեցած մեր ապրանքաշրջանառությունը կազմում է կապիտալիստական զարգացած բոլոր պետությունների հետ ունեցած մեր արտաքին առևտրի ավելի քան $^{2}/_{3}$ մասը։

Հանուն խաղաղության և պրոգրեսի, պատերազմի և ագրեսիայի դեմ պայքարի կարևոր գործոնի է վերածվում չմիացված երկրների շարժումը, որն ավելի ու ավելի է ընդունում հակաիմպերիալիստական և հակագաղութարարական բնույթ։ Դա նոր ուժով արտահայտվեց և ընդգծվեց չմիացված երկրների պետությունների և կառավարությունների ղեկավարների 5-րդ կոնֆերանսում, որը տեղի ունեցավ Շրի Լանկայի մայրաքաղաք Կոլոմբոյում, 1976 թվականի օգոստոսի 16-ից 19-ը։

Խաղաղությունը ոչ միայն անվտանգություն է. այն էական նախադրյալ է արդի քաղաքակրթության խոշոր պրոբլեմների լուծման համար, որը սերտորեն առնչվում է մարդկության ապագայի հետ։ Բավական է հիշատակել դրանցից մի քանիսը— էներգետիկ ռեսուրսների օգտագործում, շրջապատի բնական միջավայրի պահպանում, համաշխարհային օվկիանոսի հարստությունների յուրացում— համոզվելու համար, թե որքան կարևոր են երկու սիստեմների պետությունների համատեղ ջանքերը։ Կենսաթրթիռ գլոբալ պրոբլեմների լուծումն անխուսափելիորեն զուգորդվում է տնտեսական և գիտատեխնիկական կապերի համակողմանի զարգացման հետ, որը կայուն խաղաղության նյութական հիմքն է, բովանդակ աշխարհի բոլոր ժողովուրդների անկասելի ձգտումը։

Սոցիալիզմի խաղաղասիրական առաքելությունը վճռաբար պահանջում է ակտիվ գործողություններ, պետությունների միջև համագործակցության հաստատման նորանոր ուղիներ։ Այժմ սոցիալիզմի արտաքին քաղաքական ակտիվությունն իր բնույթով դարձել է առավել դինամիկ ու հարձակողական։ Պատահական չէ, որ համաշխարհային հասարակությունն այն անվանել է խաղաղ հարձակում։ Վերջինս ենթադրում է ջանքերի լարում, առաջ ընթանալու, նվաճած բնագծերը նոր բարձունքների հասցնելու ձգտում։ Հանուն խաղաղության պայքարում բազմապատկելով իր ուժերը, սոցիալիզմը բախտորոշ ներգործություն ունի համաշխարհային զարգացման ընթացքի վրա։ Բարի կամքի տեր մարդիկ տեսնում են կոնկրետ գործերով հիմնավորված ռեալ խաղաղություն։

ՍՄԿԿ Կենտկոմը և սովետական կառավարությունը հետևողական աշխատանք են տանում, որպեսզի պետությունների միջև վիճելի հարցերի լուծումը զերծ լինի ուժի գործադրումից և հրաժարումը վերջինից դառնա միջազգային կյանքի օրենք։ Պատերազմի սպառնալիքն է՛լ ավելի թուլացնելու և զինաթափման ասպարեզում առաջընթացի բարենպաստ պայմաններ ստեղծելու համար Սովետական Միությունն առաջարկում է կնքել միջազգային հարաբերություններում ուժ չգործադրելու համաշխարհային պայմանագիր։ Դրա մասնակիցները, ներառյալ, իհարկե, միջուկային տերությունները, կպարտավորվեին վիճելի հարցերը լուծելիս ձեռնպահ մնալ ամեն տեսակ, ինչպես և ատոմային, զենքի գործադրումից։

ՍՄԿԿ XXV համագումարը հատուկ ուժով շեշտեց, որ կուսակցության միջազգային գործունեությունը համաժողովրդական գործ է. պայքարը հանուն խաղաղության, հանուն նոր, կոմունիստական հասարակարգի կառուցման, կոմունիստների, ողջ սովետական մարդկանց կյանքի իմաստն է։ Սովետական երկիրը, մեր մեծ հերոսական ժողովուրդը լենինյան կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ առաջիկայում նույնպես համախմբված սոցիալիստական համագործակցության պետությունների հետ առավել վճռաբար կներգործեն համաշխարհային իրադարձությունների, մարդկության սոցիալական առաջընթացի վրա։

Խաղաղության և անվտանգության համար մղվող պայքարում վճռական դեր են խաղում սոցիալիստական երկրները, կոմունիստական ու բանվորական կուսակցությունները։ Այս օրերին Եվրոպայի կոմունիստները, ոգեշնչված մայրցամաքի եղբայրական կոմկուսների հունիսի 29—30-ին տեղի ունեցած խորհրդակցության հաջողությամբ, ավելի են ակտիվացնում իրենց գործունեությունը հանուն խաղաղության և համագործակցության ամրապնդման։ Ֆաշիստական վարչակարգերի տապալումը Պորտուգալիայում և Հունաստանում, գործադուլային շարժման նոր հուժկու ալիքը Իտալիայում, Իսպանիայում և շատ ուրիշ փաստեր վկայում են դասակարգային մարտերի հետագա սրման մասին։

Առաջադրելով խաղաղության ծրագիրը, ՍՄԿԿ-ն նորից է շեշտում, որ դրված նպատակների իրականացման համար Սովետական Միությունը պատրաստ է համագործակցելու բոլոր պետությունների հետ։ Սովետական նոր առաջարկները, ինչպես նաև ՍՄԿԿ XXV համագումարի բոլոր որոշումները ողջունված են լավատեսությամբ։ Մեր ժողովուրդը քաջ գիտակցում է, որ Սովետական Միության արտաքին քաղաքականության խաղաղատենչ նպատակները լայն ըմբռնում և պաշտպանություն կգտնեն աշխարհի բոլոր առաջադեմ ուժերի կողմից։

Սովետական ժողովուրդը հպարտ է, որ մեր հայրենիքը միշտ եղել է, կա ու կմնա որպես հուսալի և հաստատ հենարան աշխարհի բոլոր ժողովուրդների համար հանուն լուսավոր, խաղաղ ապագայի։ Ահա թե ինչու հողագնդի ողջ առաջավոր մարդկությունը խոր խանդաղատանքով ընդունեց ՍՄԿԿ XXV համագումարի փաստաթղթերը, որոնք քաղաքական ու տնտեսական վիթխարի նշանակություն ունեն մարդկության մեծ առաջընթացի համար։

Ինչպես տեսնում ենք, ՍՄԿԿ խաղաղության պատմական ծրագիրն ամենալայն կիրառումն է գտնում միջազգային հարաբերությունների ոլորտում, որը բարենպաստ պայմաններ է ստեղծում աշխարհի սոցիալ-քաղաքական կյանքի կոմունիստական վերափոխման համար։

## ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

# ԲԱՐՁՐՈՐԱԿ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԹՈՂԱՐԿՈՒՄԸ ՄԵՐ ՊԱՐՏՔՆ Է

**Կ. Հ. ՂԱՄԲԱՐՅԱՆ**
ՀՍՍՀ Մինիստրների սովետի նախագահի տեղակալ

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆ աշխատանքային բարձր ոգևորությամբ ձեռնամուխ է եղել նոր հնգամյակի իրականացմանը, որը կարևոր փուլ է մեր երկրում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման ասպարեզում։*

*ՍՄԿԿ XXV համագումարը զարգացրեց և կոնկրետացրեց կուսակցության տնտեսական քաղաքականության սկզբունքային դրույթները զարգացած սոցիալիստական հասարակարգի պայմաններում՝ առաջիկա հնգամյակի և ավելի տևական հեռանկարների սահմանումով հանդերձ։*

*Ընկեր Լ. Ի. Բրեժնևը կուսակցության համագումարում ասաց. «Ինչպես որ ամեն մի ստրատեգիա, կուսակցության տնտեսական ստրատեգիան սկըսվում է խնդիրների առաջադրումից, հիմնական, տևական նպատակների առաջադրումից։ Դրանց մեջ գերագույնը եղել է ու մնում է ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացումը։ Տնտեսական ստրատեգիան ներառնում է նաև միջոցների, այն ուղիների հստակ սահմանումը, որոնք տանում են դեպի առաջադրված նպատակները։ Դրանք են հանրային արտադրության դինամիկ և համամասնական զարգացումը, նրա արդյունավետության բարձրացումը, գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, աշխատանքի արտադրողականության աճը, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակի համակողմանի բարելավումը։ Հենց այս ամենից էլ գումարվում է տասներորդ հնգամյակի գլխավոր խնդիրը...»* (ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, *էջ 65)։*

*Երկրի առջև ծառացած տնտեսական ու սոցիալական բազմապիսի խնդիրները հաջողությամբ լուծելու համար չկա ուրիշ ուղի, քան աշխատանքի արտադրողականության արագ աճը, արտադրության արդյունավետության բարձրացումը, մի հանգամանք, որը կուսակցության տնտեսական ստրատեգիայի կարևորագույն բաղկացուցիչ մասն է։*

*Ժողովրդական տնտեսության զարգացման տասներորդ հնգամյակը համագումարը կոչեց արդյունավետության ու որակի հնգամյակ։ Հիրավի, հանրային արտադրության արդյունավետության բարձրացման հիմնական ուղիներից մեկը արդյունաբերական արտադրանքի որակի անշեղ բարելավումն է։ Մեքենաշինության ճյուղերում առանձնահատուկ նշանակություն են տանում արտադրատեսակների տեխնիկական մակարդակի բարձրացման, դրանց ծառայության ժամկետների երկարաձգման, ավելի հուսալի աշխատանքի ապահովման, դրանց առավել արտադրության և միավորների կարողության մեծացման հարցերը։*

*Արտադրանքի որակի բարձրացումը նպաստում է հասարակական աշխատանքի արտադրողականության աճին, նյութական ռեսուրսների խնայողությանը, հիմնական ֆոնդերի ավելի լավ օգտագործմանը, արտահանության ընդլայնմանը, ժողովրդական տնտեսության հիմնական խնդիրների հաջող լուծմանը։*

*Արտադրանքի տեխնիկական մակարդակի ու որակի բարձրացման հարցերը դեռ երբեք այնքան կոնկրետ ու հետևողականորեն չեն դրվել, ինչպես կուսակցության ու կառավարության վերջին տարիների որոշումներում։*

*Կուսակցության XXV համագումարում տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Էկոնոմիկայի բոլոր ճյուղերի, յուրաքանչյուր մինիստրության և ձեռնարկության աշխատանքի կողմնորոշումը դեպի արդյունավետության և որակի վճռական բարձրացում, ընկերնե՛ր, հիմա ամենակարևորն է։*

*Որակի պրոբլեմը մենք շատ լայն ենք հասկանում։ Այն ընդգրկում է տընտեսական գործունեության բոլոր կողմերը։ Բարձր որակը աշխատանքի և նյութական ռեսուրսների խնայողությունն է, արտահանության հնարավորությունների աճը, իսկ, վերջին հաշվով, հասարակության պահանջմունքների ավելի լավ, ավելի լրիվ բավարարումը։ Ահա թե ինչու արտադրանքի որակի բարձրացմանը պետք է նպատակամղվեն պլանավորման և կառավարման ամբողջ մեխանիզմը, նյութական և բարոյական խրախուսման ամբողջ սիստեմը, ինժեներների և կոնստրուկտորների ջանքերը, բանվորների վարպետությունը։ Այդ բանին պետք է մշտապես բևեռված լինի կուսակցական կազմակերպությունների, արհմիությունների և կոմերիտմիության ուշադրությունը» (Նույն տեղը, էջ 72)։*

*ԿԵՆՍԱԳՈՐԾԵԼՈՎ ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ որոշումները, հանրապետության աշխատավորները որոշակի հաջողություններ են ձեռք բերել տնտեսական շինարարության բնագավառում։ Անցած հնգամյակում հանրապետության ազգային եկամուտն աճել է 46 տոկոսով, արդյունաբերական արտադրության ծավալը մեծացել է 45, կապիտալ ներդրումների ծավալը՝ 30 տոկոսով։ Առաջանցիկ զարգացում է ունեցել ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը, որի աճման տեմպերը կազմել են 49,2 տոկոս։*

*Որոշակի աշխատանք է կատարվել արտադրության մեքենայացման ու ավտոմատացման, տեխնոլոգիական նոր պրոցեսների և աշխատանքի առաջավոր մեթոդների արմատավորման, որակական բարձր ցուցանիշներ ունեցող նոր արտադրատեսակների յուրացման, թողարկվող արտադրանքի տեսականու նորացման մարզերում։ Ուժեղացվել է աշխատանքը հիմնական ֆոնդերի նորացման, արտադրական նոր կարողությունների յուրացման, արտադրության կուլտուրայի բարձրացման, կադրերի որակավորման աճի բնագավառում։ Անցած հնգամյակում նոր տեխնիկայի ներդրման ասպարեզում արմատավորվել է մոտ 2.400 կարևորագույն միջոցառում, այդ թվում 900-ը՝ առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, 450-ը՝ մեքենայացման, 100-ը՝ արտադրական պրոցեսների ավտոմատացման, 70-ը՝ հաշվողական տեխնիկայի արմատավորման ոլորտում։ Մշակվել են սինխրոնային գեներատորների, սնման գազատուրբինային ագրեգատների, տրանսֆորմատորների ու կոմպլեքսային տրանսֆորմատորային ենթակայանների, էլեկտրոնային ավտոմատ սարքերի նոր սերիաների կոնստրուկցիաներ և այլն։*

*Այդ ժամանակաշրջանում հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններն ու միավորումները յուրացրել են տեխնիկա-տնտեսական ու որակական բարձր ցուցանիշներ ունեցող մեքենաների, սարքերի, իրերի ու նյութերի ավելի քան 300 նոր տեսակների սերիական արտադրությունը։*

Հանրապետության ձեռնարկությունն երն ու կազմակերպությունն երն աշխատանքներ են կատարում սերիական կարգով թողարկվող արտադրանքը որակի երեք կատեգորիաներով և, առաջին հերթին, պետական որականիշով ատեստատավորելու համար: Եթե 1971 թվականի վերջին հանրապետությունում միայն 7 արտադրատեսակ է ունեցել որականիշ, ապա ընթացիկ տարվա ապրիլի 1-ին ավելի քան 530 արտադրատեսակ թողարկվում էր պետական որականիշով: Նախատեսվում է մինչև տարվա վերջն այդպիսի արտադրատեսակների քանակը հասցնել 640-ի:

Արտադրանքը պետական որականիշի համար ատեստատավորելու և պլանավորելու գործում լավ են աշխատել էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններն ու միավորումները, որոնք թողարկել են 217, թեթև արդյունաբերության մինիստրությունը՝ 141, սննդի արդյունաբերության մինիստրությունը՝ 39 անուն արտադրատեսակ. «Հայէլեկտրասարքավորում» միավորումը՝ 55, «Հայէլեկտրալույս» միավորումը՝ 52, Երևանի Լենինի անվան մետաքսի կոմբինատը՝ 14, կոշիկի «Մասիս» ֆիրման՝ 7,6, Լենինականի տեքստիլ կոմբինատը՝ 35 տոկոս, ինչպես և Երևանի կոնյակի գործարանի ողջ արտադրանքը արժանացել է պետական որականիշի: Պետական որականիշով արտադրատեսակներ են թողարկվում նաև հաստոցագործիքային, քիմիական, էլեկտրոնային արդյունաբերության, սարքաշինության, կապի միջոցների, քիմիական և նավթային մեքենաշինության, տեղական արդյունաբերության ձեռնարկություններում: Պետական որականիշ ունեցող արտադրատեսակների 50 տոկոսից ավելին ժողովրդական սպառման ապրանքներ են:

Արտադրանքի որակի բարձրացման ասպարեզում կատարվող բազմակողմանի աշխատանքում մեզ մեծ օգնություն է ցույց տալիս այն հիանալի նախաձեռնությունների կենսագործումը, որոնցով մշտապես հարստանում է սոցիալիստական տնտեսավարության պրակտիկան:

Դրանցից մեկը արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմի արմատավորման բնագավառում Լվովի մարզի կուսակցական կազմակերպությունների և ձեռնարկությունների կոլեկտիվների աշխատանքի փորձն է, որն արժանացել է կուսակցության Կենտկոմի հավանությանը: Այդ սիստեմը պարունակում է պրակտիկայում իրենց արդարացրած այն պրոգրեսիվ մեթոդները, որոնք ճանաչում են գտել Մոսկվայի, Լենինգրադի, Սարատովի, Գորկու, Յարոսլավլի, Կրեմենչուգի և այլ քաղաքների արդյունաբերական ձեռնարկություններում: Կուտակված փորձի ստեղծագործական զարգացումը հնարավորություն ստեղծեց իրականացնելու միասնական մոտեցում պրոբլեմի լուծման համար, միացնելու որակի կառավարման ճյուղային և տերիտորիալ մեթոդները:

Կոմպլեքսային սիստեմի շրջանակներում միմյանց հետ փոխկապակցված են տեխնիկական, տնտեսական, սոցիալական և կազմակերպական միջոցառումները: Դա հնարավորություն է ընձեռում, հենվելով աշխատավորների լայն մասնակցության վրա, ակտիվորեն ազդելու որակի ձևավորման բոլոր փուլերի՝ արտադրատեսակների նախագծման, արտադրության և շահագործման վրա:

Մեր գործարանների կոլեկտիվները, հետևելով Լվովի մարզի օրինակին, դրական հասումներ ունեն թողարկվող արտադրանքի բարձր ու կայուն որակն ապահովելու գործում: Նրանք ներդրել են կազմակերպական-տեխնիկական կոմպլեքս միջոցառումներ, որոնք ընդգրկում են հարցերի լայն շրջան, կազմակերպել են ձեռնարկության բոլոր աշխատանքների ու ծառայությունների կոորդինացումն ամբողջ արտադրական ցիկլով, ապահովել են կոլեկտիվի անդամների ակտիվ մասնակցությունը կատարվող աշխատանքներին՝ բանվորից սկսած մինչև ձեռնարկության ղեկավարը: Այլ կերպ ասած, իրականացվել է սիստեմային մոտեցում արտադրանքի որակի կառավարման պրոբլեմի նկատմամբ:

Մեծ ուշադրության արժանի են ձեռնարկությունների ստանդարտների բազայի վրա արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմների



արմատավորման աշխատանքները, որ իրականացնում է հանրապետության թեթև արդյունաբերության մինիստրությունը, նրա հատուկ նախագծային կոնստրուկտորական բյուրոն՝ ձեռնարկությունների հետ համատեղ: Կոշիկի «Մասիս» ֆիրման, Լենինականի Ջկալովի անվան կարի ֆաբրիկան, Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատը, Սովետաշենի տրիկոտաժի միավորումը, Երևանի Լենինի անվան մետաքսի կոմբինատը և մինիստրության մյուս ձեռնարկությունները, հմտորեն օգտագործելով երկրի համանման ձեռնարկությունների կուտակած փորձը, գիտականորեն մշակում և հաջողությամբ արմատավորում են արտադրանքի որակի կառավարման ֆունկցիոնալ սիստեմներ: Եվ պատահական չէ, որ նրանք հաջողությունների են հասնում արտադրանքի որակի բարձրացման գործում, ապահովվում դրա կայուն թողարկումը: Միայն 1975 թվականին այդ կոլեկտիվները թողարկել են 32,2 մլն ռուբլի ընդհանուր գումարի 90 անուն արտադրատեսակ պետական որականիշով: Հանրապետության առաջավոր շատ ձեռնարկությունների կոլեկտիվներ նպատակասլաց աշխատանք են կատարում թողարկվող արտադրանքի որակը շարունակ բարձրացնելու համար:

ՍԱԿԱՅՆ ՁԵՌՔ ԲԵՐՎԱԾ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԲՆՈՐՈՇ ՉԵՆ հանրապետության բոլոր ձեռնարկությունների համար: Արդյունաբերական արտադրանքի որակի ընդհանուր վիճակը Հայաստանում դեռևս մնում է անբավարար: Շատ ձեռնարկությունների իրականացրած միջոցառումները կրում են ժամանակավոր, անսիստեմ բնույթ, չեն ընդգրկում տեխնիկա-տնտեսական, սոցիալական և կազմակերպական միջոցառումների ողջ կոմպլեքսը, որոնք անհրաժեշտ են արտադրանքի որակը արմատապես բարելավելու համար:

Վերլուծությունը ցույց է տալիս, որ արտադրատեսակների վատ որակի հիմնական պատճառներից մեկը դրանց տեխնիկական մակարդակը բարձրացնելու նպատակով կատարվող դեռևս անբավարար աշխատանքն է: Սարքաշինական գործարանները թողարկում են լայն նոմենկլատուրայի էլեկտրասարքեր՝ էլեկտրական և ոչ էլեկտրական մեծությունները չափելու ու կարգավորելու համար: Դրանցից մի քանիսն իրենց կոնստրուկտիվ լուծումներով հնացել են և չեն համապատասխանում տեխնիկայի արդի մակարդակին (ունեն կինեմատիկ շատ բարդ սխեմա, մեծածավալ են և չեն ապահովում բարձր ճշգրտություն):

Հաստոցաշինական գործարանները արտադրում են հիմնականում լայն-ունիվերսալ մետաղահատ հաստոցներ, որոնց մի մասը քիչ արտադրողական է, հուսալի չէ շահագործման մեջ և մրցունակ չէ: Ծրագրային կառավարում ունեցող հաստոցների թողարկման տեսակարար կշիռը աննշան է: Շատ դանդաղ է ընթանում հաստոցաշինական արտադրանքի նորացումը: 1974 թվականին այն կազմել է արտադրության ընդհանուր ծավալի միայն 2,7 տոկոսը: Արդի պահանջներին ու տեխնիկայի զարգացման մակարդակին չհամապատասխանող հնացած մոդելների ու մակնիշների արտադրանք են թողարկվում քիմիական, էլեկտրատեխնիկական արդյունաբերության, նավթային ու քիմիական մեքենաշինության և արդյունաբերության այլ ճյուղերի մի շարք ձեռնարկություններում: Առանձնապես ցածր են միութենական ենթակայության մեքենաշինական ձեռնարկությունների՝ կուլտուր-կենցաղային և տնտեսական օգտագործման ապրանքների արտադրության մակարդակն ու որակը: Այդ ճյուղերի գիտահետազոտական և կոնստրուկտորական կազմակերպությունները միանգամայն անբավարար են զբաղվում այդ ապրանքների մշակման հարցերով, մեծ մասամբ դրանք թողարկվում են առանց անհրաժեշտ տեխնիկական փաստաթղթերի, իսկ երբեմն՝ պարզապես նմուշներով: Նշված գործարաններում տեխնիկական լավ բազայի առկայության դեպքում էլ կուլտուր-կենցաղային ու տնտեսական օգտագործման ապրանքների արտադրությունը կազմակերպված է ոչ հաստատուն հիմքի վրա, պրիմիտիվ ձևով: Բացի դա, արդյունաբերական ձեռնարկություններն իրենց տրամադրության տակ չունեն և չեն ստանում անհրա-

ժեշտ ինֆորմացիա այդ ապրանքների նկատմամբ պահանջարկի կոնյունկտուրայի մասին, որը հանգեցնում է կազմալուծման և արտադրածախքերի։

Մասսայաբար խախտվում են տեխնոլոգիական ռեժիմները, պետական ստանդարտները։ Ցածրորակ արտադրանք թողարկելու և այդ արտադրանքը նորոգման համար ձեռնարկություններին վերադարձնելու պատճառով մեծ կորուստներ է ունենում հանրապետության արդյունաբերությունը։ Միայն անցյալ տարի ՍՍՀՄ պետստանդարտի հայկական հանրապետական վարչությունը և Հայկական ՍՍՀ առևտրի մինիստրության ապրանքների որակի պետտեսչությունն անորակ արտադրանք թողարկելու համար հանրապետության ձեռնարկություններին և միավորումներին ներկայացրել են 7,2 մլն ռուբլու տնտեսական սանկցիաներ՝ դրանք հանելով պլանի կատարման հաշվետու տվյալներից։

ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԲԱՐՁՐ ՈՐԱԿՆ ԱՊԱՀՈՎԵԼՈՒ ԳՈՐԾՈՒՄ եղած լուրջ թերությունները պայմանավորված են աշխատանքի և արտադրության կազմակերպման գործում եղած բացերով ու վրիպումներով։

Քննության առնենք դրանցից մի քանիսը։

Արտադրանքի որակի բարձրացումը կասեցնող գործոններից մեկը բուն արտադրության դեռևս ոչ բավարար բարձր տեխնիկական ու կազմակերպական մակարդակն է։ Առանց բազմաթիվ արտադրությունների տեխնիկական վերազինման չի կարելի հաջողությամբ լուծել տեխնիկական առաջընթացի արագացման, նոր տեխնիկայի ու առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, թողարկվող արտադրանքի նոմենկլատուրայի նորացման խնդիրները։ Մի շարք գործարաններում տեխնիկական վերազինման պլանների մշակման ու դրանց կենսագործման նկատմամբ եղած ձևական վերաբերմունքի պատճառով ստացվում է աննշան արդյունք։ Ձեռնարկությունների շատ ղեկավարներ կոլեկտիվների անդամներին չեն ներգրավում տեխնիկական վերազինման պրոբլեմների մշակման գործում, չթուլացող վերահսկողության տակ չեն առնում դրանց իրականացումը, կոլեկտիվներում չեն ստեղծում մասսայական ստեղծագործական որոնումների, տեխնիկայի ու գիտության հարցերում պահպանողականության, լճացման նկատմամբ անհանդուրժողականության մթնոլորտ։

Նման վերաբերմունքով կարելի է բացատրել, որ արտադրության կազմակերպման մակարդակը ոչ բոլոր տեղերում է համապատասխանում սերիական ու խոշոր սերիական արտադրության պահանջներին, որ շատ ձեռնարկություններ հագեցված են հիմնականում քիչ արտադրողական, լայն ունիվերսալ մետաղահատ հաստոցներով, որ դանդաղ են արմատավորվում մշակման անհրաժեշտ գերճշգրտություն ունեցող ավտոմատ գծեր, ագրեգատային հաստոցներ և բարձր արտադրողական այլ սարքավորումներ։ Տեխնոլոգիան կատարելագործվում է անբավարար և ոչ շարունակաբար, ցածր է շատ արտադրությունների տեխնոլոգիական հագեցվածության մակարդակը, որի հետևանքով մի շարք ձեռնարկություններում չի ապահովվում արտադրության տեխնոլոգիայի ու կազմակերպման մակարդակի համապատասխանությունն արտադրատեսակի տեխնիկական մակարդակին, արտադրության տեխնոլոգիական նախապատրաստումն անբավարար չափով է ենթարկված այդ նպատակին։

Ոչ բոլոր արտադրություններն են ապահոված չափման ժամանակակից միջոցներով սարքավորված լաբորատորիայով, չափագիտական բազայով, ինչպես նաև վերահսկիչ ու չափիչ ստենդներով՝ արտադրատեսակների կոմպլեքսային փորձարկումներ կատարելու և դետալների, հանգույցների, պատրաստի արտադրանքի, հումքի, նյութերի և կոմպլեկտավորող առարկաների որակական ցուցանիշները ստուգելու համար։

Մի շարք ձեռնարկությունների ղեկավարներ պատշաճ ուշադրություն չեն դարձնում Արտադրության տեխնոլոգիական նախապատրաստման միասնական սիստեմի (ԱՏՆՄՍ)՝ արտադրության տեխնոլոգիական նախապատրաստման պրոցեսների կազմակերպման ու կառավարման սիստեմի պետական ստանդարտների արմատավորմանը, որը նախատեսում է առաջավոր տիպային պրոցեսների, ստանդարտ տեխնոլոգիական հարդարանքի ու սարքավորումների,





արտադրական պրոցեսների և ինժեներա-տեխնիկական աշխատանքների մեքենայացման ու ավտոմատացման միջոցների լայն կիրառում մեքենաշինության, սարքաշինության արտադրատեսակների ու ավտոմատացման միջոցների արտադրության մեջ։ Գորկու, Կիևի, Կազանի, Ռիգայի, Սվերդլովսկի, Պերմի և երկրի մյուս քաղաքների առաջավոր ձեռնարկություններում ԱՏՆՄՍ-ը փուլ առ փուլ ներդնելու փորձը հաստատում է սիստեմի բարձր արդյունավետությունը։

Արտադրության տեխնիկական ոչ բարձր մակարդակը հետևանք է նաև այն բանի, որ հիմնական ֆոնդերը փոշիացած են բազմաթիվ մանր ձեռնարկություններում։ Նման ձեռնարկությունները, որպես կանոն, ունենում են արտադրության մանր սերիական և եզակի բնույթ, չունեն գիտական և անհրաժեշտ կոնստրուկտորական բազա, արտադրանքի և արտադրության տեխնիկական մակարդակը բարձրացնելու տեխնիկական ու տնտեսական հնարավորություններ։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացման տեմպերը կասեցնող հաջորդ գործոնը գիտության ու տեխնիկայի նվաճումներն արտադրության մեջ արմատավորելու ասպարեզում տարվող անբավարար աշխատանքն է։ Հանրապետության նոր տեխնիկայի ամենամյա պլանները կատարվում են 75—85 տոկոսով։ Չի ապահովվում նոր տեխնիկայի արմատավորման պլանների անընդմեջությունը, որը խոչընդոտում է գիտության նվաճումների կոմպլեքսային օգտագործման խնդրի լուծմանը։ Գիտատեխնիկական առաջընթացը արագացնելու, նոր տեխնիկան արմատավորելու, արտադրանքի տեխնիկական մակարդակն ու որակը շարունակ բարձրացնելու գործում մեծ դեր պետք է կատարեն գիտահետազոտական, նախագծային-կոնստրուկտորական կազմակերպությունները։

Արդյունաբերության բնագավառում գործում են 24 գիտահետազոտական հաստատություններ, մոտ 180 կոնստրուկտորական կազմակերպություններ։ Նրանք որոշակի աշխատանք են կատարում իրենց ճյուղերում արտադրության տեխնիկական մակարդակը բարձրացնելու համար, ապահովում են նոր տեխնիկայի մշակումն ու ներդրումը արտադրության մեջ։ Սակայն այդ կազմակերպությունների աշխատանքում կան էական թերություններ։ Անդրադառնանք դրանցից մի քանիսին։

Գիտահետազոտական և կոնստրուկտորական-տեխնոլոգիական մի շարք կազմակերպություններ չեն ձգտում առավելագույն չափով բարելավելու նոր տեխնիկայի տեխնիկա-տնտեսական պարամետրերը, կրճատելու դրանց մշակման ժամկետները։ Երբեմն արտադրատեսակների նոր տիպեր նախագծելիս խախտվում են ստանդարտները։ Մշակվող տեխնիկան այս կամ այն ցուցանիշով չի համապատասխանում որակի բարձր կատեգորիային։ Չափազանց անբավարար են մշակվում միասնականացված բլոկների ու հանգույցների բազայի վրա մեքենաների, սարքերի ու ապարատների սերիաները։

Գիտատեխնիկական ինֆորմացիան անբավարար կազմակերպելու հետևանքով մի շարք գիտական հաստատություններում, նախագծային-կոնստրուկտորական կազմակերպություններում, ինչպես նաև արդյունաբերական ձեռնարկություններում շատ քիչ է մշակվող թեմաների, նոր մշակված և մոդեռնացված արտադրատեսակների տեխնոլոգիական պրոցեսների, սխեմա-կոնստրուկտորական լուծումների և տեխնիկա-տնտեսական ցուցանիշների նորությունը։

Գիտահետազոտական, կոնստրուկտորական-տեխնոլոգիական կազմակերպություններն ու արդյունաբերական ձեռնարկությունները պետք է ստեղծագործական համատեղ ջանքերով ապահովեն արտադրանքի որակի ու տեսականու հետագա բարելավումը, ընդլայնեն ժամանակակից պահանջներին համապատասխանող նոր արտադրատեսակների մշակումն ու արտադրությունը, բարձրացնեն որակի բարձր կատեգորիայի արտադրատեսակների տեսակարար կշիռը՝ թողարկվող արտադրանքի ընդհանուր ծավալում։

Ավելին, ՍՄԿԿ XXV համագումարը խնդիր է դրել հետևողականորեն իրականացնել առանձին մեքենաների ու տեխնոլոգիական պրոցեսների ստեղծումից ու մշակումից անցումն արտադրության բոլոր պրոցեսների մեքենայա-

ցումն ու ավտոմատացումը ապահովող մեքենաների, սարքավորումների, սարքերի ու տեխնոլոգիական պրոցեսների բարձր արդյունավետ սիստեմների մշակմանը, արտադրությանն ու կիրառմանը:

Մյուս ոչ պակաս կարևոր հարցն այն է, որ մի շարք հաստատությունների (Վնիիլտեկմաշ-ի Երևանի մասնաճյուղի, Կիրովականի ավտոմատիկա ԳՀԻ-ի, Երևանի միկրոէլեկտրոնիկայի ինստիտուտի և այլն) ամենամյա թեմատիկ պլաններն ու գիտական մշակումները չեն կապակցվում հանրապետության արդյունաբերության համապատասխան ճյուղերի հետագա զարգացման կոնկրետ խնդիրներին: Նրանք թույլ են կապված ձեռնարկությունների հետ, չեն կիրառում ստեղծագործական համագործակցության և մրցության վերաբերյալ ձեռնարկությունների հետ պայմանագրեր կնքելու փորձը, որը լայն տարածում է գտել ողջ երկրում, էական ազդեցություն չեն գործում հանրապետության արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման վրա:

Մեզ մոտ քիչ չեն դեպքերը, երբ թողարկվող արտադրատեսակները և, առաջին հերթին, մեքենաշինության արտադրանքները, կուլտուր-կենցաղային և տնային օգտագործման ապրանքները չեն համապատասխանում ժամանակակից գեղագիտական ձևերին, ունեն ապրանքային ոչ հաճելի տեսք, փաթեթավորում և մակնիշում: Շատ գիտահետազոտական ինստիտուտներ, կոնստրուկտորական բյուրոներ, ձեռնարկություններ ու կազմակերպություններ պատշաճ ուշադրություն չեն դարձնում այդ կարևոր հարցին և դրանց նախագծման աշխատանքներին մասնակից չեն դարձնում նկարիչ-կոնստրուկտորներին:

Տեխնիկական էսթետիկայի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի՝ Երևանում կազմակերպված հայկական մասնաճյուղը, որի հիմնական խնդիրը արդյունաբերական արտադրանքի գիտահետազոտական և գեղարվեստական-կոնստրուկտորական մշակումն է, գործում է ցածր արդյունավետությամբ, դեռ չի ստացել քաղաքացիության իրավունք:

ՀԱՆՐԱՀԱՅՏ Է ՍՏԱՆԴԱՐՏԱՑՄԱՆ ՄԵԾ ԴԵՐԸ թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի ու որակի արմատական բարձրացման հարցերում: Սակայն ստուգումներից պարզվում է, որ հանրապետության շատ ձեռնարկություններ, արտադրամիավորումներ, գիտահետազոտական ինստիտուտներ և կոնստրուկտորական բյուրոներ ոչ միայն չեն ապահովում ստանդարտների ժամանակին արմատավորումը, այլև կատարում են կոպիտ խախտումներ, շեղումներ ստանդարտների պահանջներից, լրիվ չեն օգտագործում ստանդարտացման մեծ հնարավորությունները թողարկվող արտադրանքի որակի հետագա բարելավման համար:

Պատշաճ որակի արտադրանք մշակելու և թողարկելու, ստանդարտներն ու տեխնիկական պայմանները արմատավորելու և դրանց պահանջների բավարարման գործում ոչ պակաս կարևոր դեր պետք է խաղան արտադրանքի որակին հսկող հանրապետական կազմակերպությունները՝ գերատեսչական և պետական հսկողության մարմինները, այդ թվում և ՍՍՀՄ պետստանդարտի հայկական հանրապետական վարչությունը:

Պետստանդարտի վարչությունը պետք է ուժեղացնի կապը հանրապետության մինիստրությունների, գերատեսչությունների և արդյունաբերական ձեռնարկությունների հետ, ամենօրյա օգնություն ցույց տա նրանց՝ որակի կառավարման, ստանդարտացման պետական սիստեմների արմատավորման, ստանդարտացման և չափագիտության ծառայություններն ուժեղացնելու գործում:

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղություններում ասված է. «Բարձրացնել ստանդարտների դերը գիտատեխնիկական պրոգրեսի արագացման և պատրաստի արտադրանքի, հումքի, նյութերի ու կոմպլեկտավորող առարկաների որակի բարելավման գործում: Կատարելագործել ստանդարտներն ու տեխնիկական պայմանները, բարձրացնել տնտեսական մարմինների, ձեռնարկությունների և միավորումների պատասխանատվությունը դրանց պահպանման համար»:

Խոսքը սպառողներին ստանդարտներով և տեխնիկական պայմաններով



ապահովելու սիստեմը կատարելագործելու մասին է: Այդ առթիվ կան համապատասխան որոշումներ: Սակայն ձեռնարկությունները, միավորումները, գիտահետազոտական և նախագծային-կոնստրուկտորական կազմակերպությունները շարունակում են բողոքել ժամանակին ինֆորմացիա չստանալու, անհրաժեշտ ստանդարտներն ու տեխնիկական նորմաները ձեռք բերելու բարդության, իսկ երբեմն նաև անհնարինության մասին:

Կոմպլեքսային և առաջանցիկ ստանդարտացման ներկայիս վիճակը կարող է որոշ դժվարություններ առաջ բերել արտադրանքի տեխնիկական մակարդակի ու որակի արմատական բարձրացման հարցերը լուծելիս: Որպես կանոն, այս բնագավառի աշխատանքների պլանավորումը պետք է կատարվի առաջանցիկ (հեռանկարային) և կոմպլեքսային ստանդարտների բազայի վրա, որոնք հաշվի են առնում արտադրանքի որակի ցուցանիշների կանխատեսումը որոշակի ժամանակաշրջանի համար և ինչպես պատրաստի արտադրանքի, այնպես էլ դրա թողարկման համար անհրաժեշտ հումքի, նյութերի և կոմպլեկտավորող առարկաների որակի ցուցանիշների կոմպլեքսային բարձրացումը:

ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԲԱՐՁՐ ՈՐԱԿՆ ապահովելու գլխավոր պայմաններից մեկը բարոյական-հոգեբանական գործոնն է, բարոյական մթնոլորտն աշխատանքային կոլեկտիվներում: Գաղտնիք չէ, որ դեռևս ոչ բոլոր կոլեկտիվներում և դրանց ոչ բոլոր անդամների մոտ է, որ կոմունիստական վերաբերմունքը աշխատանքի հանդեպ դարձել է վարքի ամենօրյա նորմ: Մի շարք ձեռնարկություններում մենք մեծ ծախքեր ենք անում աշխատանքային ցածր կարգապահության, արտադրանքի թողարկման տեխնոլոգիական ռեժիմների ու տեխնիկական պայմանների հաճախակի խախտումների պատճառով:

Այստեղ շատ բան է կախված բանվորական կադրերի պրոֆեսիոնալ պատրաստության մակարդակից, նրանց վարպետության կատարելագործման կիրառվող սիստեմից: Մենք պետք է մեկընդմիշտ հասկանանք, որ պրոֆեսիոնալ բարձր պատրաստությունը և գիտակցական վերաբերմունքն աշխատանքի նկատմամբ թողարկվող արտադրանքի բարձր որակի երաշխիքն են: Ուստի, մենք պարտավոր ենք անթերի աշխատանքի սիստեմը դիտել որպես որակի կառավարման կոմպլեքսային սիստեմի կարևորագույն տարրերից մեկը: Դժբախտաբար, հանրապետությունում բանվորների աշխատանքի ընդունման ու ազատման գործակիցը կազմում է մոտ 40 տոկոս: Բանվորական ուժի նման մեծ հոսունությունը բացատրվում է աշխատանքի ու արտադրության գիտական կազմակերպման, պրոգրեսիվ նորմատիվների արմատավորման գործում եղած լուրջ թերություններով, ինչպես նաև աշխատատար պրոցեսների մեքենայացման անբավարար տեմպերով, բարձր արտադրողական աշխատանքի համար անբավարար պայմաններով:

Աշխատանքի ու արտադրության ճիշտ կազմակերպման համար անհրաժեշտ է կատարելագործել ձեռնարկություններում բանվոր-ծառայողներին բարոյապես և նյութապես խրախուսելու համար որակի ցուցանիշների սիստեմներ, ինչպես նաև որակի համար բանվորներին, ծառայողներին ու ինժեներատեխնիկական աշխատողներին պարգևատրելու մասին կանոններ մշակելու և արմատավորելու աշխատանքը, համակողմանի հաշվի առնել որակական ցուցանիշները սոցիալիստական մրցության արդյունքներն ամփոփելիս:

Հայտնի է, որ բանվորների աշխատանքի վարձատրության գործող սիստեմը հաշվի է առնում աշխատանքի և՛ քանակը, և՛ որակը: Բայց այդ սիստեմն այնքան էլ կատարյալ չէ, քանի որ աշխատավարձը հաշվարկվում է՝ առաջին հերթին ելնելով կատարված գործողությունների կամ պատրաստված դետալների քանակից: Իսկ որակը հաշվի է առնվում այնքանով, որքանով նրանց չեն վճարում խոտանի համար: Այդ պատճառով էլ վարձատրության սիստեմն անբավարար է խթանում աշխատանքի բարձր որակը, չի ապահովում աշխատանքի արդյունքների դիֆերենցված գնահատումը:

Աշխատանքի վարձատրության սիստեմի կատարելագործման հարցը շատ կարևոր է. դրանով զբաղվում են համապատասխան իրավասու մարմիններ, իսկ արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարները պետք է ստեղծագոր-

ծաբար մոտենան դրան, մշակեն և արմատավորեն բանվորների նյութական խրախուսման այնպիսի սիստեմ, որն ապահովի աշխատանքի բարձր որակը՝ պարգևատրման ֆոնդերից տարբեր տեսակ լրացուցիչ վարձատրությունների, պարգևատրումների միջոցով։ Այս դեպքում օգտակար կլինի կիրառել առաջավոր ձեռնարկությունների հարուստ փորձը։

ՍՄԿԿ XXV համագումարը խնդիր դրեց՝ «Կատարելագործել տնտեսավարման և տնտեսական խթանման մեթոդները, միավորումների, ձեռնարկությունների և կազմակերպությունների աշխատանքի գնահատման չափանիշների սիստեմը՝ ելնելով արտադրության վերջնական արդյունքները բարելավելու անհրաժեշտությունից։ Ուժեղացնել տնտեսական խթանների դերն արտադրության արդյունավետության աճի, արտադրանքի որակի բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, ձեռնարկությունների համաչափ աշխատանքի ապահովման, աշխատանքային և նյութական ռեսուրսների օգտագործումը բարելավելու ասպարեզում» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը..., էջ 23)։ Մեր խնդիրն է՝ ամեն կերպ օգտագործել արտադրության վրա ներգործելու բոլոր միջոցները, տնտեսական այնպիսի լծակները, ինչպիսիք են շահույթը, գնագոյացումը, ստանդարտները, տեխնիկական վերահսկողական գործունեության կատարելագործումը, տեխնոլոգիական և արտադրական կարգապահության ամրապնդումը։

ՄԵԶ ՀԱՄԱՐ ԱՌԱՆՁՆԱՀԱՏՈՒԿ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆ են ստանում կապիտալ շինարարության մեջ տեխնիկական առաջընթացն արագացնելու, շինարարական-մոնտաժային աշխատանքների որակը շեշտակիորեն բարձրացնելու հարցերը։ Վերջին տարիներին այս բնագավառում նկատելի է որոշ տեղաշարժ։

Հանրապետությունում մշակվել են ընդհանուր միութենական ուղեցույցներ սեյսմիկ շրջանների համար բնակելի ու հասարակական երկաթբետոնե կարկասային շենքեր նախագծելու և կառուցելու վերաբերյալ, փորձարարական շինարարության համար տների սերիայի նոմենկլատուրա, հարկերը և ծածկերը բարձրացնելու մեթոդով բնակելի տների շինարարության կոնստրուկցիաներ ու տեխնոլոգիա, մշակվում են ծավալային-տեղափոխվող տախտակապատվածքի մեթոդով կառուցվող փորձարարական տների նախագծեր։

Ավելացել է խոշորաչափ տարրերից, հանգույցներից, պանելներից ու բլոկներից, կրող և միջնորմող լրիվ հավաքովի կոնստրուկցիաներից կատարվող շինարարությունը։ Միջոցառումներ են կիրառված շինարարության մեջ նոր նյութերի՝ ապակեպրոֆիլիտի, արդյունաբերական շենքերը ծածկելու համար պողպատյա պրոֆիլացված ծածկերի, ալյումինե համաձուլվածքներից կոնստրուկցիաների ու առարկաների գործադրմամբ ապահովելու կոնստրուկցիաների դիմացկունությունը, աշխատանքային ծախսումների կրճատումը և կատարվող աշխատանքների բարձր որակը։

Շինարարության որակը, սակայն, ընդհանուր առմամբ մնում է անբավարար։ Նախագծից կատարված էական շեղումների և շինարարական աշխատանքների կատարման սահմանված նորմաների ու կանոնների կոպիտ խախտումների հետևանքով, Մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրության «Հայջրշին» № 1 տրեստի մեղքով փլվել է Մարմարիկ գետի ջրամբարի ամբարտակի հատվածակողմը։

Շինարարության ցածր որակի հիմնական պատճառներն են՝ տրեստների ու շինվարչությունների ղեկավարների ինքնամեկուսացումը շինարարական-մոնտաժային աշխատանքների որակին վերահսկելուց, անպատասխանատվությունը, այն, որ ինժեներա-տեխնիկական անձնակազմը, բրիգադիրներն ու շինարար վարպետները վատ գիտեն աշխատանքների կատարման նորմաներն ու կանոնները, տեխնիկական փաստաթղթերը, չեն ապահովում աշխատանքների տեխնոլոգիան։ Շինարարության որակը մեծ չափով պայմանավորված է աշխատանքների կազմակերպման մակարդակով, շինարարության տեխնոլոգիայի առաջավոր մեթոդների արմատավորումով, նախագծային-տեխնիկական փաստաթղթերի պահանջների և շինարարության ժամկետների պահպանումով, ինչպես և շինարարական ինդուստրիայի վիճակով, նրա տեխնիկական առաջըն-



թացով, թողարկվող շինարարական նյութերի, կոնստրուկցիաների ու առարկաների որակով։ Ցավոք, շինարարական շատ նյութերի և շինարարական ինդուստրիայի առարկաների որակը շարունակում է մնալ անբավարար, այն մի շարք ցուցանիշներով չի համապատասխանում ստանդարտների պահանջներին։ Շինարարության որակն առանձնահատուկ կարևորություն ունեցող հարց է։ Շինարարական արտադրության որակի բարձրացումը կապիտալ ներդրումների արդյունավետ օգտագործման հսկայական ռեզերվ է։

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԸ ԵՎ ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԸ 1975 թվականի ապրիլին որոշում ընդունեցին «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին»։ Այն նշանավորում է որակական նոր փուլ հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համար և սահմանում է դրանց հետագա զարգացման սկզբունքային ուղիները՝ արտադրողական ուժերի առկա ու պոտենցիալ հնարավորությունների գիտական խոր վերլուծության և կոմպլեքսային հաշվառման հիման վրա։

Հանրապետության արդյունաբերության հետագա զարգացումն ապահովվելու է մեքենաշինության ոչ նյութատար և արտադրության բարձր կուլտուրա ունեցող ճյուղերի զարգացումն արագացնելու միջոցով, նրա կառուցվածքի արմատական կատարելագործման հաշվին։

Նախատեսված է ռադիոտեխնիկական, էլեկտրոնային, էլեկտրատեխնիկական, սարքաշինական արդյունաբերության, կապի միջոցների արտադրության և արդյունաբերության այլ ճյուղերի առաջանցիկ զարգացում, որոնք ժողովրդական տնտեսության տեխնիկական առաջընթացի նախապայմանն են։

Որոշումը, որպես հանրապետության կուսակցական և սովետական մարմինների կարևորագույն խնդիրներ, նշում է արդյունաբերական արտադրության արդյունավետության նշանակալի բարձրացումը՝ ձեռնարկությունների գործող արտադրական կարողությունների ավելի լրիվ օգտագործման, դրանց վերակառուցման, տեխնիկական վերազինման և նոր տեխնիկայի ու առաջադիմական տեխնոլոգիայի արմատավորման հիման վրա։

Հանրապետության առջև դրված մեծ ու պատասխանատու խնդիրները կատարելու համար մենք մեր ջանքերն ամենից առաջ ուղղում ենք հանրային արտադրության համակողմանի ինտենսիվացման ապահովմանը, որը մեր տնտեսական զարգացման հիմնական ուղղությունն է։

Մենք պետք է բոլոր ուժերով ձգտենք արդյունաբերական արտադրանքի որակի և տեխնիկական մակարդակի հետագա առավել բարձրացմանը, և այժմ շատ կարևոր է մեր բոլոր մինիստրությունների, գերատեսչությունների, գիտահետազոտական և նախագծային-կոնստրուկտորական կազմակերպությունների, ձեռնարկությունների, շինարարական կազմակերպությունների, մեր բոլոր կադրերի ուշադրությունը հրավիրել այդ պրոբլեմի վրա։ Խոսելով ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակը բարձրացնելու անհրաժեշտության մասին, Լ. Ի. Բրեժնևը նշել է, թե աշխատանքի որակը շատ տարողունակ հասկացություն է, այն գոյանում է արտադրական-տնտեսական շատ գործոններից և դրա հետ մեկտեղ ընդգրկում է բարոյական պրոբլեմների լայն շրջան։ Դա և արտադրության հստակ կազմակերպումն է, աշխատանքային պրոցեսի խիստ ռիթմը, տեխնոլոգիայի անվերապահ պահպանումը։ Դա նյութերի խնայողական ծախսումն է, տեխնիկայի խնայողական, հոգատար օգտագործումը։ Եվ, իհարկե, սրա մեջ մտնում են նաև գիտակցական կարգապահությունը, փոխադարձ պահանջկոտության և ընկերական օգնության իրադրությունը աշխատանքում։ Որակի համար մղվող պայքարի հետ անհամատեղելի են անտնտեսվարությունը, թափթփվածությունը, անբարեխիղճ վերաբերմունքը **դեպի** գործը։

Ուստի, սրանից պետք է ելնենք մեր ամենօրյա կազմակերպչական և գաղափարական-քաղաքական աշխատանքում, որը նպատակամղված է արտադրության արդյունավետության հետագա բարձրացմանը, արտադրանքի որակի բարելավմանը ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում։

# ԶԲԱՂՎԱԾՈՒԹՅԱՆ ԿՐՃԱՏՄԱՆ ՏԵՆԴԵՆՑԸ ՀՍՍՀ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Վ. Ե. ԽՈՋԱԲԵԿՅԱՆ

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ նշեց երկրի գյուղատնտեսության հետագա զարգացման ծրագիրը։ Նախատեսվում է տասներորդ հնգամյակի տարիներին, նախորդ հնգամյակի համեմատությամբ, գյուղատնտեսական արտադրանքի արտադրության միջին տարեկան ծավալն ավելացնել 14—17 տոկոսով։ Այդ նպատակով համագումարի որոշումներում առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի հետագա զարգացման, արտադրության ինտենսիվացման և համակենտրոնացման, տեղաբաշխման, կազմակերպման ու կառավարման, արտադրապրոցեսների ավտոմատացման ու կոմպլեքսային մեքենայացման մակարդակի բարձրացման հարցերին։

«Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումն է՛լ ավելի զարգացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1976 թ. հունիսին ընդունած որոշումը Սովետական Միության գյուղատնտեսության զարգացման մայրուղու հաստատումն է։ Այստեղ առանձնապես շեշտը դրվում է կոլտնտեսությունների ու սովխոզների ջանքերի միավորմամբ գյուղատնտեսության մեջ համակենտրոնացման պրոցեսի հետագա խորացման վրա, «...նպատակ ունենալով ստեղծել ինդուստրիալ տիպի խոշոր, բարձրապրանքային ձեռնարկություններ, բոլոր տնտեսությունների մասնագիտացման խորացմամբ, միջճյուղային կապերի նոր ձևերի առաջացմամբ ու զարգացմամբ, արտադրության կառուցվածքի և բնույթի արմատական փոփոխություններով»։ Այդ որոշման մեջ նշվում է, որ գյուղատնտեսության ինտենսիվացման և արդյունավետության բարձրացման «...խնդրի լուծման գլխավոր ուղիներից մեկը գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումն է, նրա փոխադրումը ժամանակակից ինդուստրիալ հիմքի վրա»։

Գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացման համար նախատեսվող այդ կոմպլեքս միջոցառումների շնորհիվ գյուղատնտեսության բնագավառում աշխատանքի արտադրողականության տարեկան միջին մակարդակն այս հնգամյակում կբարձրանա 27—30 տոկոսով։ Դա նշանակում է, որ, ի տարբերություն նյութական արտադրության այլ ճյուղերի, գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը նախկինի նման կավելանա դրանում զբաղվածության կրճատման պայմաններում։ Իրոք, 1928 թ. ՍՍՀՄ-ում գյուղատնտեսության և անտառային տնտեսության մեջ զբաղված էր ամբողջ բնակչության 80 տոկոսը, 1940 թ.՝ 54, իսկ 1974 թ.՝ 24 տոկոսը։ Այդ ցուցանիշը ՀՍՍՀ-ում 1926 թ. մարդահամարի տվյալներով կազմում էր 89 տոկոս, 1939 թ.՝ ավելի քան 60, 1960 թ.՝ 44, ներկայումս այն իջել և դարձել է 23 տոկոս։ Ըստ որում, ՀՍՍՀ գյուղատնտեսության մեջ զբաղվածների (ներառյալ նաև անձնական օժանդակ տնտեսություններում ընդգրկվածները) բացարձակ թիվը, 1960 թ. համեմատ, 1974 թ. պակասել էր ավելի քան 21 տոկոսով։ Սակայն պետք է



նշել, որ հանրային գյուղատնտեսության մեջ նոր հողեր յուրացնելու և առավել աշխատատար կուլտուրաներ մշակելու շնորհիվ դրանում զբաղվածների թիվը 1961—1965 թթ. փոքր-ինչ ավելացել է, իսկ 1966—1974 թթ. պակասել է ընդամենը 4 տոկոսով։ Այնուհանդերձ, միտումն այնպիսին է, որ աշխատանքային ռեսուրսների վերաբաշխման ընթացքում զբաղվածների ընդհանուր թվի մեջ ո՛չ միայն իջնում է գյուղատնտեսության մեջ զբաղվածների տեսակարար կշիռը, այլև պակասում է նրանց բացարձակ թիվը՝ գյուղատնտեսական արտադրության ընդլայնման և համախառն արտադրանքի ավելացման պայմաններում։ Ըստ որում, ինչպես նշված է ՍՄԿԿ Կենտկոմի վերոհիշյալ որոշման մեջ, անցած տարիներին մեկ բնակչին ընկնող գյուղատնտեսական արտադրանքի արտադրությունն աճեց գրեթե մեկ քառորդով, չնայած այն բանին, որ երկրի բնակչությունն այդ ժամանակամիջոցում ավելացավ 23 միլիոնով։

Գյուղատնտեսական արտադրության ընդլայնման և համախառն արտադրանքի ավելացման պայմաններում զբաղվածության կրճատման ընդհանուր միտումը իր ուժը կպահպանի նաև հեռանկարում։ Նախկինի նման իր կարևորությունը կպահպանի ո՛չ միայն գյուղատնտեսությունից ազատվող աշխատանքային ռեսուրսները ժողովրդական տնտեսության այլ ճյուղերի միջև վերաբաշխելու, այլև նրա ոչ եկամտաբեր ճյուղերից ավելի եկամտաբեր և աշխատատար ճյուղերի միջև վերաբաշխելու պրոբլեմը։

Միաժամանակ պետք է նշել, որ հանրապետության գյուղատնտեսության աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը բնութագրվում է ավելի ցածր ցուցանիշներով, քան Միության միջինն է։ ՀԿԿ XXVI համագումարին տրված հաշվետու զեկուցման մեջ նշված էր, որ ՀՍՍՀ-ում ցածր է աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը, ձեռքով են կատարվում շաքարի ճակնդեղի, ծխախոտի, խորդենու մշակության և բերքահավաքի աշխատանքները, այգեթաղի և այգեբացի աշխատանքները մեքենայացված են միայն 4,7 տոկոսով։ Կոմպլեքսայնորեն մեքենայացված է անասնապահական ֆերմաների միայն 6 տոկոսը։

Հետևապես, ՀՍՍՀ գյուղատնտեսության հետագա մեքենայացման մակարդակը բարձրացնելու շնորհիվ, այդ բնագավառի՝ ազատվող աշխատուժի հարաբերական ցուցանիշն ավելի բարձր կլինի, քան Միության միջինը։ Թեև չպետք է անտեսել, որ ՍՍՀՄ գյուղատնտեսության մեջ, իր հերթին, աշխատանքային ծախսումները դանդաղ են նվազում, և ձեռքի աշխատանքներում ընդգրկվածների հարաբերական ցուցանիշն ավելի բարձր է, քան արդյունաբերության մեջ։ ՍՄԿԿ Կենտկոմի վերը հիշատակված որոշման մեջ, ահա թե ինչու, նշվում է, որ թեև «...կոլտնտեսություններն ու սովխոզները ավելի ու ավելի մեծ չափով են զինվում տրակտորներով, կոմբայններով և այլ մեքենաներով, իսկ աշխատանքային ծախսումները դանդաղ են նվազում...», ՍՍՀՄ գյուղատնտեսության մեջ ձեռքի աշխատանքներում ընդգրկվածների համապատասխան ցուցանիշն ավելի բարձր է, քան տնտեսապես զարգացած կապիտալիստական որոշ երկրներում։ Այդ պատճառով էլ այդ երկրներում զբաղվածների ընդհանուր թվում գյուղատնտեսության և անտառային տնտեսության մեջ ընդգրկվածների հարաբերական թիվն ավելի փոքր է։

ՀՍՍՀ-ում գյուղատնտեսության մեջ զբաղվածության կրճատման ավելի ինտենսիվ բնույթը բացատրվում է նաև այլ պատճառներով։ Բանն այն է, որ հանրապետությունում օգտակար հողատարածությունների ավելացման խիստ սահմանափակ հնարավորությունները կաշկանդում են այստեղ նոր լրացուցիչ աշխատանքային ռեսուրսների ընդգրկումը։ Այդ իսկ պատճառով ձեռքով կատարվող աշխատանքների հետագա մեքենայացման շնորհիվ ազատվող աշխատուժը չի կարող ընդգրկվել ոչ այդ և ոչ էլ գյուղատնտեսության որևէ այլ բնագավառում։ Մինչդեռ շատ հանրապետություններում գյուղատնտեսության մեքենայացման շնորհիվ նրա որևէ բնագավառից աշխատուժի ազատումը կուղեկցվի գյուղատնտեսության ընդլայնվող արտադրաճյուղերում լրացուցիչ աշխատողների ընդգրկմամբ։ Հասկանալի է, որ գյուղատնտեսության մեկ բնագավառից մեկ այլ բնագավառ աշխատուժի տեղափոխությունը, ինչպես նաև

նույն ոլորտի ընդլայնվող արտադրություններում նրանց ընդգրկումը այդ հանրապետություններում կուղեկցվի աշխատանքային տարիք մուտք գործող բնակչության մի մասի գյուղատնտեսության մեջ ներգրավման պրոցեսի հետ։ Մինչդեռ ՀՍՍՀ գյուղատնտեսությունը կարող է ընդգրկել աշխատանքային տարիք մուտք գործած բնակչության մի փոքր մասը միայն։

Հայաստանում գյուղատնտեսության մեջ զբաղվածության և աշխատուժի օգտագործման արդյունավետության կարևոր պայմանը նրա ճյուղային կառուցվածքի հետագա կատարելագործումն է։ Դա կապված է նրա հետագա մասնագիտացման անհրաժեշտության հետ։ Խոսքը վերաբերում է Հայաստանի գյուղատնտեսության մեջ առավել բարձր եկամտաբերություն ապահովող և ՍՍՀՄ գյուղատնտեսական արտադրության մեջ նրա մասնագիտական ուղղությունը բնորոշող այնպիսի կուլտուրաների մշակության ընդլայնմանը և հետագա զարգացմանը, ինչպիսիք են՝ խաղողի արդյունաբերական նշանակություն ունեցող բազմաթիվ տեսակները, մի շարք բանջարա-բոստանային կուլտուրաներ, խորդենին, ծխախոտը և այլն։ Հասկանալի է, որ դրանք բավարարում են ո՛չ միայն տեղական պահանջները, այլև ստանում են համամիութենական նշանակություն։

Բայց գյուղատնտեսության այդ ճյուղերի կոմպլեքսային մեքենայացման հնարավորությունները ևս սահմանափակ են, մի հանգամանք, որը, հավանաբար, հեռանկարում նույնպես կազդի հանրապետության գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականության աճի ընթացքի վրա։ Ի հաշիվ սակավ եկամտաբեր ճյուղերի, հիշյալ ճյուղերի ընդլայնումն զգալիորեն կմեղմացնի հողասակավությունը։ Միևնույն հողակտորի առավել ինտենսիվ օգտագործումը միաժամանակ կմեծացնի միավոր հողակտորի վրա կատարվող նյութական և աշխատանքային ծախսումների բացարձակ չափը, որը, սակայն, կլինի առավել նպատակային և անհամեմատ արդյունավետ։ Այդպիսով, ՍՍՀՄ գյուղատնտեսական արտադրության մեջ Հայաստանի մասնագիտացումը կհանգեցնի հասարակական աշխատանքի տնտեսմանը։

Վերջին 15—20 տարիների ընթացքում համեմատաբար բարձր բերքատու հողերում հացահատիկի արտադրության մասշտաբները կրճատելու և բամբակի մշակությունը իսպառ վերացնելու միջոցով ավելացան խաղողի այգիները և բանջարեղենի ցանքատարածությունները, իսկ նախալեռնային շրջաններում, մասնավորապես Սևանի ավազանում, հացահատիկի և կարտոֆիլի ցանքատարածությունների հաշվին, ընդարձակվեցին մրգատու այգիները։

Գյուղատնտեսության մեջ աշխատուժի օգտագործման արդյունավետության բարձրացման կարևոր գործոն է աշխատանքի գիտական կազմակերպումը։ Փաստերը վկայում են, որ մեր հանրապետությունում գյուղատնտեսական արտադրության կազմակերպման գործում եղած թերությունների հետևանքով եկամտաբեր շատ կուլտուրաներ նվազ բերք են տալիս։ Ո՛չ միայն հողատարածությունների որոշ մասը չի օգտագործվում ըստ նպատակի, այլև ցածր են արտադրական պրոցեսների մեքենայացման և աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը, լավ չեն կազմակերպվում բերքահավաքը, ստացված բերքի մթերումն ու առաքումը, որի հետևանքով մրգերի, հատապտուղների մի մասը փչանում է դեռ մթերակայան չհասած։

Հողասակավությունն է՛լ ավելի է սրում Հայաստանի գյուղատնտեսության ճյուղային կառուցվածքը կատարելագործելու և մասնագիտացումը խորացնելու անհրաժեշտությունը։ Բայց հենց այդ յուրահատկությունները բավարար չեն օգտագործվել։ Մինչև նախավերջին տասնամյակը խաղող մշակվում էր միայն Արարատյան հարթավայրում, մասամբ Եղեգնաձորի և Ազիզբեկովի շրջաններում։ Վերջին 10—15 տարիներին Թալինում, Աբովյանում և Աշտարակի համեմատաբար բարձրադիր վայրերում նրա մշակության փորձերը հիանալի արդյունքներ տվեցին։ Սակայն, ինչպես Արարատյան հարթավայրում, Եղեգնաձորի և Ազիզբեկովի շրջաններում, այնպես էլ Երևան—Աբովյան—Աշտարակ—Թալին—Հոկտեմբերյան օղակում խաղողագործությունն ունի ընդարձակվելու ավելի մեծ հնարավորություններ։ Ճիշտ է, ոռոգման հետ կապված դժվարու-



թյուններ կան, որոնք պահանջում են լրացուցիչ միջոցներ ու ջանքեր։ Աշխատուժի օգտագործման արդյունավետության բարձրացման խոշոր ռեզերվ է խաղողագործության բերքատվության բարձրացումը։ Այդ են վկայում տարբեր շրջաններում մշակվող խաղողի յուրաքանչյուր հեկտարից ստացվող բերքի խիստ տարբերությունները։

Հայաստանի նախալեռնային շրջաններում աշխատուժը, մասնավորապես կանանց աշխատուժը, կենտրոնացված է ծխախոտի մշակության վրա, որը մեզ մոտ առաջատար տեխնիկական կուլտուրաներից է։ Բայց, չնայած ծխախոտի բարձր եկամտաբերությանը, դրա մշակումը հիմնականում կատարվում է ձեռքով և կապված է նախապատրաստական ու եզրափակիչ մի շարք աշխատատար պրոցեսների հետ, որոնք աշխատուժն զբաղեցնում են գրեթե ողջ տարին, բացի ձմռան 2—3 ամիսներից։

Հայաստանում տեխնիկական կուլտուրաներից առավել հեռանկար ունեցողը խորդենու մշակությունն է, որի ցանքատարածությունների ընդարձակումը պետք է ուղեկցվի բերքատվությունը բարձրացնող միջոցների կիրառման հետ։

Աշխատուժի և հողատարածությունների օգտագործման արդյունավետության բարձրացումը սերտորեն առնչվում է նաև մերձքաղաքային շրջաններում գյուղատնտեսության զարգացման հետ։ Դա վերաբերում է ինչպես բուսաբուծությանը, այնպես էլ մսուրային կաթնա-անասնապահական տնտեսությանը։ Տվյալ դեպքում խոսքը ո՛չ միայն սեզոնի ընթացքում գյուղատնտեսական մթերքների արտադրության կազմակերպման մասին է, այլև ձմռան և վաղ գարնան ամիսներին դաշտային աշխատանքներից ազատված աշխատուժի օգտագործման։ Մեր հանրապետությունում ձմռանը և գարնանը խիստ սակավ է տեղական թարմ բանջարեղենը։ Մինչդեռ կոլտնտեսություններում ու սովխոզներում կարելի է ինդուստրիալ հիմունքներով ձմռանը և վաղ գարնանը ծավալել դրանց արտադրությունը, որն զգալի թվով աշխատողներ կներգրավի իր ոլորտը։

Աշխատուժի օգտագործման արդյունավետությունը բարձրացնելու շատ հնարավորություններ կան նաև պտղատու այգեգործության մեջ։ Վերջին 10—15 տարիների փորձը ցույց է տալիս, որ խնձորի և տանձի բազմաթիվ արժեքավոր տեսակներ, ավանդական շրջաններից բացի, աճեցվում են նաև Սևանի ավազանում, Արագածի հովտում, Շիրակի դաշտավայրում, Փամբակի նախալեռնային շրջաններում, բայց հիմնականում կոլտնտեսականների և բանվոր-ծառայողների անձնական օժանդակ տնտեսություններում։ 1965—1974 թթ. այդ տընկիներին հատկացված ընդհանուր հողատարածություններն ավելացել են 16 հազար հեկտարով, որից մոտ 10 հազարը բաժին է ընկնում կոլտնտեսականների, բանվորների և ծառայողների անձնական օժանդակ տնտեսություններին (տե՛ս «Народное хозяйство Армянской ССР за 1973 год» стр. 96)։

Անձնական օժանդակ տնտեսություններում մրգի այգիների արտադրության մասշտաբների ընդարձակումը, իհարկե, խրախուսելի երևույթ է. մանավանդ որ այգիներում հիմնականում աշխատում են թոշակառուները։ Բայց պետք է առավել ուշադրություն նվիրել հանրային այգեգործության զարգացմանը, որը աշխատատար պրոցեսների մեքենայացման հետ հնարավորություն կընձեռի ավելի շատ աշխատողներ ներգրավելու արտադրության ոլորտը։

Հայաստանի գյուղատնտեսության մեջ աշխատուժի օգտագործման արդյունավետությունը բարձրացնելու մեծ հնարավորություններ են կապված նաև անասնաբուծության հետ։ Մինչդեռ, այդ հնարավորությունները դեռևս լրիվ չեն օգտագործվում։ Անասնաբուծության մեջ աշխատատար պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը կհանգեցնեն դրանում զբաղվածության խիստ կրճատման։

Գյուղատնտեսության ֆոնդազինվածության բարձրացման և, ընդհանրապես, աշխատատար ճյուղերում տեխնիկական առաջընթացի շնորհիվ զբաղվածությունը խստորեն կնվազի դաշտավարության այն ճյուղերում, որոնցում դեռևս ձեռքի աշխատանքը բավականին մեծ է։ Հեռանկարում գյուղատնտեսության մեջ անհրաժեշտ է ապահովել տեխնիկա-տնտեսական զինվածության ավելի մեծ աճ, քան արդյունաբերության մեջ և արտադրության կենտրոնա-

ցումն ու խոշորացումն ավելի ու ավելի զուգակցել մասնագիտացման հետ, ավելի ակտիվորեն նպաստել գյուղատնտեսական աշխատանքները արդյունաբերական տարատեսակի վերածելու ընթացքին:

Գյուղական բնակչության աշխատուժի օգտագործման արդյունավետությունը բարձրացնելու կարևորագույն նախապայմաններից մեկը գյուղական բնակավայրերի խոշորացումն է: Գյուղական բնակավայրերի օպտիմալ չափերի ընտրության միջոցով ավելի լայն հնարավորություններ և բարենպաստ նախադրյալներ կստեղծվեն գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման, համակենտրոնացման, միջտնտեսական կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման համար: Դրանով իսկ լայն պայմաններ կստեղծվեն բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման մակարդակի ավելի բարձրացման համար, կընդլայնվի աշխատուժի կիրառման ոլորտը: Այդ իմաստով չափազանց էական նշանակություն է ստանում նաև ագրարային արդյունաբերական համալիրների ստեղծումը:

«Միջտնտեսական կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը է՛լ ավելի զարգացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ այդ կապակցությամբ նշվում է. «Գիտատեխնիկական պրոգրեսը, գյուղատնտեսության մեջ խոշոր մասնագիտացված ձեռնարկությունների և միավորումների կազմակերպումը բարենպաստ նախադրյալներ են ապահովում ագրոարդյունաբերական ինտեգրացման հետագա զարգացման, արդյունաբերության հետ գյուղատնտեսական արտադրության օրգանական միաձուլման և այդպիսով երկրում ագրոարդյունաբերական ձեռնարկությունների ու միավորումների լայն ցանց ստեղծելու համար, որոնք մեծ ապագա ունեն: Այդ պրոցեսը պետք է ուղեկցվի տնտեսությունների միջև աշխատանքի բաժանման հետագա խորացմամբ, մասնագիտացման ու կոոպերացման է՛լ ավելի բարձր մակարդակով, գյուղատնտեսության և արդյունաբերության միջև ուղղակի կապերի հաստատումով»:

Այդ որոշման մեջ ուշադրություն է հրավիրվում այն հարցին, որ «Միջտնտեսական կոոպերացիան ընդլայնում է կոլտնտեսային և սովխոզային արտադրության մասշտաբներն ու հնարավորությունները, բարձրացնում նրա համակենտրոնացման մակարդակը, առանց չափից դուրս խոշորացնելու և չկառավարվող տնտեսություններ կազմելու»:

Հավանաբար, ճիշտ կլինի այդպիսի համալիրներ ստեղծելիս նկատի առնել գյուղական աշխատանքային ռեսուրսների օգտագործման սեզոնայնության համատեղումը: Խոսքը տվյալ դեպքում վերաբերում է ագրարային արդյունաբերական այնպիսի համալիրների ստեղծմանը, որոնք գործեն գյուղատնտեսական սեզոնային արտադրանքի բազայի վրա և ընդգրկեն դաշտային աշխատանքներից ազատված աշխատուժը: Դա խիստ կբարձրացնի աշխատանքային ռեսուրսների օգտագործման ո՛չ միայն էքստենսիվ (տարածուն), այլև ինտենսիվ մակարդակը: Բավական է ասել, որ 1970 թ. մարդահամարի տվյալներով, 1969 թ. ՀՍՍՀ-ում զբաղվածների ավելի քան 13 տոկոսը տարվա ընթացքում ոչ լրիվ զբաղված բնակչությունն էր, որի շուրջ 88 տոկոսը բնակվում էր գյուղում (հիմնականում կոլտնտեսականներ և գյուղատնտեսական բանվորներ) և կազմում գյուղական վայրերում զբաղված բնակչության 31 տոկոսը: Նրանց ավելի քան 60 տոկոսը կանայք էին: Ընդ որում, տարվա ընթացքում ոչ լրիվ զբաղված բնակչության շուրջ 12 տոկոսը զբաղված է եղել մինչև երկու ամիս, 28 տոկոսը՝ երեքից հինգ ամիս: Գյուղատնտեսական աշխատանքը արդյունաբերականի հետ զուգակցելը գյուղական բնակչության կողմից արդյունաբերական պրոֆեսիաներ ձեռք բերելը դարձնում է անհրաժեշտություն: Վերջինս ինքնին թելադրում է գյուղական վայրերում պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության ցանցի ընդլայնում: Այդ բոլորը, վերջին հաշվով, կնվազեցնեն նաև գյուղից դեպի քաղաք գյուղական բնակչության հոսքը, ինչպես և տեխնիկական առաջընթացի շնորհիվ գյուղատնտեսությունից աշխատողների արտամղումը:



Ուստի, հեռանկարում գյուղատնտեսության ցածր արտադրողական ճյուղերում զբաղվածության կրճատումը և այստեղից աշխատուժի արտահոսքը ինչպես գյուղատնտեսության բարձր արդյունավետություն ապահովող, այնպես էլ ժողովրդական տնտեսության այլ ճյուղեր, կբնութագրվեն աշխատուժի օգտագործման արդյունավետության հետագա բարձրացմամբ: Խոսքն այստեղ վերաբերում է ինչպես անձնական օժանդակ տնտեսությունում օրվա և տարվա ընթացքում լրիվ չօգտագործվող և նվազ արդյունավետությամբ բնութագրվող աշխատանքին, այնպես էլ հանրային գյուղատնտեսության ցածր արդյունավետություն ունեցող ճյուղերից ազատվող աշխատանքային ռեսուրսներին: Դրանց ընդգրկումը հանրային արտադրության ոչ գյուղատնտեսական ճյուղերը կբարձրացնի աշխատուժի օգտագործման արդյունավետությունը ո՛չ միայն այն տեսակետից, որ կընդարձակվեն աշխատանքի ավելի բարձր արդյունավետությամբ բնութագրվող ճյուղերը: Դրանում մեծ դեր կխաղա նաև աշխատուժի էքստենսիվ օգտագործման գործակցի բարձրացումը, այն, որ ոչ-գյուղատնտեսական ճյուղերում տարվա մեջ աշխատանքային մարդ-օրերը (մեկ աշխատողի հաշվով) շատ են: Այսպիսով, հասարակական աշխատանքի տերիտորիալ բաժանման վրա հիմնված գյուղատնտեսական արտադրության տնտեսապես նպատակահարմար մասնագիտացումը, տեղական բնական ռեսուրսների լրիվ և ռացիոնալ օգտագործումը, Հայաստանի գյուղատնտեսության մասնագիտացման հիմնական ուղղությունը ներկայացնող ճյուղերի հետագա զարգացման հնարավորությունների ստեղծումն ու լրիվ օգտագործումը, քաղաքների և արդյունաբերական կենտրոնների մերձքաղաքային տնտեսության զարգացումը կապահովեն գյուղատնտեսության մեջ աշխատուժի ինչպես էքստենսիվ (տարվա բոլոր սեզոններում), այնպես էլ ինտենսիվ օգտագործման բարձրացումը:

Արտադրության պրոցեսների մեքենայացման, արդի գիտատեխնիկական պահանջներին համապատասխան գյուղատնտեսական արտադրության կազմակերպման հետ դա, միաժամանակ, կպայմանավորի աշխատուժի վերաբաշխումը գյուղատնտեսական առանձին ճյուղերի և շրջանների միջև: Թեև կզարգանան առավել աշխատատար և եկամտաբերություն ապահովող ճյուղերը, բայց, այնուհանդերձ, զգալի չափով կկրճատվի կենդանի աշխատանքը գյուղատնտեսության մեջ:

Հեռանկարում գյուղատնտեսության մեջ զբաղվածության մակարդակը բնութագրելիս պետք է ելնել նաև այն սկզբունքից, որ գյուղատնտեսությունը չի կարող մշտապես մնալ ժողովրդական տնտեսության ընդլայնվող բնագավառներին աշխատանքային ռեսուրսներ տրամադրող ճյուղ: Դրա մասնագիտացումը խորացնելու և արտադրությունը համակենտրոնացնելու, բոլոր ճյուղերի մեքենայացման աստիճանի բարձրացման և որոշ արտադրությունների կոմպլեքսային մեքենայացման համեմատ կկայունանա այդ ճյուղում զբաղվածների օպտիմալ մեծությունը, աստիճանաբար կնսեմանա ոչ գյուղատնտեսական ոլորտին աշխատուժ մատակարարելու նրա դերը:

Այս պրոցեսը, իր հերթին, որոշակի ազդեցություն կունենա բնակչության՝ գյուղից քաղաք կատարվող արտահոսքի վրա՝ մեղմացնելով նրա ներկայիս բարձր ինտենսիվությունը: Մինչդեռ, ինչպես հայտնի է, գյուղական վայրերից կատարվող արտահոսքը հասարակության զարգացման պատմական օրինաչափություն է, որ դրսևորվում է գյուղատնտեսության ինդուստրիալ զարգացման ազդեցության ներքո: «Խոշոր մեքենայական ինդուստրիան,— նշում է Վ. Ի. Լենինը,— ընդհակառակն, անհրաժեշտորեն առաջ է բերում բնակչության շարժունություն» (Վ. Ի. Լենին, Երկերի լիակատար ժողովածու, հ. 3, «Հայաստան», Ե., 1975, էջ 696):

Սակայն հենց ներկայումս էլ գյուղի ու քաղաքի միջև միգրացիան միակողմանի չէ: Գոյություն ունի նաև հակադարձ շարժում՝ կապված գյուղական վայրերում զբաղմունքի նոր բնագավառների, բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման նոր օջախների ստեղծման, գյուղի ու քաղաքի միջև գոյություն ունեցող էական տարբերությունները հաղթահարելու հետ: Փոխվում են գյուղական բնակչության սոցիալական կազմն ու աշխատանքի բնույթը. եթե

նախկինում գյուղական բնակչությունը հիմնականում ներկայացնում էր գյուղատնտեսության մեջ զբաղվածներին, ապա, տեղի ունեցող սոցիալ-տնտեսական վերափոխումների շնորհիվ, ներկայումս գյուղական բնակչության մի զգալի մասը բանվոր-ծառայողներ են։ 1959 թ. մարդահամարի տվյալներով գյուղական բնակչության 30,5 տոկոսը բանվոր-ծառայողներ էին, մինչդեռ 1970 թ. նրանք կազմում էին ավելի քան 60 տոկոսը։ Բանվոր-ծառայողների այդ ավելացումը, ոչ արտադրական ոլորտի ճյուղերի և գյուղական վայրերում արդյունաբերական բնույթի զբաղմունքների ավելացման հետ, տեղի է ունեցել նաև կոլտնտեսությունները սովխոզների վերափոխելու հետևանքով։

Զարգացած սոցիալիզմի պայմաններում հարկավոր է գյուղատնտեսական արտադրության մեջ զբաղված բնակչության կրճատման հաշվին ու գյուղատնտեսական բնագավառներում զբաղված բնակչության ավելացման հարցը զանազանել գյուղական բնակչության հաշվին քաղաքային բնակչության ավելացման հարցից։ Սոցիալիզմի պայմաններում գյուղատնտեսության մեջ զբաղված բնակչության կրճատումը և արդյունաբերական ու այլ բնույթի արտադրությունում զբաղված բնակչության աճը գերազանցապես ուղեկցվում են գյուղական վայրերից դեպի քաղաքային կամ արդյունաբերական վայրեր բնակչության արտահոսքի հետ։ Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման որոշակի աստիճանում, գյուղի ու քաղաքի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքների միջև սոցիալիզմի օրոք դրսևորվող էական տարբերությունների վերացման համեմատ աստիճանաբար կփոխվեն բնակչության տեղաշարժերի սոցիալ-տնտեսական գործոնները։ Գյուղատնտեսական արտադրության, ինչպես նաև տեխնիկական առաջընթացի շնորհիվ արտադրության այլ բնագավառներից ազատվող աշխատուժի շարժումն այլևս անպայման չի ուղեկցվի գյուղից քաղաք կատարվող շարժման հետ։ Ավելի ճիշտ, բնակչության տեղից տեղ շարժումը այլևս չի պայմանավորվի գյուղատնտեսական աշխատանքներից աշխատուժի արտամղման պրոցեսի հետ։ Ինչ խոսք, գյուղատնտեսությունից և արտադրության հին՝ ավանդական ճյուղերից տեխնիկական առաջընթացի հետևանքով արտամղված, ինչպես նաև աշխատանքային տարիք մուտք գործող բնակչությունը վերաբաշխման ընթացքում կարող է բաշխվել միմյանցից տարածապես ավելի հեռավոր շրջանների միջև, անկախ նրանից՝ այդ վայրերը հիմնականում արդյունաբերակա՞ն են, թե գյուղատնտեսական։ Հավանաբար, միտումը նույնիսկ այնպիսին կլինի, որ կուժեղանա բնակչության շարժումը ինդուստրիալ հզոր քաղաքներից փոքր ու միջին քաղաքներ, ինչպես նաև գյուղատնտեսական շրջաններ՝ անկախ նրանց գտնվելու վայրից։ Սոցիալ-տրնտեսական այդ փոփոխությունների ընթացքը պայմանավորված կլինի հանրային արտադրության համակողմանի զարգացման մակարդակով։

# ԲՆՈՒԹՅԱՆ ՊԱՀՊԱՆՈՒԹՅՈՒՆԸ՝ ՀՐԱՏԱՊ ՊՐՈԲԼԵՄ

**Ս. Մ. ՍԱՐԳՍՅԱՆ**
Հայկական ՍՍՀ բնության պահպանության ընկերության խորհրդի նախագահության նախագահի տեղակալ, պրոֆեսոր

ԱՅԺՄ ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ պայմաններում հասարակության ու բնության բազմակերպ փոխհարաբերություններում դրսևորվել են նոր հակասություններ, որոնց դրական լուծումը դարձել է բարդ պրոբլեմ և խորապես հուզում է համայն մարդկությանը։

Գիտության ու տեխնիկայի նվաճումների լայն կիրառման շնորհիվ մեծ հաջողություններ են ձեռք բերվել մարդուն սովից, աղքատությունից, զանազան հիվանդություններից փրկելու, ինչպես և ժողովուրդների կուլտուրական մակարդակի բարձրացման, հոգևոր հարստությունների ստեղծման ասպարեզում։ Այդ նպատակներին հասնելու համար մարդկությունը մեծ չափերով ընդլայնել է բնական հարստությունների օգտագործման ծավալը, ստեղծել զարգացած արդյունաբերություն, բազմաթիվ նոր բնակավայրեր, տրանսպորտային կատարելագործված միջոցներ, որոնց օգտագործմամբ խիստ բարձրացել է մարդու շարժունակությունը և այլն։

Այդ ամենին հետևել է բնության երևույթների ընթացքին մարդու անմիջական և առավել լայն միջամտությունը, հույժ սաստկացել է նրա ներգործությունը բնության տարրերի հավասարակշռության վրա։ Մինչդեռ բնության բաղկացուցիչ տարրերի՝ օրգանական ու անօրգանական աշխարհների հավասարակշռությունն է, որ ապահովում է մարդու կյանքին անհրաժեշտ բնական միջավայրը, իսկ վերջինիս լիարժեքությունը՝ մարդու գոյությունն առհասարակ։

Բավական է նշել թեկուզ այն փաստը, որ այժմ աշխարհում ստացվում է տարեկան մոտ 2 մլրդ տոննա քարածուխ և 1 մլրդ տոննա նավթ, որոնց տնտեսական օգտագործումից գոյանում և մթնոլորտ է արտանետվում մոտ 8—9 մլրդ տոննա ածխաթթու գազ։

Մոտավոր հաշվումներով, վերջին հարյուրամյակում վառելանյութի օգտագործումից գոյացել և մթնոլորտ է արտանետվել ավելի քան 400 մլրդ տոննա ածխաթթու գազ, որի հետևանքով մոտ 18 տոկոսով բարձրացել է դրա քանակությունը՝ մթնոլորտի սկզբնական բաղադրության համեմատությամբ։

Արդեն հաշված է, որ եթե մոտակա 50—60 տարիների ընթացքում վառելանյութի ծախսը շարունակի մնալ նույնիսկ ներկայիս մակարդակին, ապա ածխաթթու գազի հարաբերական քանակությունն օդում կարող է կրկնապատկվել. մթնոլորտում կգոյանա յուրահատուկ ջերմադարձիկ (էկրան) և երկրագնդի արտաքին կեղևի շրջապատում ջերմությունը կբարձրանա մոտ 4 աստիճանով։

Ջերմադինամիկ հավասարակշռության նման փոփոխությունը, ինչպես ենթադրվում է, կարող է հանգեցնել բևեռային սառույցների հալման և ջրի մակարդակի բարձրացման համաշխարհային օվկիանոսում... Այդ դեպքում ջրա-

սույզ կլինեն մարդու կողմից ներկայումս օգտագործվող բերրի հողերի մեծ տարածություններ, կբնաջնջվեն բազմաթիվ մայրաքաղաքներ ու քաղաքակրթության շատ օջախներ:

Այժմ իսկ երկրի վրա դժվար է գտնել մի հողակտոր, որ չկրի մարդու տնտեսական գործունեության հետքերը — արդյունաբերության թափոններ, ռադիոակտիվ իզոտոպներ, վնասատուների դեմ օգտագործվող թունաքիմիկատներ և այլն: Կյանքի գոյությանը վտանգող այդ նյութերը, մասնավորապես թունաքիմիկատները, հետզհետե կուտակվում, գումարվում են հողում. բնություն ներմուծվող այդ նյութերն այնուհետև ներթափանցում են սննդամթերքների մեջ և, ի վերջո՝ մարդու և կենդանիների օրգանիզմը: Վնասատու կենդանիների (միջատների) դեմ օգտագործվող թունավոր նյութերը բարդ ճանապարհներով տեղափոխվում և կուտակվում են նաև ջրատարածություններում՝ լճերում, ծովերում և հիմնականում՝ համաշխարհային օվկիանոսում: Այդ են ապացուցում թե՛ ջրի բաղադրության քիմիական ուսումնասիրությունները և թե՛ ջրային բույսերի ու կենդանիների վիճակն ու նշված նյութերի հայտաբերումը նրանց օրգանիզմում: Օրինակ, նույնիսկ Անտարկտիդայի պինգվինների ու հյուսիսային բևեռի սպիտակ արջերի օրգանիզմներում հայտնաբերված է այնպիսի խիստ վտանգավոր թունաքիմիկատ, ինչպիսին է ԴԴՏ-ն:

Մինչդեռ հայտնի է, որ համաշխարհային օվկիանոսը կատարում է կենսոլորտի (բիոսֆերայի) «թոքերի» դերը, այն կլանում է մթնոլորտում կուտակվող ածխաթթու գազի զգալի քանակություն և արտադրում օդի բաղադրության մեջ մտնող թթվածնի հիմնական մասը: Օվկիանոսի աղտոտումը թույներով ու արդյունաբերական թափոններով կարող է խիստ փոփոխել դրա էկոլոգիան, նվազեցնել դրա շնչառական դերը կենսոլորտում, որի հետևանքով բնական միջավայրը (մթնոլորտը) կարող է կորցնել իր կենսաբանական արժեքը մարդու կյանքի և առհասարակ նրա գոյության համար:

Գիտակցելով բնության վրա մարդու բացասական ներգործության առկայությունը և դրա ներկա ու սպասվող հետևանքները, աշխարհի շատ պետություններ ձեռնարկում են անհրաժեշտ միջոցներ բնության պահպանման համար:

Սովետական պետության քաղաքականությունը բնության պահպանման խնդրում, նրա ձեռնարկումները բխում են մարդու էության և բնության համակարգում նրա դերի ու փոխհարաբերությունների մարքսիստական ըմբռնումից: Ի հակադրություն իդեալիստական-սպիրիտուալիստական ու վոլյունտարիստական մեկնաբանությունների, մարքսիստական ըմբռնմամբ մարդը բիոսոցիալ էակ է, նյութի շարժման ամենաբարձր՝ կենդանի ձևի դրսևորումը, բնության զարգացման բարձրագույն արգասիքը: Բնության հետ նրա ունեցած հարաբերությունների լուսաբանման առումով չափազանց կարևոր է ընդգծել մարդու գործունյա լինելու, աշխատունակության հանգամանքը և, առհասարակ, նրա աշխատանքի դերը, աշխատանք, որը մարդուն մարդ է դարձրել և որը մարդկային կյանքի հավերժ պայմանն է: Նկատի ունենալով մարդուն բնորոշ աշխատելու և արարելու ունակությունները, Մարքսը գտնում է, որ նա ո՛չ միայն միջավայրի (բնության) արգասիքն է, այլև դրա ստեղծողը: Գիտակցված ու նպատակասլաց ներգործությամբ (աշխատանքով) նա փոփոխում, «մարդկայնացնում», «հումանիզացնում» է միջավայրը, ստեղծելով «երկրորդ բնություն», այսինքն՝ այն ամենը, ինչ գիտակցված եղանակով ստեղծում է նա իր գոյամիջավայրում (արդյունաբերություն, տեխնիկա, արհեստական տընկարկներ և այլն):

Բազմիցս անդրադառնալով մարդու և բնության միասնությանը՝ մարքսիստական փիլիսոփայության հիմնադիրները շեշտում են նրանց անքակտելիությունը, սերտ կապը: Լինելով բնության մասնիկը՝ նրա բաղկացուցիչ մասը, նշում է Մարքսը, մարդը ողջ բնությունը դարձնում է իր «անօրգանական մարմինը»: Այսպիսի խորիմաստ բնորոշմամբ Մարքսը նշում է ո՛չ միայն արտաքին բնության օտար չլինելու փաստը, այլև այն, որ բնությունը նույնպես մտնում է մարդու ամբողջականության հասկացության մեջ՝ իբրև նրա բաղկա-



ցուցիչ մաս, իբրև նրա «անօրգանական մարմինը»: Բնության դերի նման ըմբռնումը մարդուն համակում է այն համոզմամբ, որ այնպես, ինչպես նա հոգում է իր սեփական մարմնի համար, նույն չափով պետք է հոգա նաև իր «անօրգանական մարմնի»՝ բնության համար:

Սակայն հոգածությունն արտաքին բնության նկատմամբ չի նշանակում դրա անձեռնմխելիություն: Մարդու և բնության միասնությունն արտահայտվում է հենց նրանում, որ արտաքին բնությունը նրա և մնացած բոլոր արարածների գոյության պայմանն է: Ելնելով բնության վրա ներգործելու անխուսափելիությունից՝ միաժամանակ նկատի է առնվում մարդու իմացական ունակությունների, բնության օրենքների ճանաչման ու ճանաչված օրինաչափությունների հիման վրա բնությունն իր նպատակներին ծառայեցնելու սկզբունքը: Ֆ. Էնգելսը գրում է. «...յուրաքանչյուր քայլափոխում փաստերը մեզ հիշեցնում են, որ մենք ամենևին էլ բնության վրա չենք իշխում այնպես, ...ինչպես բնությունից դուրս գտնվող որևէ մեկը,— այլ որ մենք, ընդհակառակը, մեր մարմնով, արյունով և ուղեղով պատկանում ենք նրան ու գտնվում ենք նրա ներսում, որ մեր ամբողջ տիրապետությունը նրա նկատմամբ այն է, որ մենք, ի տարբերություն մյուս բոլոր էակների, կարողանում ենք ճանաչել նրա օրենքները և ճշտորեն կիրառել դրանք» (Ֆ. Էնգելս, Բնության դիալեկտիկա, էջ 178—179):

Նման հարցադրումը հուշում է այն միտքը, որ չափազանց անհրաժեշտ է ամենայն խորությամբ, համակողմանի ուսումնասիրել բնությունը, հայտնաբերել երևույթների հիմքում ընկած օրինաչափությունները: Այդ ամենը հնարավորություն կընձեռի կանխատեսելու բնության վրա մարդու ներգործության հնարավոր հետևանքները:

Անհրաժեշտ է բնության հարստությունների օգտագործման նախապես կազմված որոշակի ծրագիր, որը պետք է ելնի բնության պահպանության շահերից:

Վերլուծելով մարդու անմտածված գործողությունների հետևանքները՝ Ֆ. Էնգելսը նախազգուշացնում է. «Սակայն շատ էլ չհրապուրվենք բնության նկատմամբ տարած մեր հաղթանակներով: Յուրաքանչյուր այդպիսի հաղթանակի համար նա մեզնից վրեժխնդիր է լինում: Այդ հաղթանակներից յուրաքանչյուրը, ճիշտ է, առաջին հերթին ունենում է այն հետևանքները, որ մենք նկատի էինք առել, բայց երկրորդ ու երրորդ հերթին ունենում է միանգամայն այլ, չնախատեսված հետևանքներ, որոնք շատ հաճախ ոչնչացնում են առաջինների նշանակությունը» (Նույն տեղը, էջ 178): Իրոք, բնության վրա ներգործելու այս կամ այն հաջողված ձեռնարկումը դեռ չի վկայում դրա անվտանգության մասին. վաղ թե ուշ երևան են գալիս այդ ներգործությունների վնասակար հետևանքները. համոզիչ դարձնելու համար այդ միտքը, Էնգելսը հիշատակում է իսպանական գաղութարարների մի բարբարոսություն. նրանք հրդեհել են Կուբայի սարալանջերին աճող անտառները՝ մոխիր ստանալու, այն իբրև պարարտանյութ օգտագործելու, եկամտաբեր սրճի բերքատվությունը բարձրացնելու նպատակով: Բայց, ահա, նշում է Էնգելսը, դրան հետևեց այն, որ արևադարձային հեղեղները լվացին-տարան անտառազուրկ լանջերի անպաշտպան հողի վերին շերտերը՝ թողնելով միայն լերկ ժայռեր:

Իսկ երբ Հունաստանում, Փոքր Ասիայում և այլ երկրներում, վարելահողերի տարածություններն ընդարձակելու նպատակով, հատվեցին անտառները, այդ արարքը գործողները նույնպես չէին մտածում, որ իրենց քայլը կարող է հանգեցնել այդ տարածությունների ամայացման: Անտառների ոչնչացման հետևանքով, նշված տարածությունները զրկվեցին նաև անտառներում կուտակվող ու պահպանվող խոնավությունից:

«Եվ իրոք, մենք օրեցօր սովորում ենք ավելի ու ավելի ճիշտ հասկանալ բնության օրենքները և ճանաչել նրա բնական ընթացքին մեր ակտիվ միջամտության ինչպես ավելի մոտիկ, այնպես էլ ավելի հեռավոր հետևանքները» (Նույն տեղը, էջ 179):

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ առաջին օրերից, ինչպես և քաղաքացիական պատերազմից քայքայված ժողովրդական տնտեսության վերականգնման դժվարին տարիներին Վլադիմիր Իլյիչ Լենինը մեծ ուշադրություն է նվիրել բնության պահպանման խնդիրներին։ Հանրահայտ են լենինյան դեկրետները անտառների, հողերի, կենդանական աշխարհի ռեսուրսների օգտագործման կարգավորման, ինչպես և բնության հուշարձանների, այգիների ու պուրակների պահպանման վերաբերյալ։ Լենինի անմիջական մասնակցությամբ մշակվել ու սահմանվել են բնության օգտագործման, ինչպես և մարդու՝ բնական միջավայրի պահպանման սկզբունքները, որոնք դարձել են կոմունիստական կուսակցության ու սովետական կառավարության ուղեցույցը այդ ասպարեզում։

Սովետական պետությունը ելնում է այն բանից, որ մարդկությունը չի կարող առաջադիմել առանց բնության հարստությունների օգտագործման, հետևապես և՝ առանց բնության վրա ներգործելու։ Բնությունը մեզ համար ո՛չ միայն սննդի ու հումքի, այլև ոգեշնչման աղբյուր է։ Մարդուն շրջապատող բնական միջավայրի որակը մեր երկրում ժողովրդի բարեկեցության պայմաններից մեկն է, որի ապահովումն ու բարձրացումը հասարակական արտադրության գերագույն նպատակն են սոցիալիստական հասարակարգում։

Բնության ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը, պահպանումն ու վերարտադրումը, հոգատար վերաբերմունքը բնության նկատմամբ, ասված է ՍՍՀՄ Գերագույն սովետի 1972 թ. սեպտեմբերի 20-ի որոշման մեջ, ՍՍՀՄ-ում կոմունիզմի կառուցման բաղկացուցիչ մասն են։ Բնության պահպանության նպատակով մեր երկրում ծրագրվող ու իրականացվող միջոցառումների նպատակն է ապահովել մարդու և բնության ներդաշնակ գոյակցությունը՝ նրանց օպտիմալ փոխհարաբերության պայմաններում։ Այդպիսի փոխհարաբերությունների ցայտուն օրինակներից մեկը կարող է ծառայել բնության վերափոխումը և նրա հարստությունների արհեստական վերարտադրությունը՝ մարդու պահանջմունքների բավարարման լրացուցիչ միջոցների ստեղծման նպատակով։ Մեր երկրում իրականացվել և իրականացվում են տնտեսական վիթխարի նշանակություն ունեցող ծավալուն միջոցառումներ։ Միջին Ասիայում և Ղազախստանում օգտագործելի են դարձել միլիոնավոր հեկտար ավազուտներ, խոպան տարածություններ, ամայի տափաստաններ։ Բելոռուսիայում և Վրաստանում չորացվել են ճահճուտները և հատկացվել գյուղատնտեսական կուլտուրաների մշակությանը։ Միութենական շատ հանրապետություններում քարքարոտ և ամայի տարածությունները մարդու տքնաջան աշխատանքով դարձել են հազարավոր հեկտարներով ծաղկուն այգիներ։ Սկսած 1975 թվականից, մինիստրություններն ու գերատեսչությունները հաշվետվություն են ներկայացնում բնության պահպանության նպատակով ձեռնարկվող միջոցառումների մասին։ Մշակված է այդ միջոցառումների իրականացման ծրագիր։ Նման միջոցառումները խրախուսվում են թե՛ ընթացիկ և թե՛ հեռանկարային պլաններում, իսկ դրանց ծավալն ու ֆինանսավորումը տարեցտարի մեծանում են։

Բացառիկ կարևոր են սովետական կառավարության այն միջոցառումները, որոնց նպատակն է մարդու բնական միջավայրի՝ կենսոլորտի (բիոսֆերայի) պահպանությունը։ Սովետական Միությունն առաջին պետությունն է աշխարհում, որտեղ սահմանված են մթնոլորտում եղած վնասակար միացությունների թույլատրելի խտության չափերը։

Այդ նկատառումով պլանավորվում է արդյունաբերական օբյեկտների տեղադրումը, արգելված է մաքրման սարքավորումներից զուրկ արդյունաբերական ձեռնարկությունների շահագործումը, պետականորեն վերահսկվում է վառելանյութի ռացիոնալ օգտագործումը, մշակվում է թափոնազուրկ արտադրության տեխնոլոգիա։ Սովետական կառավարությունը որոշումներ է ընդունել Կասպից ծովի, Վոլգա և Ուրալ գետերի, ինչպես և Բայկալ լճի պահպանման վերաբերյալ։ Մեր երկրում գործում են պետական տեսչություններ, որոնց խնդիրն է պահպանել հողը, ջրային հարստությունները, մթնոլորտը, անտառները, որսակենդանիները... Մեծ ուշադրություն է նվիրվում պետական արգե-



լանոցների կազմակերպմանը։ Մեր երկրում գործում են 110 պետական արգելանոցներ՝ մոտ ութ միլիոն հեկտար տարածությամբ, ուր ամեն ինչ արվում է կենդանական ու բուսական տեսակների գենոֆոնդի պահպանման նպատակով։ Պետական արգելանոցներն ու արգելավայրերը, անտառային ու որսորդական տնտեսությունների հետ համատեղ, ամեն ինչ անում են բուսական ու կենդանական տեսակների վերարտադրման, ինչպես և անհետացող տեսակների վերականգնման համար։

ՀՈՒՅԺ ԿԱՐԵՎՈՐ, ԿԵՆՍԱԿԱՆ ՈՒ ՀՐԱՏԱՊ են բնության պահպանության ասպարեզում նաև մեր հանրապետության առջև ծառացած խնդիրները։ Փոքրատարած Հայաստանը մեր Միության ամենախիտ բնակեցված ու ինդուստրացված հանրապետություններից է։ Այստեղ ավելի զգալի է լինում գիտատեխնիկական առաջընթացի բացասական ներգործությունը բնության վրա։ Այդ է պատճառը, որ մեր հանրապետության Գերագույն սովետը և կառավարությունը որոշումներ են ընդունել ու համապատասխան միջոցառումներ են իրականացնում հողի, ջրի, ընդերքի, ինչպես և մարդու բնական միջավայրի պահպանման նպատակով։ Այսպես, դեռևս 1958 թ. ՀՍՍՀ Գերագույն սովետը ընդունեց օրենք «Հայկական ՍՍՀ բնության պահպանության մասին», իսկ ՀՍՍՀ Մինիստրների սովետը՝ նշված օրենքի կիրառման վերաբերյալ որոշումը։ Հետագա տարիներին, ի լրումն այդ ամենի, ընդունվեցին օրենքներ հողի, ջրի, ընդերքի պահպանման ու ռացիոնալ օգտագործման վերաբերյալ։

Բնության պահպանման նպատակով ծավալվող աշխատանքների ընդլայնման ասպարեզում կարևոր նշանակություն ունեցան ՀՍՍՀ Գերագույն սովետի, ՀԿԿ Կենտկոմի և Մինիստրների սովետի 1973 թ. «Հայկ. ՍՍՀ բնության պահպանման հետագա բարելավման և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման միջոցառումների մասին» որոշումները։

Հանրապետությունում կազմակերպված են և գործում են արգելանոցներ և արգելավայրեր՝ տասնյակ-հազարավոր հեկտար տարածությամբ, որոնց նպատակն է պահպանել Հայաստանի տարածքում գտնվող ինքնատիպ հուշարձանները (լանդշաֆտները), ինչպես և վայրի կենդանիներն ու բուսատեսակները։ Զգալի աշխատանք է տարվել կանաչ տարածությունների պահպանման ու ընդլայնման մարզում։ Բավական է ասել, որ բնության պահպանության սկզբնական կազմակերպությունների և իրավական անդամների օգնությամբ ու անմիջական մասնակցությամբ միայն 1975 թ. բնակավայրերի կանաչապատման նպատակով տնկվել են ավելի քան մեկ ու կես միլիոն պտղատու և դեկորատիվ ծառեր, մոտ հինգ միլիոն թփուտներ և ծաղկասածիլներ։ Կազմակերպվել է ավելի քան 40 հազար հեկտար անտառատարածությունների պահպանությունը և կատարվել ավելի քան վեց հազար հեկտար նոր անտառատնկումներ։

Ընկերությունն զգալի աշխատանք է տանում բնության պահպանության վերաբերյալ գիտելիքների պրոպագանդման համար. շատ բան է արվում և ազգաբնակչությանը բնության նկատմամբ սիրով, հոգածությամբ համակելու նպատակով։ Այդ աշխատանքների ծավալի մասին պատկերացում տալու համար բավական է նշել, որ 1975 թ. կազմակերպվել են ավելի քան 13 հազար զեկուցումներ, զրույցներ, կինոցուցադրումներ, հեռուստատեսային և ռադիոհաղորդումներ, ինչպես և ավելի քան 1300 «ծաղկի օր», «թռչնի օր», «անտառի շաբաթ» մասսայական միջոցառումները։

Սակայն պետք է խոստովանել, որ դեռևս անբավարար է իրականացվող միջոցառումների արդյունավետությունը, ամեն ինչ չի արվում ժամանակին կանխելու մարդու տնտեսական ակտիվ գործունեության բացասական ազդեցությունը բնության տարրերի հավասարակշռության պահպանման և, մանավանդ, դրա օրգանական բաղադրամասերի՝ կենդանիների ու բույսերի տեսակային ու քանակական կազմի վրա։ Առավել սուր է արտահայտվում մարդու գործունեության անբարենպաստ ազդեցությունը կենդանական աշխարհի, հատկապես վայրի կաթնասուն կենդանիների ու թռչունների վրա։ Հայտնի է, որ կենդանիների խոշոր տեսակների գոյատևման համար բարենպաստ պայմաններ են

ստեղծվում մեծատարած անմարդաբնակ վայրերում։ Մինչդեռ այսօր մեր հանրապետության տերիտորիայում դժվար է գտնել այդ պահանջները բավարարող այնպիսի հատվածներ, որ զերծ լինեն ավտոմոբիլային կամ երկաթուղային ճանապարհներից, որտեղ չլինեն տարբեր նպատակներով կառուցված գործող օբյեկտներ և այլն։ Նշված, ինչպես և մի շարք այլ պատճառներով, մեր հանրապետությունում կան անհետացող կամ անհետացման ենթակա ողնաշարավոր կենդանիների շատ տեսակներ։ Համաշխարհային և համամիութենական մասշտաբով հրատարակվող «Կարմիր գրքերում», որոնց մեջ, գրանցված են այն կենդանատեսակները, որոնց սպառնում է անհետացման վտանգը, թվարկված են մեր հանրապետության տերիտորիայում ապրող մի քանի տասնյակ կենդանիներ։

Բնության պահպանման գործում մեծ անելիքներ ունեն մեր հանրապետության գիտական հաստատությունները։ Դրանք պետք է մշակեն մարդու և բնության ներդաշնակ գոյակցության գիտական հիմունքները, նկատի ունենալով հասարակական զարգացման ներկա մակարդակը և ապագա պահանջմունքները։ Հարկ է, որ մշակվող միջոցառումների իրականացմանն ակտիվ մասնակցի մեր հանրապետության բնության պահպանության ընկերությունը, որի ավելի քան 750 հազար անդամներն ընդգրկված են հանրապետության բնակավայրերում, դպրոցներում և հիմնարկ-ձեռնարկություններում կազմակերպված ավելի քան 3.700 սկզբնական կազմակերպություններում։ Բնության պահպանության ընկերությունը և նրա հանրապետական խորհուրդը, պրոպագանդելով բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման գաղափարները, պետք է ջանան հասնել այն բանին, որ բնակչությունը մասսայաբար հոգա բնության պահպանության համար, ակտիվ մասնակցի բնության կորուստների վերականգնմանը, ինչպես և նրա գիտական վերափոխման ասպարեզում առաջադրվող միջոցառումների կենսագործմանը։

Բնության պահպանման ասպարեզում իր վարած քաղաքականությամբ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը ելնում են այն բանից, որ ո՛չ միայն ներկայիս, այլև հաջորդ սերունդների մարդիկ պետք է հնարավորություն ունենան օգտվելու բնության բոլոր բարիքներից։ ՍՄԿԿ XXV համագումարում ընկ. Լ. Ի. Բրեժնևն ասաց. «...բնությունը կարելի է օգտագործել տարբեր կերպ։ Կարելի է, և մարդկության պատմությունը դրա քիչ օրինակներ չգիտե, իր հետևից թողնել անպտուղ, ամայի, մարդու համար անօգուտ տարածություններ։ Բայց կարելի է և պետք է... վեհացնել բնությունը, բնությանն օգնել առավել լրիվ բացահայտելու իր կենսական ուժերը։ Կա մի այսպիսի հասարակ, բոլորիս հայտնի արտահայտություն՝ «ծաղկող երկիր»։ Այդպես են անվանում այն հողերը, որտեղ մարդկանց գիտելիքները, փորձը, նրանց կապվածությունը, սերը բնության հանդեպ, հիրավի, հրաշքներ են գործում։ Դա մեր սոցիալիստական ուղին է»։

# ՄԱՐԴ—ՖԻՐՄԱ—ՄԱՐԴ *

**Ե. Վ. ՄԻԽԱՅԼՈՎ**
Լենինգրադի «Սվետլանա» արտադրական
միավորման կուսկոմիտեի քարտուղար

ԱՅՍՕՐ ՄԵՆՔ ԼԻԱԿԱՏԱՐ իրավունքով կարող ենք ասել, որ «Սվետլանա» արտադրական միավորումը երկրի էլեկտրոնային սարքաշինության խոշորագույն ֆիրմաներից է։ Այն ունի ստեղծագործական վիթխարի ուժեր, որոնց շնորհիվ հաջողությամբ լուծեց իններորդ հնգամյակում ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խնդիրները, ստեղծեց ամուր բազա՝ տասներորդ հնգամյակի հաջող իրագործման համար։

Գիտատեխնիկական հեղափոխությունը հանգեցրել է արտադրության կենտրոնացման ուժեղացման։ Մենք արդեն պրակտիկայում տեսել ու համոզվել ենք, թե ինչպիսի ռեզերվներ կան արտադրության զարգացման և գիտության հետ նրա մշտական ու սերտ կապի մեջ։ Միայն իններորդ հնգամյակի տարիներին մեր միավորման ձեռնարկություններում վերակառուցվել են հիսուն արտադրամաս և տեղամաս, գրեթե ամենուրեք արտադրության մեջ կիրառվել են կատարելագործված տեխնոլոգիական պրոցեսներ, բարեփոխվել է թողարկվող արտադրանքի տեսականին, յուրացվել է ավելի քան 200 տիպի նոր սարքերի արտադրություն, որոնք համապատասխանում են հայրենական և արտասահմանյան տեխնիկայի վերջին նվաճումներին։

Սարքաշինարարները մեծ հաջողության են հասել ժողովրդատնտեսական այնպիսի կարևոր խնդրի լուծման գործում, ինչպիսին աշխատանքի արտադրողականության աճի արագացումն է։ Միավորումը ժամկետից շուտ՝ երեք տարի երեք ամսում հասավ հնգամյակի վերջին տարվա համար սահմանված մակարդակին։

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը ողջունեց սվետլանցիներին աշխատանքային մեծ հաղթանակի առթիվ։ Ողջույնի հեռագրում մասնավորապես ասված էր. «...բարձր գնահատականի է արժանի միավորման փորձը կոլեկտիվի տնտեսական և սոցիալական զարգացման հեռանկարային կոմպլեքսային պլանների մշակման ու իրականացման ասպարեզում, որոնք ուղղված են արտադրության ռեզերվների գործարկմանը, սոցիալիստական մրցության կազմակերպման կատարելագործմանը, աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության ըստ ամենայնի զարգացմանը»։

Միավորման կոլեկտիվը Լ. Ի. Բրեժնևի ողջույնն ընկալեց որպես արտադրության կառավարման հետագա կատարելագործման, նրա արդյունավետության, արտադրանքի որակի բարձրացման, բանվոր-ծառայողների կյանքի պայմանների բարելավման գործնական ծրագիր։

*ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՃՅՈՒՂԵՐՈՒՄ*, մասնավորապես էլեկտրոնային սարքաշինության մեջ, ավելի ցայտուն է դրսևորվում արտադրության տեխնիկական աճի և կոլեկտիվի սոցիալական զարգացման փոխադարձ կապը։ Ահա հասարակ մի օրինակ։ Հենց որ մենք սկսեցինք պատրաստել սարքերի կիսա-

* Հոդվածը գրված է մեր խմբագրության պատվերով։

հաղորդիչներ, մեզ անհրաժեշտ եղան տեսական ֆիզիկայի հիմունքներին ծանոթ բանվորներ։ Բնականաբար, մենք ընտրեցինք առավել գրագետ ու ընդունակ մարդկանց, որոնք արագ բարձրացրին իրենց որակավորումը և հետաքրքրությամբ ձեռնամուխ եղան ավելի բարդ աշխատանքի։

Անհրաժեշտ եղավ սևեռուն ուշադրություն նվիրել կադրերի ընտրությանը, նրանց վերախմբավորմանը, նոր պլանները մշակել նոր պահանջներից ելնելով. դրանք իրականացնել ժամանակին։ Մեր խոսքը հարստացավ «Կոլեկտիվի պրոֆեսիոնալ-որակավորման կառուցվածք» նոր հասկացությամբ։ Վերլուծության շնորհիվ ֆիրմայում հնարավոր եղավ մի քանի տարի առաջ սահմանել բանվորների լրացուցիչ պահանջները որակավորված աշխատանքի նկատմամբ, պարզել արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման շնորհիվ ազատվող մարդկանց թիվը, կառուցվածքային տեղաշարժ նախատեսել բանվորների մասնագիտական կազմում և այլն։

Եվ այսպես հիմք դրվեց տնտեսական և սոցիալական զարգացման պլանին, որը նախատեսում է արտադրության տնտեսական ու տեխնիկական մակարդակի բարձրացում, կոլեկտիվի սոցիալական կառուցվածքի փոփոխություն, բանվորների, ծառայողների, ինժեներա-տեխնիկական կադրերի աշխատանքի ու կենցաղի պայմանների առավել բարելավում։

Այդպիսի պլանների իմաստը պարզ է. ձեռնարկությունը կոլեկտիվին տրամադրում է նրա բեղմնավոր գործունեության համար անհրաժեշտ պայմաններ, իսկ կոլեկտիվը, ոգևորվելով աշխատանքի ստեղծագործական մթնոլորտով, իր բարեկեցության նկատմամբ ցուցաբերված հոգատարությամբ, հաջողությամբ լուծում է իր առջև ծառացած խնդիրները։

Այսպես, «Մարդ—ֆիրմա—մարդ» ֆորմուլան ձեռք է բերել միանգամայն իրական իմաստ, դարձել միավորման կյանքի օրենքը, մեր ողջ կուսկազմակերպության գործունեության առանցքը։ Համախմբել արտադրական կոլեկտիվները, պահպանել «Սվետլանայի» համար արժանի կադրեր, բանվոր երիտասարդությանը ներգրավել կոլեկտիվի հետաքրքրությունների շրջանակում, նրա համար ապահովել ստեղծագործական աշխատանքի լավ պայմաններ, խրախուսել տեխնիկական պրոգրեսի և ընդհանուր կրթության նրանց ձգտումը— ահա թե տնտեսական ու սոցիալական զարգացման պլանների կապակցությամբ գործունեության ինչպիսի ասպարեզ բացվեց մեր կուսկազմակերպության համար։

Կարելի է թվարկել բազմաթիվ օրինակներ, թե ինչպես հաճախ մեկեն փոխվում է աշխատանքային մթնոլորտը ո՛չ միայն արտադրական, այլև բարոյա-հոգեբանական գործոնների ազդեցությամբ։ Միավորման օղակներում կատարված սոցիոլոգիական հետազոտությունները («Սվետլանայում» կա գործարանային կենտրոնական սոցիոլոգիական լաբորատորիա, որը համագործակցում է Լենինգրադի սոցիոլոգների և սոցիալական հոգեբանների հետ) ցույց տվեցին, օրինակ, որ մի շարք արտադրամասերում բանվորական տեղերի ոչ մտածված կազմակերպումը, կոլեկտիվի անդամների միջև եղած որոշ անբարյացակամ հարաբերությունները, միապաղաղ աշխատանքը բացասաբար են ազդում բանվորների տրամադրության, հետևաբար և՝ աշխատանքի արտադրողականության աճի վրա։

Այդ հետազոտությունների արդյունքների հիման վրա միավորման կուսկազմակերպությունը և դիրեկցիան մշակեցին միջոցառումներ բացահայտված թերությունները վերացնելու համար։ Մի քանի արտադրամասերում բարեփոխվեցին մոնտաժողուհիների աշխատատեղերը, կատարվեցին լուսային նոր ձևավորումներ, ձեռք բերվեց ավելի հարմար կահույք, զգալիորեն փոփոխվեց աշխատանքի ու հանգստի ռեժիմը, հնարավոր եղավ մի մասնագիտությունը փոխարինել մյուսով, համատեղել և այլն։

Մեծ արդյունք տվեց բանվորական կադրերի հոսունության պատճառների կոնկրետ վերլուծությունը։ Բոլորին հայտնի է, թե ինչպիսի վնաս է հասցնում ձեռնարկություններին սուր ու բարդ այդ պրոբլեմը։ Այս առումով բացառություն չէ նաև «Սվետլանան»։ Եվ, ահա, սոցիոլոգիական հետազոտությունը



ցույց տվեց, որ աշխատանքից ազատվածների 30 տոկոսը կազմում են երիտասարդ բանվորները, որոնք միավորումում աշխատել են մեկից մեկուկես տարի։ Պարզվեց, որ մի շարք դժվարություններ կան բազային պրոֆտեխնիկական ուսումնարանների շրջանավարտների համար՝ կոլեկտիվում հարմարվելու առումով։

Պրոֆտեխնիկական ուսումնարաններ ընդունվողների մասնագիտական կողմնորոշման բացակայությունը դժվարացնում էր նորեկների հետ տարվող աշխատանքը, երբեմն ստիպում էր մասնագիտության նկատմամբ սեր հարուցել ո՛չ միայն չեղած տեղից, այլև բացասական վերաբերմունքի պայմաններում։ Հարկ էր լինում հաղթահարել անչափահասների կողմից իրենց հասակակիցների վարմունքի ընդօրինակման, աշխատանքից նրանց չբավարարվածության, հասակավորների կողմից անհարգալից վերաբերմունքի միտումները։

Բացահայտված իրողությունն օգնեց մեզ որոշակի քայլեր անելու անչափահասների մասնագիտական կողմնորոշման, պրոֆտեխնիկական ուսումնարանների և ձեռնարկությունների միջև բազմակողմանի կապերի ապահովման ասպարեզում։ Այդ գործնական քայլերի արդյունքն են՝ սովորողների համար ստեղծված խմբակները և սեկցիաները, նրանց մասնակցությունը ապագա արտադրամասի հասարակական կյանքին, արտադրության առաջավորների հետ հանդիպումները, պրակտիկայի բարելավումը, լավագույն պատանիների որակավորման ժամանակից շուտ ատեստատավորումը և այլն։

Կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները հենց ընթացան այս ուղիով և շատ բանով փոխեցին աշխատանքային լուրջ կյանքի համար երիտասարդ բանվորների պատրաստման բնույթը։ Կարելի է վկայակոչել կիսահաղորդիչների ինտեգրալ սխեմաների արտադրամասում տեղի ունեցած դրական զարմանալի փոփոխությունները։ Ոչ հեռավոր անցյալում այստեղ կային և դժվարություններ ինչպես բանվորական ուժի, այնպես էլ այդ նույն պրոֆտեխնիկական ուսումնարաններից եկած, արտադրամասի կյանքի ու աշխատանքի պայմաններին դժվարությամբ հարմարվող անչափահասների հոսունությունը կանխելու գործում։

Նորեկների բախտի հանդեպ վարպետ-դաստիարակների հոգատարությունը, նրանց վտանգավոր տարիքի նկատմամբ ուշադրությունը, աշխատանքի հանդեպ ոչ հարկադիր սիրո պատվաստումը, պետական գործի համար պատասխանատվությունը, ի վերջո, պսակվեցին հաջողությամբ։ Սոցմրցությունում բազմիցս հաղթած այդ առաջավոր արտադրամասն անցավ իրականում խիզախումների ուղի՝ պայքարելով յուրաքանչյուր մարդու համար, կարևորելով ամեն մի դժվարին սկսվող կյանք, ճիշտ հունի մեջ դնելով այն։ Այսօր այդ արտադրամասում չկան կարգապահություն խախտողներ, գործալիքներ, չկան աշխատողներ, որոնք չկատարեն արտադրանորմաները և չհոգան արտադրանքի որակի բարելավման համար։ Երիտասարդության վարպետ-դաստիարակ, կոմունիստ բրիգադավար Վալենտինա Կոտովան ժամանակին շատ բան է արել, որպեսզի նորեկները արտադրամասում զգան իրենց այնպես, ինչպես տանը։ Եվ նրա նման դաստիարակների ջանքերը բարձր են գնահատվում. այժմ երիտասարդությունը սիրում է իր արտադրամասը, պայքարում դրա բարի անվան համար։ Արտադրամասն էլ իր հերթին աշխատողների համար ստեղծում է հուսալի, նյութապես և բարոյապես ապահովված կյանքի բոլոր պայմանները։

Թվում է, թե դա եզակի օրինակ է, բայց այն հնարավորություն է տալիս հետևություն անելու, թե ինչպես կարևոր է սոցիոլոգների օգնությամբ մեր պարբերաբար անցկացրած հետազոտությունների հիման վրա կատարված գործնական աշխատանքը։ Ներկայումս կադրերի հոսունությունը միավորումում կազմում է ընդամենը 5,6 տոկոս։ Այստեղ առկա է ոչ միայն տնտեսական, այլև սոցիալական արդյունքը։ Բարձրացավ ձեռնարկության մարդկանց բավարարվածությունն իրենց աշխատանքով, աճեց նրանց արտադրական, հասարակական ակտիվությունը։

ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՄԻԱՎՈՐՄԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ և տնտեսական ու սոցիալական զարգացման հնգամյա պլանի կենսագործման «Սվետլանայի» աշխատանքի փորձը փոփոխություններ մտցրեց ոչ միայն ֆիրմայի տնտեսական, այլև կուսկազմակերպության կառուցվածքում: Միավորման միասնական կուսկազմակերպության ստեղծումը, ինչպես այսօր համոզվեցինք, հնարավոր է դարձնում ավելի լայն և որակյալ կերպով իրականացնել կուսակցական վերահսկողության իրավունքն ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ, արդյունավետ և նպատակային լուծել ներկուսակցական աշխատանքի և աշխատավորների գաղափարա-քաղաքական դաստիարակության հարցերը: Միավորման կուսկազմակերպության աճող հնարավորությունները հատկապես ցայտուն կերպով դրսևորվեցին գիտատեխնիկական առաջընթացի արագացման և մարդկանց դաստիարակության ասպարեզներում: Այդ խնդիրներն այժմ միավորման պայմաններում լուծվում են նոր ձևով, կոմպլեքսայնորեն:

Ձեռնարկված միջոցների շնորհիվ միավորումում արդեն ստեղծվել են գիտաարտադրական հինգ կոմպլեքսներ, որոնց էությունն այն է, որ այժմ արտադրող արտադրամասերն սկսել են ենթարկվել կոնստրուկտորական բյուրոներին: Գիտության և արտադրության սերտ կապը հնարավորություն ընձեռեց մեզ՝ մոտ երկու անգամ կրճատելու մի շարք արտադրատեսակների մշակման ու յուրացման ժամկետները, կոնստրուկտորական բյուրոյի արագացված ցիկլով կատարված աշխատանքի տեսակարար կշիռը 1971 թ. 17 տոկոսից 1975 թ. հասցնելու 50 տոկոսի:

Այսպիսով, արտադրությունը և մարդը մեր գործունեության հիմքերի հիմքն են: Այսօր արտադրության կատարելագործման ու նոր մարդու դաստիարակության խնդիրները լուծելու համար ունենք կոնկրետ, գիտականորեն հիմնավորված գործողությունների ծրագիր: Դրանք կոմպլեքսային պլաններն են, որոնք հնարավորություն են ընձեռում, տեղի ունեցող պրոցեսների վերլուծությամբ, սահմանելու այս կամ այն սոցիալական տեղաշարժի կոնկրետ ժամկետը, որոշելու կոլեկտիվում յուրաքանչյուր մարդու զարգացման ռեալ հեռանկարները:

Վերջին չորս տարում «Սվետլանայում» գոյություն ունի միավորման և նրա առանձին ստորաբաժանումների սոցիալ-տնտեսական կամ դեմոգրաֆիական անձնագիր, որտեղ կան մոտ 200 առավել բնորոշ ցուցանիշներ, որոնք բացահայտում են տեղի ունեցող սոցիալական հիմնական պրոցեսները: Այսպես, այսօր միավորման աշխատողների 65 տոկոսը կանայք են, 30 տոկոսը՝ երիտասարդներ: Ընդ որում, սվետլանցիների միջին տարիքը մշտապես իջնում է. եթե 1970 թ. այն հավասար էր 35,6 տարեկանի, ապա ներկայումս 34,9 է: Աճում է ընդհանուր կրթական մակարդակը. 1970 թ. 8,8 դասարանից այն 1975 թ. հասավ 9,44 դասարանի: Մինչև 3,5-ի բարձրացավ միավորման բանվորների միջին կարգը:

Սոցիալական զարգացման պլանում մեծ տեղ է գրավում սոցմրցության կազմակերպումը: Մրցության տարբեր ձևերին մասնակցում է աշխատողների 90 տոկոսը: Յուրաքանչյուր տասը մարդուց ութը պայքարում է «Կոմունիստական աշխատանքի հարվածային», յուրաքանչյուր չորրորդ մարդը՝ «Մասնագիտության մեջ լավագույնը» կոչման համար: Յուրաքանչյուր վեցերորդ մարդը կնքել է երկկողմանի պայմանագիր՝ առավելագույն արտադրական ցուցանիշի հասնելու նպատակով: Ինժեներա-տեխնիկական աշխատողների ավելի քան մեկ երրորդն ունի արտադրության արդյունավետության բարձրացման անձնական ստեղծագործական պլան:

Ի՞նչ են վկայում այս բոլոր թվերը: Արժե՞, արդյոք, դրանց տալ այդպիսի մեծ կարևորություն: Չի՞ թաքնված, արդյոք, այդ լարված հաշվարկների ետևում ինչ-որ ձևական մոտեցում: Գտնում եմ, որ՝ ոչ: Այնպիսի խոշոր միավորման պայմաններում, ինչպիսին մերն է, անհրաժեշտ է այդ հայելին, որն արտացոլում է շարժումը, փոփոխությունը, աճը, էվոլյուցիան, առաջընթացը... Նայելով այդպիսի հայելուն, մենք տեսնում ենք մեր ուժեղ ու թույլ կողմերը և այդ կապակցությամբ ուշադրությունը սևեռում թերությունների վրա, կատարելագործում լավը:



Պրակտիկ երաշխավորությունների հետ միասին, որոնք մենք ստանում ենք սոցիոլոգներից, խոսուն են դառնում թվային գրաֆիկները: Սկսվում է աշխատանքը: Եթե մենք երբևիցե հայտաբերում ենք, որ առանձին ղեկավարներ,— եթե նույնիսկ նրանք ունեն գործնական բարձր հատկանիշներ և մասնագիտական հատկություններ,— վատ են նախապատրաստված դաստիարակի դերի համար, ցածր է, օրինակ, նրանց ընդհանուր կուլտուրայի մակարդակը, ապա մենք ձեռնարկում ենք համապատասխան միջոցների: Ինչպիսի՞: Օրինակ, վարպետների, արտադրամասերի, տեղամասերի պետերի, նրանց տեղակալների համար կազմակերպում ենք հատուկ դասընթացներ, որոնք իրենց ծրագրում նախատեսում են գեղագիտության և մանկավարժության, սոցիալական հոգեբանության և սոցիոլոգիական հարցեր: Պրակտիկ պարապմունքներում պարզվում են կոնկրետ իրավիճակները, քննարկվում արտադրամասերում անցկացված հետազոտությունների արդյունքները: Եթե նախկինում վարպետի հետ կոնֆլիկտը աշխատանքից ազատման տարածված պատճառներից էր, ապա այժմ այն պրակտիկորեն վերացել է, կազմում է ազատվածների ընդհանուր թվի մեկ տոկոսի ինչ-որ տասներորդական մասը:

Միավորման կուսկոմիտեն աշխատում է հեռանկարային պլանով, որը կոլեկտիվի տնտեսական և սոցիալական զարգացման պլանի հիմքն է: Նրանում մեկ միասնական հանգույցում օրգանապես զուգակցվում, շաղկապվում են բազմաբնույթ պրոբլեմներ— արտադրության բոլոր օղակների կատարելագործում, գերազանց որակի արտադրանքի թողարկում, աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության զարգացում, սոցմրցության արդյունավետության ապահովում, մարդկանց կենցաղի բարելավում, հոգատարություն արտադրության կուլտուրայի նկատմամբ:

Դժվար է ասել, թե կուսկազմակերպության գործունեության ո՞ր կողմերն ավելի մեծ նշանակություն ունեն, որը՝ փոքր: Մենք այդպես էլ գտնում ենք, որ մեզ մոտ չկան «հասարակ» խնդիրներ և «դյուրին» ուղիներ: Այն ամենը, ինչ վերաբերում է մարդու աշխատանքին, նրա տրամադրությանը, արտադրական հաջողություններին, իր ֆիրմայի համար հպարտության և բավարարվածության զգացումին, ամենաուղղակի, ամենաանմիջական ձևով վերաբերում է և կուսկոմիտեին:

Մեր սոցիալական զարգացման պլանները ռեալ են, և դրա համար ունեն մեծ նշանակություն, դուր են գալիս հենց իրենց՝ աշխատողներին, որովհետև դրանցում արտահայտվում է մարդու ռեալ վստահությունը ապահով ներկայի և հուսալի ապագայի նկատմամբ:

Տնտեսական և սոցիալական զարգացման հեռանկարային կոմպլեքսային պլանների նախաձեռնությամբ հանդես եկած «Սվետլանայի» փորձն այժմ արդեն լայնորեն տարածվել է ոչ միայն Լենինգրադ քաղաքի ու մեր մարզի ձեռնարկություններում, այլև երկրում՝ ամենուրեք: Լենինգրադյան կուսկազմակերպությունը, որի գլխավորությամբ իրականացվում է արդի էկոնոմիկայի առավել կարևոր պրոցեսների կառավարումը, մշտական ուշադրություն է նվիրում արտադրական միավորումներին, ամեն մի նորին և առաջավորին, որոնք ծնվում են այդ օղակներում: Տնտեսական և սոցիալական զարգացման պլանները լենինգրադյան ծնունդ են, և դրանով իսկ բարձր է բոլոր կոմունիստների և կոմերիտականների պատասխանատվությունը դրանց հետագա ստեղծագործական զարգացման և կատարելագործման համար: Մենք առանձնահատուկ խորությամբ ենք զգում դա այժմ, մարդկանց ստեղծագործական նախաձեռնությունների համակողմանի զարգացման նոր տարում:

«ՍՎԵՏԼԱՆԱ» ՄԻԱՎՈՐՄԱՆ ԿՈԼԵԿՏԻՎԸ 1976 թ. աշխատանքային բարձր բնագծեր է նախանշել իր հանդիպական պլանով: Դրանում պարզորոշ արտահայտված է սարքաշինարարների ձգտումը՝ ո՛չ միայն պահպանել և բարձրացնել հարվածային տեմպերը, որոնք ձեռք էին բերվել իններորդ հնգամյակում, նախահամագումարյան աշխատանքային հերթափոխում, այլև բազմապատկել իրենց ներդրումը ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած խնդիրների լուծման գործում: Սվետլանցիները պարտավորվել են արտադրանքի թողարկման

ծավալը մեծացնել ավելի քան 17, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 15 տոկոսով կամ զգալիորեն ավելի, քան նախատեսված է պետական առաջադրանքով, պետական որականիշի արժանացնել ևս 10 արտադրատեսակ:

Հանդիպական պլանը անպայմանորեն կատարելու նպատակով «Սվետլանայի» կոմունիստները, արտադրամասային կուսկազմակերպություններն ու կուսխմբերը տասներորդ հնգամյակի առաջին իսկ օրից լայն աշխատանք են ծավալել սոցմրցության հետագա զարգացման, արտադրական կոլեկտիվների ակտիվության բարձրացման, նրանցում ստեղծագործական բարենպաստ պայմանների և բարոյա-հոգեբանական մթնոլորտի ստեղծման համար: Սոցմրցության զարգացման նպատակով տարվող աշխատանքում մենք տարբերակում ենք երկու փոխկապակցված ուղղություններ: Առաջինն աշխատավորների իսկական մասսայական և արդյունավետ մասնակցության ապահովումն է աշխատանքային մրցակցությանը, երկրորդը՝ յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր աշխատողի դաստիարակությունն այն բանի գիտակցությամբ, որ անհրաժեշտ է ավելացնել անձնական աշխատանքային ներդրումը հանդիպական պլանի և տասներորդ հնգամյակի առաջադրանքների կատարման գործում, իրեն պատասխանատու զգալ հանրային արտադրության արդյունավետության և որակի բարձրացմանն ուղղված կազմակերպա-տեխնիկական միջոցառումների իրականացման, գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների, առաջավոր փորձի արմատավորման համար: Մրցության նկատմամբ այդպիսի կոմպլեքսային մոտեցումը նպաստում է լենինգրադցիների՝ «Յուրաքանչյուրի բարձրորակ աշխատանքից՝ կոլեկտիվի աշխատանքի բարձր արդյունավետություն» լոզունգի պրակտիկ մարմնավորմանը:

Արտադրանքի որակի բարձրացման, հուսալիության և երկարակեցության պրակտիկ հարցերն արտացոլվել են սոցմրցության բոլոր ձևերում, որոնք տարածված են ֆիրմայում: Որակական ցուցանիշների համար պայքարն առանձնապես վառ է դրսևորվում առաջին ներկայացմամբ արտադրանքի անթերի հանձնման համար ծավալված մրցությունում, Մոսկվայի ՄԷԼԶ միավորման հավաքողների բրիգադավար Գ. Դ. Արաֆևայի՝ «Շաբաթվա ընթացքում մեկ ժամ աշխատել խնայած նյութով» և Գորկու «Օրբիտա» գործարանի փորագրող Ա. Ի. Բեզրուկովայի՝ «Տեխնոլոգիական կորուստների նվազեցման և պիտանի արտադրանքի թողարկման տոկոսի բարձրացման համար» նախաձեռնությունների արմատավորման համար ծավալված շարժումներում: Աշխատանքային մրցակցության այդ ձևերի առավելությունն այն է, որ դրանք մրցության յուրաքանչյուր մասնակցողի հնարավորություն են ընձեռում՝ գնահատելու իր աշխատանքի արդյունքները, իր կոնկրետ ներդրումը կոլեկտիվի նվաճումներում, թելադրում են աշխատողներին՝ վերլուծելու արտադրանքի բոլոր հնարավոր արատների պատճառները, ուղիներ գտնելու դրանց վերացման համար, նպաստում են աշխատավորների մասնագիտական վարպետության բարձրացմանը:

Սվետլանցիների ստեղծագործական որոնումները, աշխատանքային և հասարակական-քաղաքական ակտիվության բարձրացումը կյանքի են կոչել նոր հայրենասիրական շարժում՝ «Առանձին բանվորների գերազանց որակից հասնել բրիգադայի գերազանց որակին», որի նախաձեռնությամբ հանդես է եկել Մ. Մ. Միրոնովայի ղեկավարած արտադրամասի մոնտաժող-վակուումավորող բրիգադան: Արժեքավոր այս նախաձեռնությունը հավանության արժանացավ կուսկոմիտեի կողմից: Նրա հանձնարարականով ձեռնարկությունում մշակվել են այդ մրցության կանոնները՝ որակական ցուցանիշների բարելավման համար: Այդ փաստաթղթերում նշվում է, որ «Գերազանց որակի բրիգադայի» կոչումը շնորհվում է այն կոլեկտիվին, որը համառորեն պայքարում է առաջին ներկայացմամբ արտադրանքի հանձնման ըստ ամենայնի ավելացման համար՝ տեխնոլոգիական կորուստների կրճատմամբ, պիտանի արտադրանքի տոկոսի ավելացմամբ: Բանվորները պետք է դրսևորեն անձնական նախաձեռնություն որակական ցուցանիշների բարելավման գործում, կատարեն և գերակատարեն արտադրական նորմաները: Եթե այդ պահանջները կատարվում են, և բրիգադան կիսամյակի ընթացքում ամբողջ արտադրանքը հանձնում է առաջին ներկայացմամբ, ապա նա արժանանում է «Գերազանց որակի բրիգադայի» կոչման: Ընդ որում, արտադրամասի ընդհանուր ժողովում բրիգադավարին հանձնվում է վկայական՝ արտադրանքն առանց տեխնիկական վերահսկողության բաժնի վերահսկիչին ներկայացնելու իրավունքով: Դրանում թվարկվում են բոլոր բանվորների ազգանունները և դրոշմը դետալների պատրաստմանը հարակից փաստաթղթերը ձևակերպելու համար:



Մրցության այդ ձևն ունի սկզբունքային կարևոր նշանակություն մեր արտադրության պայմաններում, երբ առկա են արտադրանքի հսկայական տեսականի, մեծ խտությամբ մոնտաժվող դետալներ, որոնց մեծ մասը տարբերակվում է միկրոսկոպի ակնապակու միջոցով: Դրանով դժվարանում, հաճախ ընդհանրապես բացառվում է արատավոր մասնիկը փոխելու հնարավորությունը՝ խոտանը վերացնելու համար: Մ. Մ. Միրոնովայի բրիգադայի նախաձեռնությունը լիովին ապահովում է տասներորդ հնգամյակի խնդիրների լուծումը, քանի որ այն ամբողջովին ուղղված է արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացմանը: Մյուս կողմից, այն, մեր կարծիքով, համարվում է որակապես նոր և զարգացման առավել բարձր աստիճան՝ տասներորդ հնգամյակում «Հնգօրյա առաջադրանքը՝ չորս օրում» նշանաբանով ծավալված շարժման պայմաններում:

Նոր շարժումը միավորման աշխատավորության շրջանում լայնորեն տարածելու նպատակով՝ կուսկոմիտեի նախաձեռնությամբ ֆիրմայի բոլոր արտադրական ստորաբաժանումներում անցկացվել են բանվորական ժողովներ, որտեղ տասնյակ աշխատանքային կոլեկտիվներ պարտավորվել են պայքարել «Գերազանց որակի բրիգադայի» կոչմանն արժանանալու համար: Հավաքող-վակուումավորողների բրիգադայի նախաձեռնությամբ ծավալված շարժման լավ ու արդյունավետ կազմակերպման ու զարգացման վերաբերյալ մեծ, հետաքրքրական խոսակցություն եղավ արտադրամասերի արհմիության կոմիտեների ներկայացուցիչների, արհմիության խմբերի ղեկավարների և վարպետների սեմինար պարապմունքներում:

Սկզբում դանդաղ և դժվարությամբ, իսկ հետո արագ ու վստահ տարածվեց շարժումը արտադրամասերում և տեղամասերում: Ոչ բոլոր մարդիկ սկզբում հասկացան մրցության այդ նոր ձևի արժեքավորությունը և գնահատեցին արտադրանքի որակի համար կոլեկտիվ պատասխանատվության առավելությունը, որը նպաստում է բրիգադայի անդամների համախմբմանը, բանվորական տեղերում ստեղծագործական մթնոլորտի, փոխադարձ պահանջկոտության և խստապահանջության իրադրության ստեղծմանը: № 9 հավաքման արտադրամասում, որտեղ ծնունդ է առել նախաձեռնությունը, դրա հետ առնչվող հարցերը մեկ անգամ չէ, որ քննարկվել են կուսակցական ժողովներում ու կուսբյուրոյի նիստերում: Կոմունիստները բացատրական մեծ աշխատանք են տարել տեղամասերում: Եվ դա տվել է քաղցր պտուղներ: Այժմ իններորդ արտադրամասում շատ տեխնոլոգիական գծերի կոլեկտիվներ ընդօրինակել են Մ. Մ. Միրոնովայի բրիգադայի նախաձեռնությունը: Դրա շնորհիվ այդտեղ վերջին ժամանակներում 3—4 տոկոսով կրճատվել է տեխնիկական վերահսկողության բաժնի կողմից վերադարձվող արտադրանքի քանակը, 75—80 տոկոսով աճել է պիտանի սարքերի ելքը, իսկ առաջին ներկայացմամբ արտադրանքի հանձնումը 89 տոկոսից հասել է 96 տոկոսի: Դա մեկ անգամ ևս վկայում է «Գերազանց որակի բրիգադայի» կոչմանն արժանանալու համար ծավալված շարժման ներգործությունը:

Սոցմրցության ընթացքում ֆիրմայի աշխատավորները բազմապատկում են իրենց արտադրական ներդրումը, հանդես գալիս ստեղծագործական որոնումներով, որոնց նպատակը հանրային արտադրության արդյունավետության և որակի բարձրացումն է:

# ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ՄԱՐՄՆԱՎՈՐՈՒՄԸ ՍՍՀՄ-ՈՒՄ

**Ի. Պ. ԾԱՄԵՐՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԱՄԵՆԻՑ ԱՎԵԼԻ նշանակալի ու կարևոր նվաճումներից մեկը ազգային հարցի լրիվ, վերջնական ու անվերադարձ լուծումն է և բանվոր դասակարգի ու ամբողջ աշխարհի աշխատավոր մարդկանց արմատական շահերն արտահայտող պրոլետարական (սոցիալիստական) ինտերնացիոնալիզմի գաղափարների մարմնավորումը սովետական սոցիալիստական բազմազգ պետության մեջ և սովետական երկրի հասարակական կյանքի մյուս բոլոր ոլորտներում։ Սրանով է, ամենից առաջ, բացատրվում ՍՍՀՄ վիթխարի ձգողական ուժը, մի պետություն, որը համագործակցության մյուս պետությունների հետ միասին համաշխարհային սոցիալական առաջընթացի հենարանն է ու առաջատար ուժը։*

*ՍՍՀՄ-ի այդ ձգողական ուժի վառ վկայությունն էր աշխարհի 96 երկրների կոմունիստական, բանվորական, ազգային-դեմոկրատական և սոցիալիստական 103 կուսակցությունների՝ լայնորեն ներկայացված պատվիրակությունների մասնակցությունը ՍՄԿԿ XXV համագումարին։ Համագումարը մեկ անգամ ևս ցուցադրեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի մեծ ուժը։ Համագումարի ամբիոնից ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Առանձնապես կկամենայի ընդգծել մեր ժամանակներում պրոլետարական ինտերնացիոնալիզմի կարևորությունը։ Դա մարքսիզմ-լենինիզմի գլխավոր սկզբունքներից մեկն է» (Լ. Ի. Բրեժնև,* ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվություն և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, *էջ 50)։*

*Պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարների մարմնավորումը սովետական բազմազգ պետության մեջ նրա անխորտակ ուժի և հզորության աղբյուրն է։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԴԵՌԵՎՍ 1916 ԹՎԱԿԱՆԻՆ կանխատեսել էր, որ սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո ազգային և սոցիալական ճնշումից ազատագրված բոլոր ազգությունների աշխատավորական զանգվածներն ամեն կերպ ձգտելու են մերձենալու, միավորվելու միմյանց հետ, դաշինք կնքելու մեծ ու առաջավոր սոցիալիստական ազգերի հետ (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 22, էջ 457)։ Լենինի այս կանխատեսումը լրիվ հաստատվեց սովետական շինարարության պրակտիկայով։*

*Մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո կազմավորվեցին Ռուսաստանի[1], Ուկրաինայի, Բելոռուսիայի, Լատվիայի, Լիտվայի, Էստոնիայի սովետական հանրապետությունները, Բաքվի կոմունան։ Սակայն դրանց կազմավորման պրոցեսը խախտվեց քաղաքացիական պատերազմի և օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի պատճառով։ Ուկրաինական և Բելոռուսական սովետական հանրապետությունները հաստատվեցին հակահեղափոխական ուժերի ջախջախումից և նրանց տերիտորիաները ինտերվենտներից ազատագրելուց հետո միայն։ Սովետական իշխանությունն Ադրբեջանում, Հայաստանում և Վրաստանում հաղթանակեց 1920—1921 թթ., իսկ Մերձբալթիկայում վերականգնվեց միայն 1940 թվականի ամռանը։*

*Արդեն քաղաքացիական պատերազմի տարիներին սովետական անկախ հանրապետությունների ժողովուրդներն իրենց ուժերը միավորեցին ընդհանուր թշնամու դեմ հաջողությամբ պայքարելու համար։ Քաղաքացիական պատերազմը և ինտերվենցիան վերջանալուց հետո այդ հանրապետությունների ռազմական դաշինքը լրացվեց տնտեսական և դիվանագիտական դաշինքով։ Այդ միավորիչ շարժման ձգողական կենտրոնն ու կազմակերպող ուժը ՌՍՖՍՀ-ն էր։ Սովետական բոլոր հանրապետությունների ժողովուրդները ՌՍՖՍՀ-ի մեջ տեսնում էին ամենահզոր հենարանը սոցիալիստական վերափոխումների գործում և ներքին ու արտաքին հակահեղափոխության դեմ մղվող պայքարում։ ՌՍՖՍՀ կառավարությունը, Վ. Ի. Լենինի գլխավորությամբ, մեծագույն վստահություն և հեղինակություն էր վայելում սովետական բոլոր հանրապետությունների աշխատավորների շրջանում։ Սովետական բոլոր սուվերեն հանրապետությունները միասնական բազմազգ պետության մեջ միավորելու շարժումը, որը ծավալվեց 1922 թվականին, այդ հանրապետությունների ժողովուրդների արմատական շահերի ու նպատակների ընդհանրության արտահայտությունը եղավ։ Այն պայմանավորված էր նաև միացյալ ջանքերով ժողովրդական տնտեսությունը ամենաարագ կերպով վերականգնելու և կապիտալիստական թշնամական շրջապատման պայմաններում սովետական հանրապետությունների պաշտպանունակությունն ամրապնդելու խնդիրներով։*

*Լենինյան հանճարը այն ժամանակվա դժվարին պայմաններում հայտնագործեց Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ սովետական անկախ հանրապետությունների կամավոր ու իրավահավասար միավորման հիմունքներով միասնական բազմազգ պետություն կազմելու լավագույն ձևը։ ՍՍՀ Միության կազմավորման լենինյան գաղափարը, որը խանդավառությամբ ընդունվեց սովետական հանրապետությունների բոլոր ժողովուրդների կողմից, իրականացվեց 1922 թվականի դեկտեմբերի 30-ին կայացած ՍՍՀՄ սովետների I համագումարում։*

*ՍՍՀՄ-ի կազմավորումը նշանակում էր լենինյան ազգային քաղաքականության խոշոր հաղթանակը։ Դա վկայում էր, որ բանվոր դասակարգի ինտերնացիոնալիստական գաղափարներն ու ձգտումները տիրապետել էին սովետական երկրի բոլոր ժողովուրդների աշխատավորական լայն զանգվածների գիտակցությանը։*

*«ՍՍՀՄ-ի կազմավորումը ինտերնացիոնալիզմի հաղթահանդեսն էր, կոմունիստական կուսակցության, բանվոր դասակարգի, միութենական հանրապետությունների բոլոր աշխատավորների քաղաքական իմաստության դրսևորումը, որոնք իրենց ուժերի միավորումը որպես վճռական նախադրյալ էին դիտում հեղափոխության նպատակներն իրագործելու, նրա նվաճումները պաշտպանելու համար» (Լ. Ի. Բրեժնև,* Լենինյան կուրսով, *հ. 2, էջ 120—121)։*

*ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՄԵՋ առաջին անգամ ծագեց ու ամրապնդվեց նոր տիպի բազմազգ պետություն, որն արմատականորեն տարբերվում է բուրժուական բազմազգ պետություններից։*

*Ո՞րն է այդ երկու տիպի բազմազգ պետությունների արմատական տարբերությունը, նրանց հակադրությունը։ Ամենից առաջ հարկավոր է նշել, որ սովետական բազմազգ պետության տնտեսական բազիսը սոցիալիստական արտադրահարաբերություններն են, որոնք հիմնված են արտադրության գործիքների և միջոցների հասարակական սեփականության վրա, իսկ բուրժուական*

*[1] 1918 թվականի հունվարից այն հռչակվեց Ռուսաստանի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Հանրապետություն (ՌՍՖՍՀ)։*

բազմազգ պետությունների որոշիչ տնտեսական հիմքն են կապիտալիստական արտադրահարաբերությունները, որոնք հիմնված են մասնավոր սեփականության վրա։

Սովետական բազմազգ պետությունն իր ծագման պահից արտահայտում է բոլոր ազգությունների պրոլետարիատի և աշխատավորական զանգվածների արմատական շահերը (պրոլետարիատի դիկտատուրա), իսկ սոցիալիզմի լրիվ և վերջնական հաղթանակից հետո արտահայտում է ամբողջ բազմազգ սովետական ժողովրդի շահերը (համաժողովրդական պետություն), մինչդեռ բուրժուական բազմազգ պետություններն իրենցից ներկայացնում են բուրժուազիայի դիկտատուրան։

Սովետական բազմազգ պետությունը նոր պատմական տիպի ազգերի՝ սոցիալիստական ազգերի եղբայրական համագործակցություն է, իսկ բուրժուական բազմազգ պետությունները կազմված են բուրժուական ազգերից։

Սոցիալիստական ազգերը բուրժուական ազգերից արմատապես տարբերվում են իրենց դասակարգային կառուցվածքով, տնտեսական հիմքով, հոգևոր կերպարանքով և սոցիալ-քաղաքական ձգտումներով։ Այն դեպքում, երբ սոցիալիստական ազգերի մեջ առաջատար դերը կատարում են բանվոր դասակարգը և նրա ղեկավար ուժը՝ կոմունիստական կուսակցությունը, բուրժուական ազգերի մեջ տիրապետող ուժ են բուրժուազիան ու նրա քաղաքական կուսակցությունները։ Ի հակադրություն սովետական բազմազգ պետության, բուրժուական բազմազգ պետություններում, որոնք ծագել են ուժեղ ազգերի կողմից թույլ և փոքր ազգերի բռնի միավորման ու ենթարկման միջոցով, իշխում են ազգամիջյան անհավասարությունը, թշնամանքը, հակամարտությունները, ոչ լիիրավ ազգերի ու ռասաների խտրականությունը և այլն։ Այս պետությունները աչքի են ընկնում ծայրահեղ անկայունությամբ, ազգային հարցի չլուծվածությամբ և ազգամիջյան հակամարտությունների սրությամբ, կենտրոնախույս ուժերի, ճնշված ազգերի ու ազգությունների ազգային-ազատագրական պայքարի աճով։

Այդ կենտրոնախույս ուժերի կործանիչ ներգործության վառ և ակնառու օրինակ են խոշորագույն գաղութային կայսրությունների (ինչպես, օրինակ Բրիտանական կայսրության) քայքայումը և իմպերիալիզմի ամբողջ գաղութային սիստեմի փլուզումը։

Սովետական բազմազգ պետության կարևորագույն տարբերիչ առանձնահատկությունն այն է, որ այն նոր, սոցիալիստական տիպի ֆեդերացիա է։ Ի տարբերություն նացիոնալիզմի ու շովինիզմի ոգով տոգորված բուրժուական ֆեդերացիայի, սոցիալիստական ֆեդերացիան կառուցվում է պրոլետարական (սոցիալիստական) ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա։

Այն դեպքում, երբ սովետական սոցիալիստական ֆեդերացիան ծագել ու զարգանում է պետական շինարարության ազգային-տերիտորիալ սկզբունքի հիման վրա, բուրժուական ֆեդերացիան ազգային-տերիտորիալ սկզբունքը պարտադիր չի համարում։ Այսպես, ՍՍՀ Միությունը միավորում է 15 սուվերեն միութենական հանրապետություններ և դրանց կազմի մեջ մտնող 20 ինքնավար հանրապետություններ, 8 մարզեր ու 10 ազգային օկրուգներ։

Սովետական բոլոր ազգերը, ազգությունները, որոնք քիչ թե շատ համահավաք ապրում են որոշակի տերիտորիայում, ստեղծել են իրենց ազգային պետականությունը, որն այս կամ այն ձևով համապատասխանում է նրանց շահերին, օբյեկտիվ տվյալներին և զարգացման պայմաններին։ Պետականության ձևի ընտրությունը մեր երկրի ժողովուրդներն իրականացրել են միանգամայն ազատ, իրենց սեփական ցանկությամբ։

Իսկ բուրժուական ֆեդերատիվ պետություններն անխտիր կառուցվում են առանց հաշվի առնելու ազգային-տերիտորիալ հատկանիշը։ Իբրև օրինակ կարող է ծառայել ԱՄՆ-ը, որը բաղկացած է 48 նահանգներից, որոնցից յուրաքանչյուրն իրենից որևէ ազգի կամ ազգության ազգային պետականություն չի ներկայացնում։

Հարկավոր է նաև նշել, որ բուրժուական բազմազգ պետությունները գոյություն ունեն ո՛չ միայն ֆեդերատիվ, այլև ունիտար ձևով։ Ինքը՝ բուրժուա-



կան ֆեդերացիան, որը սովորաբար ծագել է պետական կարգի ապակենտրոնացման ձևով, ժամանակի ընթացքում աստիճանաբար վերածվում է ունիտարիզմի, բյուրոկրատական-միլիտարիստական ցենտրալիզմի (իբրև դրա օրինակ կարող է ծառայել նույն ԱՄՆ-ը)։ Ինչ ձևով էլ որ գոյություն ունենա բուրժուական բազմազգ պետությունը՝ ֆեդերատիվ թե ունիտար, նա բզկտվում է ներքին ազգամիջյան հակամարտություններից, քանի որ այդ պետություններն արտահայտում են տիրապետող ազգի բուրժուազիայի շահերն ու կամքը, ծառայում են որպես անիրավահավասար, ճնշված ազգերին ու ազգություններին ենթարկելու և ճնշելու գործիք։

Ինչպես արդեն վերը նշվեց, սովետական սոցիալիստական ֆեդերացիայում, սովետական սոցիալիստական բազմազգ պետությունում մարմնավորված են պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարներն ու սկզբունքները։ ՍՍՀ Միությունում մարմնավորված լենինյան այդ սկզբունքներն են.

բոլոր ազգերի, ազգությունների և ռասաների փաստական հավասարությունը.

միասնական ՍՍՀ Միության մեջ սովետական հանրապետությունների ու ազգերի միավորման կամավոր ու ազատ բնույթը.

բոլոր միավորված հանրապետությունների սուվերենությունը.

դեմոկրատական ցենտրալիզմը՝ որպես սովետական ազգերի և ազգությունների ինտերնացիոնալ և ազգային շահերի զուգակցման ձև՝ միասնական բազմազգ պետության շրջանակներում։

Քննության առնենք այդ սկզբունքների բովանդակությունը, նրանց դերն ու նշանակությունը բազմազգ սովետական պետության սիստեմում։

ԲՈԼՈՐ ԱԶԳԵՐԻ, ԲՈԼՈՐ ԱԶԳՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ու ռասաների հավասարության անվերապահ ընդունումը պրոլետարական ինտերնացիոնալիզմի կարևորագույն սկզբունքներից մեկն է։

Ազգերի իրավահավասարության սկզբունքը առաջին անգամ առաջադրել էր բուրժուական դեմոկրատիան դեռևս XVII—XVIII դարերում։ Սակայն ազգերի իրավահավասարության հարցի մեկնաբանումը նրանց կողմից կրում էր վերդասակարգային, ուտոպիական ու ձևական բնույթ։ Այն շրջանցում է ազգերի իրավահավասարության երաշխիքների, դրանք իրականում ապահովելու հարցը։ Վ. Ի. Լենինը գրել է. բուրժուական դեմոկրատիային, հենց ըստ նրա բնության, հատուկ է վերացական կամ ձևական հարցադրումը հավասարության մասին ընդհանրապես, ինչպես և ազգային հավասարության մասին (տե՛ս Երկեր, հ. 31, էջ 165)։

Ազգերի հավասարության նման մեկնաբանման բնորոշ գիծն է նրա անխզելի կապը բուրժուական նացիոնալիզմի, ազգային էգոիզմի և ազգային բացառիկության գաղափարախոսության հետ։ Ինչպիսի ձևերով էլ որ արտահայտվի ազգերի հավասարության գաղափարը բուրժուական դեմոկրատիայի պայմաններում, նրա գաղափարախոսների ելույթներում թե պաշտոնական ակտերում, այն այս կամ այն կերպ ենթարկվում է բուրժուական նացիոնալիզմի գաղափարախոսությանը և հարմարվում է նրան։ Բուրժուական դեմոկրատիան աշխարհում ոչ մի տեղ չի իրականացրել քիչ թե շատ հետևողական ազգային իրավահավասարություն։ Պատմությունը վկայում է, որ ազգերի ու ռասաների իսկական հավասարությունն անիրագործելի է կապիտալիզմի բազայի վրա։ «Կապիտալիզմի գոյությունն առանց ազգային ճնշման նույնպես աներևակայելի է, ինչպես աներևակայելի է սոցիալիզմի գոյությունն առանց ճնշված ազգերի ազատագրման, առանց ազգային ազատության»,— իր բանաձևում ընդգծել է ՌԿ(բ)Կ X համագումարը (ՍՄԿԿ-ն ...բանաձևերում և որոշումներում։ I մաս, Երևան, 1954, էջ 709)։ Միայն սոցիալիզմի բազայի վրա է հնարավոր բոլոր ազգերի, բոլոր ժողովուրդների ու ռասաների իսկական հավասարությունը հասարակական կյանքի բոլոր ոլորտներում։ Ազգային հարցում սովետական դեմոկրատիայի գլխավոր հատկանիշն է ժողովուրդների փաստական հավասարության իրականացումը պրակտիկայում՝ թույլ զարգացած ժողովուրդների քաղաքական, տնտեսական և կուլտուրական համակողմանի արագ զարգաց-

ման և նրանց հետամնացության վերացման միջոցով։ Մի քանի տասնյակ թույլ զարգացած ժողովուրդների դարավոր հետամնացությունը վերացնելու նպատակով Վ. Ի. Լենինի անմիջական ղեկավարությամբ կուսակցության մշակած միջոցառումների պլանը, որն իր կոնկրետ արտահայտությունը գտավ կուսակցության X և XII համագումարների որոշումներում, հաջողությամբ կատարվեց երկրի սոցիալիստական ինդուստրացման, գյուղատնտեսության կոլեկտիվացման և կուլտուրական հեղափոխության շնորհիվ։ Այդ բավական բարդ ու դժվարին սոցիալական պրոբլեմի լուծման գործում կարևորագույն դեր կատարեց միասնական սովետական պետության կազմավորումը։ Հենց ժողովուրդների ազգային սովետական պետականության ստեղծման և միասնական սոցիալիստական բազմազգ պետության մեջ նրանց միավորման շնորհիվ մեր երկրի բոլոր ազգությունների, այդ թվում և ամենահետամնաց ժողովուրդների աշխատավորների ամենալայն զանգվածները ներգրավվեցին նոր կյանքի ակտիվ կառուցման ոլորտը։ Մեր բազմազգ պետության ամբողջ սիստեմը չափազանց կարևոր գործոն հանդիսացավ սովետների երկրի բոլոր ժողովուրդների փաստացի հավասարություն ապահովելու համար։

Սովետական բոլոր հանրապետություններում ստեղծվեցին ժամանակակից ինդուստրիա, խոշոր մեքենայացված գյուղատնտեսություն, ազգային սոցիալիստական կուլտուրա։ Ավելի քան քառասուն ազգությունների համար առաջին անգամ ստեղծվեց գիր։ Մի ամբողջ շարք ժողովուրդներ սոցիալիզմին անցան՝ շրջանցելով կապիտալիստական ստադիան։ Այդ խնդրի լուծման գործում շատ մեծ դեր կատարեց այն անշահախնդիր եղբայրական օգնությունը, որ ռուս բանվոր դասակարգը, ռուս մեծ ժողովուրդը ցույց տվեց թույլ զարգացած ժողովուրդներին։

Սովետական սոցիալիստական ֆեդերացիան ապահովում է մեր երկրի բոլոր ազգերի և ազգությունների ազգային իրավահավասարությունը։

ՍՍՀ ՄԻՈՒԹՅՈՒՆՈՒՄ ՀԵՏԵՎՈՂԱԿԱՆՈՐԵՆ իրականացվել է բոլոր միութենական հանրապետությունների հավասարության սկզբունքը։ Վ. Ի. Լենինը բացառիկ կարևոր նշանակություն էր տալիս այդ սկզբունքի անշեղ պահպանմանը ՍՍՀՄ-ի պետական կառուցվածքում, միութենական հանրապետությունների փոխհարաբերություններում։ Լենինյան պատգամները ճշտորեն ու հետևողականորեն կատարվում են։ Յուրաքանչյուր միութենական հանրապետություն, անկախ նրա մեծությունից և բնակչության թվից, ունի միևնույն իրավունքները ՍՍՀ Միությունում։ Այդ բանը ամրագրված է ՍՍՀՄ Սահմանադրության մեջ, որի 13-րդ կետում ասված է. «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը միութենական պետություն է, որը կազմվել է իրավահավասար Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների կամավոր միավորման հիման վրա»։ Միութենական հանրապետությունների իրավահավասարության սկզբունքն ապահոված է ՍՍՀ Միության պետական իշխանության և պետական կառավարման բարձրագույն մարմինների բուն կառուցվածքում։

Դեռ 1923 թվականի ապրիլին, ՌԿ(բ)Կ XII համագումարը, Վ. Ի. Լենինի ցուցումներին համապատասխան, «Ազգային հարցի մասին» բանաձևում նշեց, որ ՍՍՀ Միության բարձրագույն մարմինները պետք է կառուցված լինեն այնպես, որ դրանք լրիվ արտացոլեն ո՛չ միայն Միության բոլոր ազգությունների ընդհանուր կարիքներն ու պահանջմունքները, այլև առանձին ազգությունների հատուկ կարիքներն ու պահանջմունքները։ «Ուստի, Միության գոյություն ունեցող կենտրոնական օրգանների հետ միասին, որոնք ամբողջ Միության աշխատավոր մասսաների ներկայացուցչությունն են, անկախ ազգությունից,— պետք է ստեղծվի ազգությունների ներկայացուցչության հատուկ օրգան՝ հավասարության հիմունքներով» (ՍՄԿԿ-ն... բանաձևերում և որոշումներում, մ. I, էջ 914—915)։ 1924 թվականին ընդունված ՍՍՀՄ Սահմանադրության համաձայն, պետական իշխանության բարձրագույն օրգանը՝ ՍՍՀ Միության Կենտգործկոմը, բաղկացած էր երկու պալատից՝ Միութենական սովետից և Ազգությունների սովետից։ Այժմ գործող 1936 թվականի Սահմանադրությամբ,



նույնպիսի երկու պալատից էլ բաղկացած է ՍՍՀՄ Գերագույն սովետը։ Միության սովետն ընտրվում երկրի բոլոր քաղաքացիների կողմից միասնական նորմայով, իսկ Ազգությունների սովետն ընտրվում է քաղաքացիների կողմից ըստ միութենական և ինքնավար հանրապետությունների, մարզերի ու ազգային օկրուգների՝ այդ կատեգորիաներից յուրաքանչյուրի համար հավասար նորմայով։ Ազգությունների սովետն ունի հավասար իրավունքներ Միության սովետի հետ։ Այս երկու պալատներն ունեն օրենսդրական միատեսակ նախաձեռնություն, իսկ բոլոր օրենքները հաստատված են համարվում միայն այն դեպքում, երբ դրանք ընդունվել են այդ պալատներից յուրաքանչյուրի ձայների մեծամասնությամբ (տե՛ս ՍՍՀՄ Սահմանադրության 35, 37, 38, 39-րդ հոդվածները)։

ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության Նախագահն ունի 15 տեղակալներ՝ մեկական տեղակալ յուրաքանչյուր միութենական հանրապետությունից։

ՍՍՀ Միության կառավարության՝ ՍՍՀՄ Մինիստրների սովետի կազմի մեջ մտնում են բոլոր միութենական հանրապետությունների Մինիստրների սովետների նախագահները։

ՍՍՀՄ Գերագույն դատարանի կազմի մեջ մտնում են բոլոր միութենական հանրապետությունների Գերագույն դատարանների նախագահները։

Բոլոր միութենական հանրապետությունները լայնորեն ներկայացված են նաև պետական կառավարման մի շարք այլ մարմիններում։

Այսպիսով, պետական իշխանության և կառավարման կազմակերպման բուն սիստեմը ապահովում է բոլոր հանրապետությունների և ազգությունների հատուկ շահերի զուգակցումը նրանց ընդհանուր ինտերնացիոնալ շահերի հետ։

Բոլոր միութենական հանրապետությունների հավասարության սկզբունքի հետ անխզելի կապի մեջ է միասնական ՍՍՀ Միության մեջ նրանց ազատ ու կամավոր միավորման սկզբունքը։

Վ. Ի. Լենինը դեռ 1919 թվականի դեկտեմբերին գրել է. «Մենք ազգերի կամավոր միություն ենք ուզում, այնպիսի միություն, որը ո՛չ մի բռնություն չթույլատրեր մի ազգի կողմից մյուսի վրա, այնպիսի միություն, որը հիմնված լիներ ամենալրիվ վստահության վրա, եղբայրական միասնության պարզ գիտակցության վրա, լիովին կամավոր համաձայնության վրա» (Երկեր, հ. 30, էջ 368)։ Այս սկզբունքի արտահայտությունն է այն փաստը, որ ՍՍՀ Միության կազմավորումը իրականացվեց բոլոր անկախ սովետական հանրապետությունների աշխատավորական զանգվածների կամքի ազատ արտահայտման շնորհիվ։

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱԶՄԱԶԳ ՊԵՏՈՒԹՅԱՆ մեջ մարմնավորված ինտերնացիոնալիզմի լենինյան կարևոր սկզբունքներից մեկը ՍՍՀ Միության մեջ միավորված բոլոր հանրապետությունների սուվերենությունն է։

Սովետական անկախ հանրապետությունները, ազատ ու կամովին, իրավահավասար հիմունքներով միավորվելով ՍՍՀ Միության մեջ, չկորցրին իրենց սուվերենությունը, ինչպես պնդում են Սովետական Միության ամեն կարգի թշնամիներն ու հակակոմունիզմի գաղափարախոսները։ ՍՍՀ Միությունը ստեղծվել է բոլոր միութենական հանրապետությունների սուվերենության հիման վրա։ Բնական է, որ, միավորվելով միասնական միութենական պետության մեջ, այդ հանրապետությունները միանգամայն կամավոր կերպով ՍՍՀ Միությանը հանձնեցին համամիութենական նշանակություն ունեցող մի շարք հարցերի վերաբերյալ իրավունքներն ու իրավասությունները։ Բայց տվյալ դեպքում հարկավոր է նկատի ունենալ, որ ՍՍՀ Միության այդ իրավունքների ու իրավասությունների իրագործմանը իրավահավասար մասնակցություն է ունենում յուրաքանչյուր սովետական հանրապետություն։ Սովետական հանրապետությունները ո՛չ միայն չկորցրին իրենց սուվերենությունը, այլև, ընդհակառակը, է՛լ ավելի ամրապնդեցին այն, կազմելով ՍՍՀ Միությունը։ Այդ հանրապետությունների սուվերենությունը չի կարելի դիտել սովետական հասարակարգում հաստատված նոր տիպի ազգամիջյան հարաբերություններից

կտրված, որոնք բնութագրվում են ժողովուրդների անքակտելի, եղբայրական բարեկամությամբ, նրանց համակողմանի համագործակցությամբ ու փոխօգնությամբ՝ հասարակական կյանքի բոլոր ոլորտներում: Սովետական հանրապետությունների սուվերենության չափանիշը նրանց անկախության ու ազատության այն երաշխիքն է, որ նրանց տալիս է ՍՍՀ Միության հզորությունը: «ՍՍՀՄ-ը պահպանում է միութենական հանրապետությունների սուվերեն իրավունքները»,— նշված է ՍՍՀՄ Սահմանադրության 15-րդ հոդվածում: Այդ սուվերենության անվիճելի արտահայտությունն է Սահմանադրության մեջ ամրագրված հանրապետություններից յուրաքանչյուրի իրավունքը՝ ազատ կերպով դուրս գալու ՍՍՀՄ-ից (տե՛ս հոդվ. 17):

ՍՍՀ Միությունը՝ որպես բազմազգ սոցիալիստական պետություն, կառուցված է դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքով:

Ի տարբերություն բյուրոկրատականորեն կենտրոնացված բուրժուական պետությունների, որոնք բացառում են ազգերի ազատությունը և նրանց իրավահավասար մասնակցությունը երկրի քաղաքական, տնտեսական և կուլտուրական կյանքին, դեմոկրատական ցենտրալիզմն ապահովում է բոլոր ազգությունների ազատ ու իրավահավասար զարգացումը, սովետական երկրի բոլոր ազգերի ու ազգությունների բարգավաճումն ու մերձեցումը:

Ցենտրալիզմը սովետական բազմազգ պետության սիստեմում օրգանապես ու անխզելիորեն կապված է սոցիալիստական դեմոկրատիզմի հետ: Կենտրոնացված ղեկավարումը առավել կարևոր, վճռական հարցերում, որոնք վերաբերում են բոլոր հանրապետությունների ու ժողովուրդների շահերին, ներդաշնակորեն զուգակցվում է լայն դեմոկրատիայի, սովետական հանրապետությունների ազատության, նախաձեռնության և ինքնուրույնության հետ՝ այդ հանրապետությունների ազգային ու տեղական առանձնահատկություններին և շահերին առնչվող բոլոր հարցերում: «Մենք կողմնակից ենք դեմոկրատական ցենտրալիզմին,— գրում էր Վ. Ի. Լենինը:— Եվ պետք է պարզ ըմբռնել, թե որքան շատ է տարբերվում դեմոկրատական ցենտրալիզմը, մի կողմից, բյուրոկրատական ցենտրալիզմից, մյուս կողմից՝ անարխիզմից» (Երկեր, հ. 27, էջ 243):

Դեմոկրատական ցենտրալիզմը հնարավորություն է ընձեռում բոլոր սովետական ազգերի ու հանրապետությունների ընդհանուր միութենական, ինտերնացիոնալ շահերը ամենալավագույն ձևով զուգակցելու նրանց ազգային շահերի հետ: ՍՍՀՄ-ի փորձը ցույց է տվել, որ այդ սկզբունքի հետևողական կիրառումը սովետական բազմազգ պետության սիստեմում լավագույն կերպով ապահովում է սովետական սոցիալիստական ազգերի ինտերնացիոնալ միասնությունը և սովետական բազմազգ պետության ամրությունը: Այդ սկզբունքի հետևողական կիրառումը եղել է և մնում է սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման գործում ձեռք բերված բոլոր հաջողությունների անհրաժեշտ պայմանը:

Այսպիսով, ՍՍՀ Միության մեջ սովետական հանրապետությունների միավորման կամավոր ու ազատ բնույթը, նրանց լրիվ իրավահավասարությունն ու սուվերենությունը, այդ պետության դեմոկրատականորեն կենտրոնացված կառուցվածքը առավել նպաստավոր պայմաններ են ապահովում սովետական ազգերի ու ազգությունների համակողմանի զարգացման համար, նպաստում են նրանց լիակատար փոխադարձ վստահության հաստատմանն ու մերձեցմանը, նրանց եղբայրական բարեկամության, սերտ համագործակցության և փոխօգնության ամրապնդմանը կոմունիզմի կառուցման գործում:

Սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարներն ու սկզբունքները մարմնավորված են ո՛չ միայն սովետական բազմազգ պետության սիստեմում, այլև սովետական սոցիալիստական հասարակարգի կյանքի բոլոր ոլորտներում: Կոմունիստական կուսակցության ղեկավարությունը, նրա հետևողական լենինյան ազգային քաղաքականությունը, որը տոգորված է ինտերնացիոնալիզմի գաղափարներով, կարևորագույն դեր են կատարում այդ գաղափարների կենսագործման մեջ, սովետական քաղաքացիների ինտերնացիոնալ դաստիարակության գործում:



Սովետական մարդիկ հասկանում են, որ մեր ամբողջ երկրի ու յուրաքանչյուր առանձին սովետական հանրապետության հաջողությունները, տնտեսական, կուլտուրական շինարարության մեջ և մյուս ոլորտներում, բոլոր ազգությունների բանվորների, գյուղացիների և մտավորականության բարեկամական համագործակցության և փոխօգնության արդյունք են:

«Մեր հանրապետության աշխատավորներն իրենց պատմական փորձից գիտեն, որ այն ամենը, ինչ կազմում է վերածնված սոցիալիստական Հայաստանի հպարտությունն ու պատիվը, մեր բոլոր նվաճումներն ու հաջողությունները ՍՄԿԿ-ի լենինյան իմաստուն ազգային քաղաքականության, սովետական ժողովուրդների եղբայրական համագործակցության, նրանց սերտ միասնության և փոխադարձ օգնության արգասիքն են»,— Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVI համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ ասաց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը: Առանձնապես մեծ է ռուս ժողովրդի՝ հայ ժողովրդին ցույց տված անշահախնդիր օգնության դերը նրա սոցիալական ու ազգային-ազատագրության, սոցիալիստական և կոմունիստական շինարարության գործում:

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲՈԼՈՐ ԱԶԳԵՐԻ և ազգությունների ինտերնացիոնալ միասնության ու համախմբվածության ամենավառ արտահայտությունն է պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի կազմավորումը ՍՍՀՄ-ում: Սովետական ժողովուրդն ինչ-որ մի նոր, միասնական ազգ չէ, որի մեջ իբր բոնի կերպով միաձուլվել են ՍՍՀՄ-ի բոլոր ազգերը, ինչպես այդ պնդում են բոլոր կարգի կեղծարարները հակակոմունիստների լագերից: Սովետական ժողովուրդն ավելի քան հարյուր սուվերեն սովետական ազգերի ու ազգությունների բազմազգ և ինտերնացիոնալ հանրություն է: Պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի կազմակերպմամբ է՛լ ավելի ամրապնդվեց սովետական բազմազգ պետության սոցիալական բազան:

Սովետական սոցիալիստական բոլոր ազգերի, ազգությունների եղբայրական բարեկամությունը, նրանց համակողմանի համագործակցությունն ու փոխօգնությունը, ինտերնացիոնալ համախմբվածությունը միասնական սովետական բազմազգ պետության մեջ ծառայում են որպես հզոր գործոն՝ կոմունիստական հասարակարգի ստեղծման վեհ խնդիրները հաջողությամբ լուծելու համար:

Կոմունիզմի ճանապարհին կարևոր ուղենիշ հանդիսացավ ՍՄԿԿ XXV համագումարը, որը հանրագումարի բերեց իններորդ հնգամյա պլանի կատարման գործում սովետական ժողովրդի հերոսական աշխատանքի արդյունքները և նշեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թթ. հիմնական ուղղությունները:

Մեր երկրի սոցիալական զարգացման, սովետական ժողովրդի էկոնոմիկայի և կուլտուրայի վերելքի վեհասքանչ ծրագիր է առաջադրված կուսակցության XXV համագումարում ընդունված ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները պատմական փաստաթղթում: «Տասներորդ հնգամյա պլանը, ինչպես որ բոլոր հնգամյա պլանները, կլինի մեր մեծ սոցիալիստական հայրենիքը կազմող բոլոր հանրապետությունների, ազգերի ու ազգությունների զարգացման ծրագիր,— նշեց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում:— Սովետական հասարակության տնտեսական և սոցիալական առաջընթացը Ռուսաստանի Ֆեդերացիայի, Ուկրաինայի և Ղազախստանի, Բելոռուսիայի և Մոլդավիայի, Միջին Ասիայի, Մերձբալթիկայի, Անդրկովկասի հանրապետությունների առաջընթացն է: Ամբողջ երկրի սահմաններում ստեղծված միասնական տնտեսական օրգանիզմը ժողովուրդների բարեկամության ու համագործակցության ամուր նյութական հիմքն է» (ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցումը..., էջ 75):

ԴԺՎԱՐ Է ԳԵՐԱԳՆԱՀԱՏԵԼ սովետական բազմազգ պետության, նրա մեջ մարմնավորված պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գա-

ղափարների ու սկզբունքների նշանակությունը կոմունիստական ֆորմացիայի ստեղծման գործում։

Սովետական բազմազգ պետությունը կոմունիզմի կառուցման հզոր գործիք է։ Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ նրա ծավալած կազմակերպչական գործունեությունն ապահովում է կոմունիստական շինարարության տնտեսական, սոցիալ-քաղաքական, կուլտուրական ու դաստիարակչական բոլոր խնդիրների իրականացումը՝ հասարակական զարգացման օբյեկտիվ օրենքների լրիվ հաշվառմամբ ու օգտագործմամբ։

Սովետական բազմազգ պետության ըստ ամենայնի ամրապնդումը և սովետական ազգերի ու ազգությունների ազգային պետականության կատարելագործումը մեր երկրում կոմունիզմի հաջող կառուցման պարտադիր պայմաններից ու գործոններից են։ Կատարելով Վ. Ի. Լենինի պատգամները, կոմունիստական կուսակցությունը միշտ էլ մեծ ուշադրություն է դարձրել և դարձնում է ՍՍՀՄ ամրապնդմանը։ ՍՄԿԿ ծրագրում նշված է ՍՍՀՄ հետագա ամրապնդման և սովետական երկրի ժողովուրդների ազգային պետականության ձևերի լրիվ օգտագործման ու կատարելագործման անհրաժեշտությունը։ Այդ բանը շեշտված է և՛ կուսակցության համագումարների նյութերում, և՛ կուսակցական այլ փաստաթղթերում։ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին նվիրված իր զեկուցման մեջ ասաց. «Լենինը մեզ պատգամել է աչքի լույսի պես պահպանել, ամրապնդել Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը։ Կուսակցությունը, ժողովուրդը սրբորեն կատարում են լենինյան այդ մեծ պատգամը» (Լ. Ի. Բրեժնև, Լենինի գործն ապրում է և հաղթանակում, էջ 39)։

Անցյալում առանձին գիտնականների արտահայտած մտքերը սովետական հանրապետությունների «ապազգայնացման», սովետական ֆեդերացիան ունիտար պետությունով փոխարինելու մասին ոչ մի գիտական հիմք չունեն, շեղվում են սոցիալիզմից կոմունիզմին անցնելու օբյեկտիվ օրինաչափությունից և հակասում են ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականությանը։ Բազմազգ երկրում կոմունիզմի շինարարության բազմապիսի խնդիրների հաջող լուծումն անհնար է առանց ազգերի քաղաքական, պետական կազմակերպման ազգային ձևերի, առանց սովետական բազմազգ պետության միասնական սիստեմի։ «Կոմունիստական շինարարության ընթացքում աճում է ՍՍՀՄ-ի նշանակությունը՝ որպես կուսակցության ծրագրային նպատակների, կոմունիստական իդեալների համար ազատ ժողովուրդների համատեղ պայքարի՝ պատմականորեն իրեն լիովին արդարացրած պետական ձևի» (ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի մասին։ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, էջ 23)։

Սովետական բազմազգ պետության մեջ ինտերնացիոնալիզմի լենինյան գաղափարների ու սկզբունքների մարմնավորման փորձն ունի համաշխարհային-պատմական նշանակություն։ Այն անվիճելիորեն ապացուցեց, որ հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմին, պրոլետարական ինտերնացիոնալիզմին, անձնուրաց ծառայությունը ժողովրդի շահերին և կոմունիզմի ընդհանուր գործին՝ ամբողջ աշխարհում կոմունիզմի իդեալների վերջնական հաղթանակի համար մղվող հաջող պայքարի պարտադիր պայմանն են։

# ԱԶԳԱՅԻՆ-ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԱՐԴԻ ՓՈՒԼԸ

**Հ. Գ. ԻՆՃԻԿՅԱՆ**

Պատմական գիտությունների դոկտոր

ԱԶԳԱՅԻՆ-ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ արդի հեղափոխական պրոցեսի հիմնական ուժերից մեկն է։ Համաշխարհային սոցիալիզմի, կոմունիստական ու բանվորական շարժման հետ միասին այն դարձել է միջազգային կյանքի կարևորագույն գործոնը։ Հիրավի, պատմական զարգացման ներկա փուլը հաստատում է Վ. Ի. Լենինի դրույթն այն մասին «...որ համաշխարհային հեղափոխության ապագա վճռական ճակատամարտերում երկրագնդի բնակչության մեծամասնության շարժումը, որ սկզբում ուղղված էր ազգային ազատագրության նպատակին, կշրջվի կապիտալիզմի և իմպերիալիզմի դեմ, և գուցե շատ ավելի մեծ հեղափոխական դեր կխաղա, քան մենք սպասում ենք» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 32, էջ 622)։

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, հետևելով Վ. Ի. Լենինի պատգամներին, իր միջազգային քաղաքականության մեջ միշտ պատշաճ տեղ է հատկացրել գաղութային ժողովուրդների ազատագրական պայքարին և հնարավորին չափ աջակցել, որպեսզի այն ընթանա ճիշտ ուղիով, հեղափոխական ընդհանուր վերելքին համընթաց։

Մեր կուսակցության XXIV համագումարը նշեց, որ հակաիմպերիալիստական պայքարը ստացել է ավելի կազմակերպված բնույթ և նոր ազատագրված երիտասարդ պետությունները դարձել են դրա առաջատար ուժը։ Ահա այդ պայմաններում «Գլխավորն այն է,— ընդգծեց հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը,— որ ազգային-ազատագրական պայքարը շատ երկրներում սկսել է վերաճել ինչպես ֆեոդալական, այնպես էլ կապիտալիստական շահագործողական հարաբերությունների դեմ ուղղված պայքարի (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 23)։ Անցած հինգ տարիներին ակնառու դարձան նշված որակական փոփոխությունները։ 1975 թվականը հանդիսացավ աշխարհում վերջին գաղութատիրական կայսրության՝ Պորտուգալիայի գաղութային տիրապետության կործանման տարի։ Դադարեց գոյություն ունենալ իմպերիալիզմի գաղութային հին սիստեմը։ Միաժամանակ ազատագրված կամ զարգացող երկրները հզոր պայքար ծավալեցին տնտեսական անկախության, իրենց ժողովուրդների սոցիալական ազատագրման համար։ Այսինքն՝ ազգային-ազատագրական շարժումը թևակոխեց իր զարգացման երկրորդ փուլը, երբ առաջին պլանի վրա են դրվում տնտեսական առաջընթացի խնդիրները, զարգացման ուղիների ընտրության հարցը։ Այդ պայմաններում բնականաբար սրվեցին ներքին սոցիալական ու դասակարգային հակասությունները, շարժման արտաքին՝ հակաիմպերիալիստական կողմերը որոշ իմաստով իրենց տեղը զիջեցին ներքին՝ հակակապիտալիստական տենդենցներին։ Սա զարգացման դիալեկտիկական օրինաչափություն էր, որի մասին նշել էր դեռևս Վ. Ի. Լենինը։

Վերջին 20 տարում ազատագրված երկրները, որոնց թիվն անցնում է 90-ից, իրենց զարգացման գործում հասել են զգալի հաջողությունների։ «Նրանց մեծամասնության մասին կարելի է որոշակիորեն ասել, որ նրանք իմպերիա-

լիզմի դեմ մղվող հակամարտության մեջ հարաճուն եռանդով պաշտպանում են իրենց քաղաքական ու տնտեսական իրավունքները, ձգտելով ամրապնդել իրենց անկախությունը, բարձրացնել իրենց ժողովուրդների սոցիալական, տնտեսական և կուլտուրական զարգացման մակարդակը» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 19)։ Հիշյալ խնդիրների իրագործման խորությունն ու հետևողականությունը պայմանավորված են սոցիալ-քաղաքական իրավիճակով և տվյալ երկրում տիրող ռեժիմով։ Այս տեսակետից զարգացող երկրները կարելի է պայմանականորեն բաժանել երեք խմբերի, որոնք, անշուշտ, ենթակա են այս կամ այն փոփոխության։

Առաջին խմբին պատկանում են սոցիալիստական օրիենտացիայի երկրները։ Այս երկրներում համարյա թե վերացված է ֆեոդալական հողատիրությունը, ստեղծվել է տնտեսության պետական սեկտոր, ամբողջապես կամ մասամբ ազգայնացվել է օտար կապիտալը, բարեկամական փոխհարաբերություններ են հաստատվել սոցիալիստական երկրների հետ։ Դրանք հետզհետե ընդգրկվում են աշխատանքի համաշխարհային սոցիալիստական բաժանման ոլորտը։ Տնտեսության մեջ գերիշխում են մանր և միջին սեփականատերերը, կոոպերացման և կոլեկտիվացման փորձեր են արվում գյուղատնտեսության, արհեստների և առևտրի բնագավառներում։

Նշված տեղաշարժերն ավելի ցայտուն են Ալժիրում, Բիրմայում, Իրաքում, Եմենի Ժողովրդա-դեմոկրատական Հանրապետությունում և Աֆրիկայի մի շարք երկրներում, որտեղ բարեփոխումները իրականացվում են՝ ելնելով պատմական ու ազգային յուրահատկություններից։ Փաստորեն այստեղ խոսքը վերաբերում է զարգացման կապիտալիստական փուլը շրջանցելուն և առանց դրան սոցիալիզմին անցնելուն։ Այդ առումով այս երկրների համար չափազանց ուսանելի է Սովետական Միության ծայրամասերի և Մոնղոլիայի Ժողովրդական Հանրապետության անցած ուղին, սոցիալիստական տնտեսության կառուցման փորձը, որը և ուսումնասիրվում ու օգտագործվում է բավական հետևողական կերպով։

Երկրների երկրորդ խումբը, որը զարգանում է կապիտալիզմի ուղիով, չափազանց խայտաբղետ է։ Մի կողմից կարելի է նշել այնպիսի երկրներ, որոնցում կապիտալիզմն անցել է զգալի ճանապարհ, ձևավորվել են բուրժուազիան ու պրոլետարիատը (Հնդկաստան, Շրի Լանկա, Սինգապուր, Իրան, Մարոկկո և այլն), մյուս կողմից՝ հասարակածային Աֆրիկայի ու Կենտրոնական Ասիայի մի շարք երկրներ (Գաբոն, Լիբերիա, Փղոսկրի Ափ, Նեպալ և այլն), որտեղ նոր են միայն գոյանում ժամանակակից հասարակության դասակարգային ուժերն ու հարաբերությունները։

Զարգացող երկրների ամենամեծ խումբը կազմում են նրանք, որոնք դեռևս հստակորեն չեն կողմնորոշվել իրենց ուղու ընտրության հարցում։ Այդ երկրներում արդեն ծայր է առել և հետզհետե խորանում է պայքարը՝ մի կողմից առաջադեմ, հեղափոխական-դեմոկրատական, հակաիմպերիալիստական, մյուս կողմից տեղական ռեակցիայի՝ հողատերերի, ցեղային վերնախավերի, բյուրոկրատական կապիտալի ներկայացուցիչների և պրոկապիտալիստական այլ ուժերի միջև։ Ներքին այդ պայքարը պայմանավորված է մեծ մասամբ երրորդ խմբի երկրների զարգացման մակարդակով։ Այստեղ կան այնպիսի ժողովուրդներ, որոնք ապրում են համայնքա-ցեղային կարգերի քայքայման պրոցես, և կան այնպիսիները, որոնք արդեն գտնվում են բուրժուական հարաբերությունների շրջանում։ Սակայն կապիտալիստական կացութաձևը նշված երկրներում դեռևս տիրապետող չէ։ Ձևավորվող ազգային բուրժուազիան, հենվելով ֆեոդալական տարրերի և ցեղային վերնախավերի վրա, ունենալով մոնոպոլիստական կապիտալի աջակցությունը, պայքարում է բանվոր դասակարգի և հեղափոխական-դեմոկրատների դեմ, որոնք ջանում են դուրս բերել երկիրը կապիտալիզմի ոլորտից։

Թվարկված երեք խմբերն էլ ապրում են յուրահատուկ անցման շրջան և իրարից անջրպետված չեն։ Հաճախ է այս կամ այն երկիրը, ելնելով ներքին



սոցիալ-տնտեսական պատճառներից, կամ ներքին ու արտաքին քաղաքական իրավիճակներից, անցնում մի խմբից մյուսը։ Բնորոշ է Եգիպտոսի օրինակը։ Նրա տիրող շրջանները վերջերս հայտարարեցին «բաց դռների» պրոիմպերիալիստական քաղաքականություն։ Մյուս կողմից, կարելի է նշել Անգոլայի, Մադագասկարի և այլ երկրների օրինակները, որոնք վերջերս հայտնեցին սոցիալիստական կողմնորոշման մասին իրենց մտադրությունը։ Ելույթ ունենալով ՄՊԼԱ-ի ակտիվիստների դասընթացների առաջին շրջանավարտների առջև ս. թ. մայիսի կեսերին, Անգոլայի պրեզիդենտ Ա. Նետոն ասաց. «Սոցիալիստական ուղու ընդունումը մեր ժողովրդի կողմից մեզ վրա պարտականություններ է դնում միջազգային առումով։Ընթանալով սոցիալիզմի ուղիով, մենք, բնականաբար, հարուցում ենք կապիտալիստական աշխարհի ատելությունը և, նույնպես բնականաբար, մենք զգում ենք սոցիալիստական երկրների հետ միանալու անհրաժեշտությունը։ Այդ է պահանջում տրամաբանությունը, այդ է պահանջում պատմությունը» («Правда», 30/V, 1976 г.)։

ՍՄԿԿ XXV համագումարը, հանգամանորեն վերլուծելով «դասակարգային ուժերի սահմանազատման բարդ պրոցեսի» և դասակարգային պայքարի աճի հետ առնչվող հարցերը, հատուկ ուշադրություն նվիրեց զարգացող երկրներում տեղի ունեցող փոփոխությունների գլխավոր ուղղություններին։ «Դրանք են,— ասաց Լ. Ի. Բրեժնևը,— արդյունաբերության զարգացման մեջ ծանրության կենտրոնի փոխադրումը պետական սեկտոր, ֆեոդալական հողատիրության վերացումը, օտարերկրյա ձեռնարկությունների ազգայնացումը... Մի խոսքով, հակառակ դժվարություններին, աշխարհի այդ մասում առաջադիմական խոր փոփոխություններ են կատարվում։ Դա, իհարկե, պատմական կարևորություն ունեցող պրոցես է» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը..., էջ 18)։

Համարյա բոլոր զարգացող երկրների ամենախոշոր նվաճումը շարժման ժամանակակից փուլում սեփական արդյունաբերություն ստեղծելու ուղղությամբ կատարած քայլերն են։ Նշելով, որ անհամաչափ զարգացման օրենքը չափազանց ցայտուն կերպով երևան է գալիս հատկապես «երրորդ աշխարհում», բոլոր արևելագետները, այնուամենայնիվ, գտնում են, որ ամենուր ակներև է ընդհանուր առաջընթացը։ Ճիշտ է, սակայն, որ այն դեռևս այնպիսին չէ, որ կրճատի զարգացող և զարգացած երկրների միջև եղած տարածությունը։ Ավելին, վերջին տարիների տնտեսական ճգնաժամը, հարաճուն դևալվացիան, գների տատանումները, անբերրիությունը, երաշտը, հումքի և սննդամթերքի թանկացումները ավելի ծանր են ազդում առաջինների, քան երկրորդների վրա։ Այսպես, զարգացող երկրներում ազգային համախառն արտադրանքը զարգացած երկրների արտադրանքից 1953 թվականին պակաս էր 8,4 անգամ, իսկ 20 տարի հետո, 1973 թվականին՝ 16 անգամ։ Գաղութային ժամանակաշրջանի ժառանգությունը դեռևս այնքան զգալի է, որ միջին տվյալներով ազատագրված ցանկացած խոշոր երկրի կուտակման ֆոնդը հազիվ հավասար է տնտեսապես զարգացած եվրոպական որևէ երկրի անցյալ դարի 50-ական թվականների կուտակման ֆոնդին։ Ավելի կոնկրետ, այն կազմում է համախառն արտադրանքի 17 տոկոսից քիչ ավելին, մինչդեռ զարգացած երկրներում այդ ցուցանիշը հասնում է մոտ 50 տոկոսի։ Ահա այս պատճառով էլ կուտակումների կամ կապիտալ ներդրումների զգալի մասը կատարվում է արտաքին աղբյուրների հաշվին։

Այնուամենայնիվ, հաղթահարելով այդ դժվարությունները, զարգացող երկրները պայքար են մղում իրենց տնտեսական անկախությունն ապահովելու համար։ Կյանքի փորձը նրանց համոզում է, որ այդ ճանապարհին լավագույն միջոցը տնտեսության պետական սեկտորի ստեղծումն ու ամրապնդումն է։ Հատկապես մեծ է այդ սեկտորի դերն արդյունաբերության մեջ։

Բերենք մի քանի օրինակներ։ Ազգայնացնելով նավթային օտար ընկերությունների հարստությունը, Իրաքի կառավարությունն իր ձեռքում կենտրոնացրեց ամբողջ նավթի արտադրությունը, մշակումը և արտահանումը։ «Սև ոսկին» դարձավ այն լծակը, որը վերջին տարիներին օգտագործվում է փոխելու երկրի տնտեսության ստրուկտուրան և լրջորեն ազդում է նրա քաղաքական

զարգացման վրա։ Վերջին հինգ տարում ազգային համախառն արտադրանքն աճում է տարեկան 15—16 տոկոսով։ Նավթային եկամուտների 70 տոկոսը տրամադրվում է տնտեսության զարգացմանը։ Կոնգոյի Ժողովրդական Հանրապետությունում և սոցիալիստական օրիենտացիայի բազմաթիվ այլ երկրներում պետականացվել են երկաթուղային, ջրային, օդային հաղորդակցության բոլոր միջոցները, էլեկտրաէներգիայի, ցեմենտի, շաքարի արտադրությունը։ Սոմալիի արդյունաբերական արտադրության 75 տոկոսը տալիս է պետական սեկտորը։

«Երրորդ աշխարհի» ամենամեծ երկրում՝ Հնդկաստանում, պետական սեկտորի խոշոր դերի մասին է վկայում տնտեսական զարգացման ծրագիրը, որի կենսագործումն իր հսկողության տակ է վերցրել Ինդիրա Գանդիի կառավարությունը։

ՍՄԿԿ XXV համագումարում Հնդկաստանի կոմկուսի ազգային խորհրդի նախագահ Շ. Ա. Դանգեն իր ելույթում ընդգծեց, որ երկրի կառավարությունը ձեռնարկել է խոշոր պրոգրեսիվ միջոցառումներ։ «Ազգայնացվել են բանկային գործը, ապահովագրությունը,ածխային արդյունաբերությունը, մի շարք տեքստիլ գործարաններ։ Պետության հսկողության տակ է նավթի արտադրությունը։ Սահմանափակվել են նախկին ֆեոդալական կառավարիչների ու իշխանների իրավունքները, թոշակները, ոչնչացվել արտոնությունները, հաճախ բռնագրավվել նաև նրանց կուտակած հարստություններն ու զարդերը» (Приветствия XXV съезду КПСС, М., 1976, стр. 159—160)։

Նույնպիսի կարևոր դեր է կատարում պետական սեկտորը Բիրմայում, Ալժիրում, Հաբեշստանում և այլ երկրներում, որտեղ այն դարձել է որոշիչ ուժ սոցիալ-տնտեսական և քաղաքական զարգացման բնագավառներում։ Անհրաժեշտ է նշել նաև, որ ռեակցիոն ռեժիմներ ունեցող մի շարք երկրներում պետական սեկտորը հաճախ չի ծառայում նրանց տնտեսական անկախության ամրապնդման գործին, այլ հանդիսանում է հարստանալու և անձնական կուտակումների միջոց։

Դեռևս տասնյակ տարիներ առաջ Ֆ. Էնգելսը զգուշացրել է. «Չպետք է մոռանալ, որ արդյունաբերական և առևտրական ֆունկցիաների ամեն մի հանձնում պետության ձեռքը մեր օրերում կարող է ունենալ երկակի իմաստ և երկակի արդյունք, նայած պայմաններին, կամ ռեակցիոն՝ մի քայլ հետ դեպի միջնադարը, կամ պրոգրեսիվ՝ մի քայլ առաջ դեպի կոմունիզմը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 34, стр. 20)։

Արևելքի երկրների համար չափազանց կարևոր է հողային հարցը, քանի որ ազգային եկամտի մեծագույն մասը դեռ երկար ժամանակ տալու է գյուղատնտեսությունը։ Այդ հարցի լուծման եղանակն ու ծավալը միշտ պայմանավորված են տիրող քաղաքական ռեժիմով։ Հաբեշստանի հեղափոխությունից անցել է ընդամենը երկու տարի, սակայն երկրի պրոգրեսիվ տարրերը, զինված ուժերի հեղափոխական-դեմոկրատական ներկայացուցիչների ղեկավարությամբ, արդեն իրականացրել են մի շարք չափազանց կարևոր բարեփոխումներ։ Հողի ազգայնացումը ոչնչացրեց հողատերերի կողմից գյուղացիների շահագործումը, իսկ անցյալ տարվա գարնանը կատարված ագրարային ռեֆորմը բոլոր խոշոր հողատերերին զրկեց իրենց հողերից։ Կարգ է սահմանվել, որ հողի նոր սեփականատերը իրավունք չունի այն վաճառելու, փոխելու, հանձնելու վարձով կամ գրավ դնելու, օգտագործելու վարձու ուժ։ Գյուղացիներն արդեն ստեղծել են մի քանի հազար միություններ, որտեղ նրանք կոլեկտիվ ուժերով մշակում են հողը։

Ալժիրում, սկսած 1975 թ., գյուղական ընտանիքներին բաժանվեցին մեկ միլիոն հեկտարից ավելի հողատարածություններ և այժմ նախապատրաստվում է 12 մլն հեկտար հողերի ու 8 մլն գլուխ անասունների բաժանում, որը կնպաստի 170 հազար քոչվոր ընտանիքների նստակյաց կյանքի անցնելուն (տե՛ս Народы Азии и Африки, № 1, 1976, стр. 7—17)։

Ինչպես նշեց ՍՄԿԿ XXV համագումարը, զարգացող երկրների համար կենսական նշանակություն ունեցող խնդիրներից մեկը ազգային կադրերի պատ-



րաստման գործն է։ Սեփական մասնագետներ ունենալու անհրաժեշտությունն ակներև դարձավ հենց ազատագրման առաջին օրերին, երբ իրենց աշխատանքները լքեցին ու եվրոպական երկրներ վերադարձան հազարավոր ու տասնյակ հազարավոր օտարերկրացի մասնագետներ։ Վերջիններիս կարիքը դեռևս զգացվում է բազմաթիվ բնագավառներում։ Բավական է նշել, որ աֆրիկյան համալսարանների դասախոսների կեսից ավելին տեղացիներ չեն։ Սա դեռ բոլորը չէ։ Ազատագրումից հետո հրամայական պահանջ դարձավ ժողովրդական լուսավորության, առողջապահության և պետական ապարատի բազմաթիվ օղակներ կադրերով ապահովելու խնդիրը։ Օրենքներ ընդունվեցին անգրագիտության վերացման և սկզբնական պարտադիր կրթության վերաբերյալ։ Յունեսկո-ի տվյալների համաձայն, ազատագրված երկրներում առ այսօր ուսումնական ցանցում ընդգրկված է դպրոցահասակ երեխաների 50—90 տոկոսը։ Մյուս կողմից վիճակագրությունը ցույց է տալիս, որ բարձրագույն ուսումնական հաստատությունների և նրանց ուսանողների թիվն աճում է ավելի արագ հենց զարգացող երկրներում։ Սակայն եթե Եվրոպայում, ԱՄՆ-ում, միջին տվյալներով բուհ ընդունված 20 ուսանողից ավարտում և բուհական դիպլոմ է ստանում մեկը, ապա համապատասխան թվերը կազմում են՝ Ասիայում 38 : 1, արաբական երկրներում՝ 45 : 1, իսկ Աֆրիկայում՝ 90 : 1 հարաբերությունը։ (Азия и Африка сегодня, № 5, 1976, стр. 50)։ Զարգացող երկրների տնտեսությունն այժմ սուր կարիք ունի միջին օղակի մասնագետների, որոնց պատրաստումը, ի տարբերություն բարձրորակ մասնագետների, մեծ մասամբ կատարվում է տեղում։

Թվարկված և այլ կենսական պրոբլեմների լուծումը մեծապես պայմանավորված է զարգացող երկրների արտաքին քաղաքականությամբ։ Բնորոշելով այն, Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում նշեց. «Նկատելիորեն ակտիվացել է զարգացող երկրների արտաքին քաղաքականությունը։ Դա դրսևորվում է շատ ուղղություններում՝ չմիանալու շարժման քաղաքական գծում, աֆրիկյան միասնության կազմակերպության, զարգացող երկրների կողմից ստեղծված տնտեսական տարբեր միավորումների գործունեության մեջ» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը..., էջ 20)։

**1960—70-ական թթ. տեղի ունեցան չմիացած երկրների 4 կոնֆերանսներ։**

Այս տարվա օգոստոսի 16—20-ը Շրի Լանկայի մայրաքաղաք Կոլոմբոյում տեղի ունեցավ չմիացած երկրների պետական և կառավարական ղեկավար գործիչների 5-րդ կոնֆերանսը։ Նրա աշխատանքներին մասնակցեցին 86 պատգամավորություններ, չհաշված բազմաթիվ երկրների ու կազմակերպությունների դիտորդներին և հյուրերին։ Ողջունելով կոնֆերանսը, Լ. Ի. Բրեժնևը հույս հայտնեց, որ այն կրկին անգամ կհաստատի մասնակիցների վճռականությունը «Նպատակասլաց կերպով պայքարելու իմպերիալիզմի, պատերազմի և ագրեսիայի դեմ, գաղութատիրության ու նեոգաղութատիրության դեմ, կօգնի հանուն խաղաղության, անկախության, ազատության ու ժողովուրդների առաջընթացի հանդես եկող ուժերի հետագա համախմբմանը»։

Ինչպես ցույց են տալիս Կոլոմբոյի կոնֆերանսի որոշումներն ու նյութերը, մասնավորապես քաղաքական ու տնտեսական դեկլարացիաները, չմիացած պետությունները իրապես դարձել են միջազգային լարվածության թուլացման, հակաիմպերիալիստական ճակատի կարևոր ուժերից մեկը։ Կոնֆերանսի ուշադրության կենտրոնում էին գտնվում գաղութատիրության, ռասիզմի, սիոնիզմի, իմպերիալիստական տիրապետության բոլոր ձևերի ոչնչացման և խաղաղ գոյակցության, համագործակցության ու իրավահավասարության կենսական անհրաժեշտություն դարձած հարցերը։ Ինչպես նշեց իր ելույթում Ինդիրա Գանդին, ազատագրված ժողովուրդներն այլևս «մտադիր չեն հանդուրժելու կախվածության և անիրավահավասարության արդի վիճակը»։

Ազատագրված երկրների միջազգային ակտիվության աճի կարևոր ցուցանիշներից մեկն էլ աֆրիկյան միասնության կազմակերպության ստեղծումն էր և նրա ծավալած ակտիվ գործունեությունը։ 13 տարվա ընթացքում կազմակերպության անդամների թիվը 30-ից հասավ 47-ի։ Աֆրիկայի բոլոր ներքին ու

միջազգային խնդիրները նախնական քննարկման են դրվում ԱՄԿ-ի նիստերում: Այն կատարում է միջաֆրիկյան տնտեսական, քաղաքական, ռազմական, կուլտուրական խնդիրներին լուծում տվող հիմնական օղակի պատվավոր դերը: Ստեղծվել և գործում են միջազգային հասարակական բազմաթիվ կազմակերպություններ, որոնցից ամենահեղինակավոր և գործունը Ասիայի ու Աֆրիկայի ժողովուրդների համերաշխության կազմակերպությունն է, որի գոյության 20-ամյակը նշվում է այս տարի: Կենսական նշանակություն են ստացել «երրորդ աշխարհի» երկրների տնտեսական միավորումները, զանազան տիպի ընկերություններն ու կազմակերպությունները, որոնք դարձել են այդ երկրների տնտեսական շահերը և զարգացման խնդիրները լուծող գործոններ:

Չափազանց նշանակալից երևույթ էր անցյալ տարվա հոկտեմբերին Լատինական Ամերիկայի 25 երկրների (ներառյալ նաև սոցիալիստական Կուբան) կազմակերպած տնտեսական միավորումը, որն իրենք անվանել են «Լատինաամերիկյան տնտեսական սիստեմ»:

Զարգացող երկրների հասունության արտահայտությունն է 1973 թ. սեպտեմբերին ձևավորված նավթ արտադրող երկրների միջազգային կազմակերպությունը (ՕՊԵԿ): Այն արդյունք է նավթի ազգայնացման քաղաքականության և ներկայումս օգնում է հենց ազատագրված երկրների զարգացմանը: 1974 թ. ՕՊԵԿ-ի անդամ երկրների եկամուտները կազմեցին ավելի քան 110 միլիարդ դոլար, որից 800 միլիոնը դրվել է զարգացող երկրների «օգնության ֆոնդի» տրամադրության տակ: Եկամտի ընդհանուր գումարի $^{2}/_{3}$-ը պատկանում էր արաբական երկրներին:

Քաղաքական և տնտեսական առաջընթացի տրամաբանությունը, այսպիսով, հանգեցրեց այն բանին, որ վերջին տարիներս «երրորդ աշխարհի» երկրները հետևողական կերպով պահանջում են վերանայել արևմուտքի հետ տնտեսական կապերի սիստեմը և վերացնել անհավասար փոխհարաբերությունները:

«Այժմ արդեն պարզ է,— նշեց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում,— որ համաշխարհային դասակարգային ուժերի ներկա հարաբերակցության պայմաններում ազատագրված երկրները լիովին կարող են հակադրվել իմպերիալիստական թելադրանքին, հասնել արդարացի, այսինքն՝ իրավահավասար տնտեսական հարաբերությունների: Պարզ է նաև մի այլ բան՝ ժողովուրդների խաղաղության և անվտանգության ընդհանուր պայքարի մեջ այդ երկրների՝ այժմ արդեն նշանակալի ավանդը լիովին կարող է է՛լ ավելի ծանրակշիռ դառնալ» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը..., էջ 20):

Զարգացող երկրների հաջող առաջընթացին մեծ չափով նպաստեցին միջազգային լարվածության թուլացումը, Սովետական Միության և ամբողջ սոցիալիզմի լագերի անշահախնդիր օգնությունը: Վիետնամի սոցիալիստական Հանրապետության աշխատավորների կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար Լե Զուանը ՍՄԿԿ XXV համագումարում ունեցած իր ելույթում ընդգծեց, որ Սովետական Միությունը «...պատկանել և պատկանում է ժամանակակից հեղափոխական ուժերի հզորության ամրապնդման գործում չափազանց մեծ դեր, նա օգնում է ազգային-ազատագրական շարժմանը, դեմոկրատիայի և սոցիալական պրոգրեսի համար մղվող պայքարին, ձախողում է իմպերիալիզմի հրձիգային նկրտումները, պաշտպանում է խաղաղությունը Եվրոպայում և ամբողջ աշխարհում» (Приветствия XXV съезду КПСС, стр. 18): Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների արտաքին քաղաքականության կենարար ազդեցությունը դժվար է գերագնահատել: Ինչպես մեր երկրում գտնված օրերին նշեց Մոզամբիկի ժողովրդա-դեմոկրատական Հանրապետության պրեզիդենտ Ս. Մ. Մաշելը, «Սոցիալիստական երկրների գոյության սոսկ փաստը, մարդկության մեծածավալ և ազատ գոտու գոյությունը միայն հանդիսանում է ժողովուրդների և ճնշված դասակարգերի պայքարի ստրատեգիական թիկունքը» («Правда», 17/V, 1976 г.):

ՍՄԿԿ XXV համագումարի ընդունած ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները փաստա-



թղթում մեկ անգամ ևս հաստատվում է կուսակցության և կառավարության վճռականությունը՝ շարունակել «Ընդլայնել և ամրապնդել ՍՍՀՄ տնտեսական և գիտատեխնիկական կապերը զարգացող երկրների հետ՝ երկարաժամկետ, հաստատուն և փոխշահավետ հիման վրա՝ նպաստելու այդ երկրների էկոնոմիկայի զարգացմանը ու նրանց տնտեսական անկախության ամրապնդմանը, գիտատեխնիկական պոտենցիալի աճին» (էջ 124—125):

Սովետական Միությունը 1955 թվականին տնտեսական և գիտատեխնիկական օգնության համաձայնագրեր ուներ զարգացող երկրներից միայն երկուսի հետ, իսկ անցյալ տարի՝ արդեն 52-ի հետ: Այդ համաձայնագրերի կենսագործումն արտահայտվում է մոտ 900 տարբեր օբյեկտների կառուցման մեջ, որոնցից 480-ը հանձնված է շահագործման:

Մեր երկրի 37 քաղաքների 80 բուհերում սովորում են ավելի քան 80 երկրներից եկած երիտասարդներ: Հիմնականում Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրների համար կադրեր պատրաստելու նպատակով 1960 թվականին Մոսկվայում հիմնվեց աշխարհում առաջին բուհը՝ Պատրիս Լումումբայի անվան համալսարանը: Այժմ այնտեղ սովորում է մոտ 5.000 երիտասարդ:

«Սովետական Միությունը շահագրգռված է,— ՍՄԿԿ XXV համագումարում ասաց Ա. Ն. Կոսիգինը,— որ զարգացող երկրների հետ իր համագործակցությունը աշխատանքի կայուն և փոխշահավետ բաժանման բնույթ կրի: Այդ նպատակներին են համապատասխանում տնտեսական համագործակցության վերաբերյալ վերջին տարիներս Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի մի շարք երկրների հետ կնքված երկարաժամկետ պայմանագրերն ու համաձայնագրերը: Մենք զարգացող երկրների հետ համագործակցությունը կընդլայնենք դեմոկրատական և արդարացի հիմունքներով, կնպաստենք նրանց տնտեսական ինքնուրույնության ամրապնդմանը» (Ա. Ն. Կոսիգին, ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները, էջ 43—44):

Նույն սկզբունքներով զարգացող երկրների հետ համագործակցում են սոցիալիստական մյուս պետությունները: Չափազանց կարևոր է, որ Տնտեսական փոխօգնության խորհուրդն արդեն գործնական փոխհարաբերություններ է հաստատել Ասիայի և Աֆրիկայի մի շարք երկրների հետ:

Ինչպես նշել է Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում, ազատագրված պետությունների հետ «...մեզ միավորում է խորին նվիրվածությունը խաղաղությանն ու ազատությանը, նողկանքը ագրեսիայի և գերիշխանության բոլոր ձևերի նկատմամբ, մի երկրի կողմից մյուսի շահագործման նկատմամբ: Արմատական ձգտումների այդ ընդհանրությունն այն հարուստ ու բեղմնավոր հողն է, որի վրա այսուհետ ևս կամրապնդվի ու կծաղկի մեր բարեկամությունը» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը..., էջ 24—25):

Այդ հողի վրա հիմնված համագործակցությունը տվել և տալիս է իր հիանալի արդյունքները: Ամենակարևորն այն է, որ այլևս գոյություն չունի իմպերիալիզմի գաղութատիրության սիստեմը, իսկ իրենց ազատությունը ձեռք բերած երկրներն ու ժողովուրդները համաշխարհային սոցիալիզմի, կոմունիստական ու բանվորական շարժման հետ միասին կազմում են խաղաղության, դեմոկրատիայի ու համամարդկային պրոգրեսի վճռական գործոնը:

Երկրորդ կարևոր երևույթն այն է, որ, չնայած իմպերիալիստների գործադրած ջանքերին, ազատագրված երկրները չմնացին իրենց նախկին մետրոպոլիաների ազդեցության ոլորտներում: Նույնիսկ զինված ուժով իմպերիալիստները չկարողացան պահպանել իրենց դիրքերը Հնդկաչինում, ընկճել արաբական ժողովուրդների կամքը, կանխել խոր սոցիալ-տնտեսական տեղաշարժերը Հնդկական թերակղզում, Աֆրիկայում, Լատինական Ամերիկայում: Իմպերիալիզմի հենարանը համարվող մի շարք երկրներում ևս խարխլվում են նրա հիմքերը: Այս բոլորի հետևանքով խորացել է իմպերիալիզմի ընդհանուր ճգնաժամը և սրվել են հակասությունները կապիտալիստական խոշոր պետությունների միջև:

# ՄԱՍՆԱԳԵՏՆԵՐԻ ՊԱՏՐԱՍՏՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

**Վ. Ա. ԿՈՒՐԵՂՅԱՆ**

Տնտեսագիտության թեկնածու

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ զարգացման արդի փուլը բնութագրվում է գիտատեխնիկական առաջընթացի արագ տեմպերով, որոնք պայմանավորում են հանրային արտադրության արդյունավետության հետագա շեշտակի բարձրացումը։

Հանրային արտադրության արդյունավետության բարձրացման և երկրի տնտեսական վերելքի տեմպերի արագացման գործում կարևոր է որակյալ մասնագետ կադրերի դերը։ Նրանց գիտելիքները և գործնական փորձը մեծ հարստություն են հասարակության համար։ Բնակչության հմտության մակարդակը Կ. Մարքսն անվանել է «հարստության գլխավոր կուտակում», որը յուրաքանչյուր ժամանակաընթացքում էկոնոմիկայի զարգացման, գիտական և սոցիալական առաջընթացի նախապայմանն է։ Ի դեպ, գիտատեխնիկական հեղափոխության արդի պայմաններում կուտակված գիտելիքների արդյունավետ օգտագործումն ունի ոչ պակաս նշանակություն, քան նյութական հարստության ռացիոնալ օգտագործումը։

Սովետական Միության ժողովրդական տնտեսությունը մասնագետներով հագեցվածության մակարդակով առաջ է անցել կապիտալիստական առավել զարգացած երկրներից։ 1975 թ. ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության մեջ աշխատում էին բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ մոտ 23 միլիոն մասնագետներ։ Միայն իններորդ հնգամյակի տարիներին այդ ոլորտն ընդգրկվեցին ևս 9 միլիոն մասնագետներ։

Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կադրերի պատրաստման սիստեմի հետագա զարգացման, կատարելագործման և ժողովրդական տնտեսության պահանջը բարձրորակ մասնագետներով առավել բավարարելու նպատակով մեծ միջոցառումներ են իրականացվելու տասներորդ հնգամյակում։ ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներով նախատեսված է՝ պատրաստել բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ 9,6 միլիոն մասնագետներ, հատուկ ուշադրություն է նվիրվելու ինտենսիվ զարգացող շրջանները կադրերով ապահովելուն։ Նախատեսվում է ընթացիկ հնգամյակի տարիներին ընդլայնել բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների նյութական բազան, արմատավորել ուսուցման տեխնիկական միջոցներն ու նոր մեթոդները, լաբորատորիաները և ուսումնա-մեթոդական կաբինետները հարստացնել ժամանակակից սարքավորումներով, գործիքներով, ուսումնական ձեռնարկներով։

Անհրաժեշտ է նշել, որ մասնագետների պատրաստման գործում վերջին տարիներին զգալի աշխատանք է կատարվել նաև մեր հանրապետությունում։ Դեռևս 1974—75 ուստարում Հայաստանի բուհերում և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում ուսանողների թիվը հասնում էր մոտ 105 հազարի՝ 1960—61 ուստարվա 35 հազարի և 1965—66 ուստարվա 70 հազարի փոխարեն։ Վերջին 15 տարիների (1960—1975 թթ.) ընթացքում



ուսանողների թիվն ավելացել է երեք անգամ։ Զգալիորեն կատարելագործվել է ուսումնական հաստատությունների տեղաբաշխումը հանրապետության տերիտորիայում։ Նոր բուհեր, տեխնիկումներ կամ դրանց ֆիլիալներ են կազմակերպվել Լենինականում, Կիրովականում, Գորիսում, Ղափանում, Դիլիջանում, Սևանում, Ջարենցավանում, Հոկտեմբերյանում, Վարդենիսում, Արարատում, Արթիկում, Կամոյում, Էջմիածնում և այլուր։ Դա հնարավորություն է ընձեռում ուսումնական հաստատությունները մոտեցնելու արդյունաբերական կենտրոններին և բնակչությանը, նոր թափ հաղորդելու կուլտուրայի զարգացմանը հանրապետության շրջաններում և քաղաքներում։ Նշված տարիներին բուհերում և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորողների թվի աճն զգալի չափով գերազանցել է հանրապետության բնակչության ընդհանուր թվի աճին. ավելացել է ուսանողների տեսակարար կշիռը բնակչության շրջանում։ Օրինակ, եթե 1960—61 ուստարում 10.000 բնակչից ընդամենը 185-ն էր ուսանող, որից բուհերում՝ 107, տեխնիկումներում՝ 78, ապա 1974—75 ուստարում արդեն համապատասխանաբար՝ 380, 193 և 187 մարդ։ Դա իրավամբ մեծ նվաճում է, որը ձեռք է բերել մեր հանրապետությունը վերջին հնգամյակներում։ Այժմ Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ աշխատում են ավելի քան 219 հազար բարձրորակ մասնագետներ, որոնցից 123 հազարը բարձրագույն, 96 հազարը միջնակարգ մասնագիտական կրթությամբ։ Ժողովրդական տնտեսության մեջ (առանց կոլտնտեսությունների) աշխատող 1 000 բանվոր-ծառայողներից մասնագետների թիվը 1975 թ. հասնում էր 217-ի, այդ թվում բարձրագույն կրթությամբ՝ 122, միջնակարգ մասնագիտական՝ 95 մարդ (Экономика и культура Армянской ССР, Ер., 1975, стр. 87, 90. Советская Армения за 50 лет, Ер., 1970, стр. 257)։

Հատկանշական է, որ վերջին տարիներին համեմատաբար արագ է ավելացել ժամանակակից մասնագիտությունների տեր կադրերի պատրաստումը, որը պայմանավորված է հանրապետությունում արտադրության մի շարք նոր ճյուղերի՝ ռադիոէլեկտրոնիկայի, ավտոմատիկայի, սարքաշինության, ճշգրիտ հաստոցաշինության, արտադրական կապի միջոցների ստեղծմամբ ու արագ զարգացմամբ։ Նոր մասնագիտությունների համար կադրերի արագ պատրաստումը թելադրված է նաև ժողովրդական տնտեսության մեջ գիտության և տեխնիկայի նվաճումների արմատավորման, արտադրապրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման, արտադրության կառավարման գործում հաշվողական տեխնիկայի լայն կիրառման անհրաժեշտությամբ։ Այսպես, եթե հանրապետության բուհերի ուսանողների ընդհանուր թիվը վերջին 15 տարիներին ավելացել է 2,6, ապա ռադիոտեխնիկայի և կապի մասնագիտությունը սովորողներինը՝ ավելի քան 13, էլեկտրոնային տեխնիկայի, էլեկտրասարքաշինության և ավտոմատիկայի մասնագիտությունն ընտրածներինը՝ մոտ 6, մեքենաշինության և սարքաշինության՝ 4 անգամ և այլն։

Միաժամանակ նշված մասնագիտությունների ոլորտում տեղի են ունեցել ստրուկտուրային դրական տեղաշարժեր։ Օրինակ, ռադիոտեխնիկայի և կապի մասնագիտությունը սովորողների տեսակարար կշիռը ուսանողների ընդհանուր թվում ավելացել է 4,8 անգամ, էլեկտրոնային տեխնիկայի, էլեկտրասարքաշինության և ավտոմատիկայի մասնագիտությունը սովորողներինը՝ 2,4, մեքենաշինության և սարքաշինության մասնագիտությունը՝ 1,5 անգամ և այլն*։ Դրա շնորհիվ հանրապետության ժողովրդական տնտեսությունում զբաղված մասնագետ կադրերի ընդհանուր թվում հետզհետե ավելանում է ինժեներների և տեխնիկների տեսակարար կշիռը։ Եթե 1960 թ. նրանց թիվը մոտ 20 հազար էր, ապա 1975-ին այն հասնում էր արդեն 72,9 հազարի, այսինքն՝ 3,6 անգամ ավելի։

* Հաշվարկված է ըստ՝ Народное хозяйство Армянской ССР в 1967 г., Ер., 1968, стр. 207, экономика и культура Армянской ССР, Ер., 1975, стр. 87).

Հանրապետության բուհերում և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում դրական տեղաշարժեր են կատարվել նաև ուսման ձևերի ստրուկտուրայում։ Հետզհետե ավելացել է սովորողների տեսակարար կշիռը ցերեկային բաժանմունքներում, պակասել՝ հեռակա և երեկոյան ուսուցման սիստեմում։ Անկասկած, ուսման որակի բարձրացման տեսակետից դա ունի կարևոր նշանակություն։

Սակայն այդ չի նշանակում, թե հանրապետությունում արդեն լուծվել է անհրաժեշտ քանակությամբ որակյալ մասնագետների պատրաստման խնդիրը, և ժողովրդական տնտեսությունը լիովին ապահովված է բարձրորակ կադրերով։ Իրականում դեռևս զգացվում է բարձրագույն և միջնակարգ կրթությամբ մասնագետների մեծ պահանջ։ Դրա վկայությունն է այն փաստը, որ 1973 թ. արդյունաբերության մեջ ինժեներատեխնիկական և ղեկավար պաշտոններ զբաղեցրած անձանց 26,1 տոկոսը չուներ համապատասխան կրթություն։

Պետք է նկատել, որ ժողովրդական տնտեսության ճյուղերում ինժեներատեխնիկական և ղեկավար պաշտոններ զբաղեցրած՝ համապատասխան մասնագիտական կրթություն չունեցողների տեսակարար կշիռը, անցած տարիների համեմատ, որոշ չափով նվազել է։ Սակայն վիճակը դեռևս անբավարար է։ Բավական է ասել, որ 1973 թ. Հայաստանում 1.000 բանվոր-ծառայողներից բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն են ունեցել 199, իսկ ողջ Միությունում՝ 209 հոգի։ Ի դեպ, սույն ցուցանիշը մեր հանրապետությունում, 1965 թ. համեմատությամբ, բարձրացել է 32-ով, իսկ ողջ երկրում՝ 52-ով, ՌՍՖՍՀ-ում և Ուկրաինայում՝ 53-ով, Ադրբեջանում՝ 40-ով և այլն*։ Բերված թվերը ցույց են տալիս, որ այդ տարիներին մեզ մոտ մասնագետների պատրաստման տեմպերն զգալիորեն ետ են մնացել Միության և մի շարք հանրապետությունների ցուցանիշներից։ Բացի այդ, մասնագետների աճը, ի տարբերություն միութենականի, աննշան չափով է գերազանցել հանրապետության բանվորների և ծառայողների ընդհանուր աճի տեմպերին։ Այս հանգամանքը պետք է նկատի առնվի հանրապետության բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատությունների ցանցի զարգացումը, ուսանողների թիվը պլանավորելիս։ Խնդիրը նրանում է, որ մոտ ապագայում պետք է ո՛չ միայն բավարարվի բարձրորակ մասնագետների հարաճուն պահանջը ժողովրդական տնտեսության ոլորտում, այլև աստիճանաբար նրանցով փոխարինվեն պրակտիկ աշխատողները։ Գիտատեխնիկական ու կառավարման բարդ խնդիրներ լուծելու ընդունակ, տեսական ու գործնական ճշգրիտ գիտելիքներով զինված մասնագետները միայն կարող են ապահովել գիտատեխնիկական պատշաճ առաջընթացը։

Նախնական հաշվարկները ցույց են տալիս, որ տասներորդ հնգամյակի վերջում հանրապետության բուհերում ուսանողների թիվը որոշ չափով կգերազանցի 1975 թվականինը։ Անհրաժեշտ է ամենից առաջ զարկ տալ ժողովրդական տնտեսության համար ժամանակակից, բարձր որակավորում և կուլտուրա պահանջող ճյուղերի կադրերի պատրաստման կրթական սիստեմին։ Ի դեպ, նկատենք, որ հանրապետությունում որոշ մասնագետների պատրաստման ասպարեզում (հատկապես հումանիտար) այժմ նկատվում է կադրերի ավելցուկ, իսկ որոշ ժամանակակից մասնագիտությունների, մասնավորապես հաշվողական տեխնիկայի, կառավարման, ավտոմատ համակարգերի շահագործման ոլորտներում՝ զգալի պակաս։ Ուստի, անհրաժեշտ է բարելավել մասնագետ կադրերի պատրաստման պլանավորման գործը՝ հաշվի առնելով երկրի զարգացման ներկա պահանջները, գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները։ Այս խնդրի դրական լուծումը կենսական նշանակություն ունի մեր հանրապետության համար։ Այդ մասին առանձնահատուկ շեշտվեց ՀԿԿ XXVI համագումարում։

Անհրաժեշտ են էական տեղաշարժեր միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների համակարգում։ 1974—75 ուստարում միջ-

* Հաշվարկված է ըստ՝ Народное хозяйство СССР в 1973 г., М., 1974, стр. 577, 595։



նակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորողները կազմել են ուսանողության ընդհանուր թվի 49,5 տոկոսը։ Չնայած այդ ցուցանիշը 1965—66 ուստարվա համեմատությամբ բարձրացել է 4,8 տոկոսով (եղել է 44,7), սակայն այն բավարար համարել չի կարելի, քանի որ հանրապետության ժողովրդական տնտեսությունը դեռևս լիովին ապահովված չէ միջնակարգ մասնագիտական կրթությամբ կադրերով։

Անհանդուրժելի է, որ որոշ ձեռնարկություններում հաճախ, տեխնիկներ չլինելու պատճառով, նրանց պարտականությունները կատարում են բարձրագույն կրթությամբ մասնագետները, կամ միջին մասնագիտական շատ հաստիքներ զբաղեցնում են պրակտիկներ, որոնց կրթական մակարդակը չի համապատասխանում տեխնիկական առաջընթացի արդի պահանջներին։ Չպետք է անտեսել այն կարևոր հանգամանքը, որ արտադրության շատ օղակներում միջին մասնագիտական կադրերը պետք է ղեկավարեն արտադրապրոցեսները։ Ահա թե ինչու կադրերի պատրաստումը պլանավորելիս հարկ է պատշաճ ուշադրություն նվիրել այդ հարցին։

Սխալ պլանավորման արդյունք չէ՞ արդյոք այն իրողությունը, որ այժմ ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում կան մոտ 7 հազար միջին մասնագիտական կրթությամբ բանվորներ։

Հարկ է նշել միջին մասնագիտական կադրերի պատրաստման և աշխատանքի տեղավորման բնագավառում վերջերս նկատվող մի կարևոր հակասության մասին։ Դրա էությունն այն է, որ, մի կողմից՝ ժողովրդական տնտեսությունն ունի այդ մասնագետների մեծ պահանջ, մյուս կողմից՝ կան արհեստական արգելքներ նրանց իրենց մասնագիտությամբ աշխատանքով ապահովելու գործում։ Օրինակ, 1974 թվականին միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների ցերեկային բաժիններն ավարտած 4.279 մասնագետներից աշխատանքով ապահովվել է միայն 2.112-ը (ընդ որում, նրանց մի մասը աշխատանքի է ընդունվել որպես բանվոր), մնացած 2.167-ն ստացել է ազատ դիպլոմ։ Նման վիճակը նորմալ համարել չի կարելի։

Պետականորեն պետք է լուծվեն միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների շրջանավարտներին աշխատանքի տեղավորելու, նրանց աշխատավարձի կարգավորման հարցերը։ Ժողովրդական տնտեսության բնագավառում տեխնիկները հաճախ ավելի քիչ աշխատավարձ են ստանում, քան որակյալ բանվորները, որոնց նրանք ղեկավարում են։ Այդ չի խթանում երիտասարդների՝ մասնագիտական կրթություն ստանալու, տեխնիկների՝ ձեռք բերած մասնագիտությամբ աշխատելու ցանկությունը։

Որակյալ կադրերի արդյունավետ օգտագործման նպատակով անհրաժեշտ է հասնել այն բանին, որ առաջիկայում միջնակարգ մասնագիտական կադրերի պատրաստման տեմպերը գերազանցեն բարձրագույն կրթությամբ մասնագետների աճին։ Ինչպես վկայում են առանձին հեղինակներ, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ կադրերի թվի լավագույն համամասնությունը կարելի է համարել 1 : 3, 1 : 4-ը։ Նույնն է ցույց տալիս նաև զարգացած կապիտալիստական երկրների, հատկապես ԱՄՆ-ի և Անգլիայի փորձը։

ՍՍՀՄ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրության որոշմամբ դեռևս մի քանի տարի առաջ մի շարք բուհերին կից ստեղծվեցին միջնակարգ կրթության ֆակուլտետներ։ Բուհերում փաստորեն ստեղծվեցին տեխնիկումներ։ Փորձը ցույց է տալիս, որ մասնագետների պատրաստման այդ երկու օղակների օրգանական միացումը բարենպաստ պայմաններ է ստեղծում՝ զգալիորեն բարելավելու հատկապես միջին որակավորման մասնագետների պատրաստումը։ Այստեղ պարապմունքները վարում են փոփոխված, կատարելագործված ծրագրերով։ Առաջիկայում ևս անհրաժեշտ է մեծ ուշադրություն նվիրել մասնագետների պատրաստման առաջավոր ձևերի տարածմանը, ուսման մեթոդների կատարելագործմանը, հատկապես միջին որակավորման մասնագետների պատրաստման գործում։

Անհրաժեշտ է միջին մասնագիտական կրթական սիստեմում ստեղծել

որակավորման որոշակի ստորաբաժանումներ, որոնց շրջանավարտները կաշխատեն ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում:

Այժմ առավել անհրաժեշտ են դարձել մասնագետների պատրաստման սիստեմի կատարելագործման ու պլանավորման հարցերին նվիրված գիտահետազոտական ուսումնասիրությունների ծավալումը, բուհերի և գիտահետազոտական ինստիտուտների փոխադարձ համագործակցության ընդլայնումը, կապը արտադրության հետ:

Հայաստանի կոմկուսի XXVI համագումարում իրավամբ նշվեց. «Մենք պետք է արդեն այժմ մտածենք բուհ-գիտահետազոտական ինստիտուտ-արտադրություն կոմպլեքս սիստեմ ստեղծելու մասին, որը կօգնի երիտասարդ մասնագետների ավելի լավ պատրաստմանը, նրանց կտա հետազոտողի և արտադրության աշխատողի հմտություններ» (Կ. Ս. Դեմիրճյան, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հաշվետու զեկուցումը Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVI համագումարին, էջ 89):

Գիտատեխնիկական հեղափոխության արդի փուլում որակյալ աշխատուժի պատրաստման ողջ համակարգի կատարելագործման հետ մեկտեղ անհրաժեշտ է բարելավել արտադրության մեջ անմիջականորեն զբաղված կադրերի որակավորման բարձրացման և վերապատրաստման պատշաճ կազմակերպումը: Դա օրվա պահանջն է. քանի որ տեխնիկական առաջընթացն անընդհատ պրոցես է, այն ենթադրում է նաև աշխատուժի որակավորման սիստեմատիկ բարձրացում, կադրերի վերապատրաստում:

Կադրերի մասնագիտական գիտելիքները պետք է միշտ նորացվեն, հարստացվեն և զարգացման յուրաքանչյուր կոնկրետ փուլում ներդաշնակեն տեխնիկական առաջընթացի հարաճուն պահանջներին:

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը վերջին տարիներին ընդունել են մի շարք որոշումներ՝ մասնագիտական կադրերի վերապատրաստումը և որակավորման բարձրացումը պետականորեն կազմակերպելու նպատակով: Համաձայն այդ որոշումների, 1967 թվականից սկսած, երկրում ստեղծվել է մասնագետների վերապատրաստման ինստիտուտների, մասնաճյուղերի, դասընթացների և ֆակուլտետների լայն ցանց, որտեղ իրենց որակավորումն են բարձրացրել հազարավոր ղեկավար աշխատողներ ու մասնագետներ:

ՍՄԿԿ XXV համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Կուսակցությունը կադրերի պատրաստման ու վերապատրաստման կազմակերպմանը մոտենում է՝ հաշվի առնելով հարաճուն պահանջները, անում է անհրաժեշտ ամեն ինչ, որպեսզի նրանք բարձրացնեն իրենց տեսական մակարդակը, խորացնեն գիտելիքները, տիրապետեն գիտության ու տեխնիկայի ժամանակակից նվաճումներին, արտադրության ու կառավարման կազմակերպմանը»:

# ՎԵՐԱՑԱԿԱՆԻ ՈՒ ԶԳԱՅԱԿԱՆԻ ԱՌՆՉՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՍԿԶԲՈՒՆՔԻ ՄԱՍԻՆ

**Է. Ս. ՍԱԼԱՎԵՐԴՅԱՆ**

ՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ ԻՄԱՑԱԲԱՆՈՒԹՅԱՆ ելակետը, անտարակույս, մնում է «մեր գիտելիքների միակ աղբյուրը զգայություններն են» դրույթը: Այս մասին այլ ենթադրություն լինել չի կարող, քանի որ, ինչպես շեշտել է Վ. Ի. Լենինը, «Բոլոր գիտելիքները փորձից են, զգայություններից, ընկալումներից» (Վ. Ի. Լենին, Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ, Երևան, 1969, էջ 148): Վ. Ի. Լենինի այս մտքից հետևում է, որ գիտելիքի ստացման պրոցեսում զգայությունները հանդես են գալիս որպես հիմք և ոչ որպես հետևանք: Իհարկե, սա չի նշանակում, թե զգայությունները զուրկ են հետևանք դառնալու հատկությունից: Վ. Ի. Լենինը ժամանակին նշել է, որ զգայություններից ելնելով կարելի է հանգել ինչպես մատերիալիզմին, այնպես էլ իդեալիզմին: Դեպի մատերիալիզմն ընթանալու կարևորագույն խնդիրն այն է, որ զգայական ընկալումներն ընդունվեն ու դիտվեն որպես օբյեկտ-սուբյեկտ հարաբերության, օբյեկտիվ իրականության առարկաների ու իրերի՝ մեր զգայական օրգանների վրա ունեցած ներգործության հետևանք, որպես օբյեկտիվ աշխարհի սուբյեկտիվ պատկերներ. «...մեր զգայությունները համարել արտաքին աշխարհի պատկերներ— ճանաչել օբյեկտիվ ճշմարտությունը— կանգնել իմացության մատերիալիստական թեորիայի տեսակետի վրա,— դա միևնույն բանն է» (Նույն տեղը, էջ 152):

Զարգացնելով մարքսիստական իմացաբանությունը՝ Լենինը ցույց է տվել, որ մեր զգայական ընկալումները, որպես ռեալ կերպով գոյություն ունեցող իրերի ու առարկաների պատկերներ, նույնպես ռեալ են, իրական: Կասկածել այդ բանում, նշանակում է նահանջել դեպի ագնոստիցիզմը, իդեալիզմն ու մախիզմը, որի ներկայացուցիչները «...սուբյեկտիվիստներ և ագնոստիկներ են, որովհետև նրանք բավականաչափ չեն վստահում մեր զգայարանների ցուցմունքներին» (Նույն տեղը, էջ 150): «Մատերիալիստ լինել,— այնուհետև նշում է Վ. Ի. Լենինը,— նշանակում է ճանաչել զգայարանների միջոցով մեզ համար հայտնագործվող օբյեկտիվ ճշմարտությունը» (Նույն տեղը, էջ 156): Հետևաբար, զգայություններն իրականության մարդկային արտացոլման, օբյեկտիվ ճշմարտության ճանաչման, գիտելիքի ձեռքբերման նախադրյալը կամ առաջին փուլն են:

Իմացության նպատակը օբյեկտիվ իրականության ադեկվատ արտացոլումն է, բայց զգայականն ու բանականը, այսինքն՝ մարդկային զգայությունները և վերացական մտածողությունը առարկան արտացոլում են տարբեր ձևերով, տարբեր խորությամբ: Եթե զգայարանների միջոցով մենք որոշակի պատկերացում ենք կազմում իմացության օբյեկտի առանձին, արտաքին կողմերի մասին, ապա մտածողությունն արտացոլում է առարկայի ներքին, անհրաժեշտ, թաքնված կապերն ու հարաբերությունները, որոնք անհասանելի են զգայական օրգաններին: Այնպես որ, զգայություններից այն կողմ էլ կա օբյեկտիվորեն ռեալ գոյություն ունեցող աշխարհ: Վերացական մտածողության

խնդիրն էլ այդ աշխարհի օբյեկտիվ և օրինաչափությունների բացահայտումն է, էության մասին գիտելիքի ստացումը։ Այս պրոցեսն սկսվում է օբյեկտիվ իրականության զգայական հայեցումից և ավարտվում արտադրական-հասարակական պրակտիկայով, որտեղ էլ ճշգրտվում են մեր պատկերացումներն ու գիտելիքները։ Վ. Ի. Լենինը հետևյալ կերպ է բնորոշում իմացության անցած ուղին. «Կենդանի հայեցողությունից դեպի աբստրակտ մտածողությունը և դրանից դեպի պրակտիկան...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 38, էջ 205)։

Իմացության պրոցեսում զգայականի ու վերացականի փոխհարաբերության, դրանց, որպես իմացության առանձին աստիճանների, գոյության հարցը վերջին ժամանակներս դարձել է սովետական փիլիսոփաների վիճաբանության թեմա։ Մեր փիլիսոփայական գրականության մեջ լայնորեն տարածվել է այն կարծիքը, որ անհրաժեշտ է վերանայել զգայականի և վերացականի փոխհարաբերության պրոբլեմը։ Այս տեսակետի կողմնակիցների կարծիքով իմացության պրոցեսի բաժանումը զգայականի և վերացականի չի համապատասխանում իմացության տեսության լենինյան սկզբունքին, որովհետև իմացության դիալեկտիկական ուղու վերաբերյալ լենինյան դրույթը, ամենից առաջ, վերաբերում է գիտելիքի ստացման դիալեկտիկային, այլ ոչ թե իմացության զգայական ու վերացական ինքնուրույն աստիճանների գոյությանը։ Հետևաբար, նպատակահարմար ու ճիշտ է մարդկային իմացությունը դիտել որպես էմպիրիկ և տեսական հարաբերականորեն ինքնուրույն աստիճանների միասնություն (տե՛ս П. В. Копнин, Введение в марксистскую гносеологию, Киев, 1966. А. А. Зиновьев, Два уровня в научном исследовании, в кн. «Проблемы научного метода», М., 1964, и т. д.)։

Իհարկե, ճիշտ չէր լինի կարծել, թե հիշյալ տեսակետը չունի որոշակի օբյեկտիվ հիմք։ Գիտությունների զարգացման արդի վիճակում հաջողությամբ կիրառվում են մաթեմատիկական մոդելներ, տեղի է ունենում գիտությունների մաթեմատիզացիա։ Տեսությունն ավելի ու ավելի է հեռանում իր իսկ պրակտիկ, զգայական հիմքից։ Դարաշրջանի սկզբին Ա. Էյնշտեյնը գրել է. «...տրամաբանական հիմքը գնալով ավելի է հեռանում փորձի տվյալներից, իսկ մտային ուղին՝ հիմքից դեպի նրանից բխող և զգայական փորձերի հետ համաձայնեցվող թեորեմները, դառնում է ավելի երկար ու դժվարին» (А. Эйнштейн, Физика и реальность, М., 1965, стр. 59)։ Սակայն պետք է նշել, որ անցումը զգայականից վերացականին, ամենևին չի նշանակում, թե այդ պրոցեսում ստացված գիտելիքի և իմացության առարկայի՝ օբյեկտիվ ռեալականության միջև ոչ մի կապ չկա։ Ճիշտ է, շատ հաճախ վերացականի ու զգայական փորձի կապի բացահայտումը բավականին դժվարությունների հետ է կապված (օրինակ, Պ. Դիրակը տեսական հավասարումների հիման վրա ստացավ այնպիսի տվյալներ, որոնք հնարավորություն ընձեռեցին բացահայտելու, պարզաբանելու էլեկտրոնի և էլեկտրամագնիսական դաշտի փոխհարաբերության երևույթը), բայց նման երևույթի բացարձականացումը, անկասկած, կհանգեցնի սխալ եզրակացության։

Մերժելով գիտելիքի էմպիրիկ հիմնավորման սկզբունքը, նեոպոզիտիվիզմի, մասնավորապես տրամաբանական պոզիտիվիզմի ներկայացուցիչներն իրենց համարում էին էմպիրիզմի շարունակողներ։ Առաջնորդվելով իրենց իսկ առաջադրած դրույթով, ըստ որի գիտելիքը հենվում է փորձի վրա, իսկ գիտությունն էլ գործ ունի փորձից կտրված սկզբունքների և օրենքների հետ, հիշյալ ուղղության ներկայացուցիչներն աշխատում էին ստեղծել այնպիսի բառակապակցություններ, որոնք հնարավոր լինի հանգեցնել զգայական փաստերին։ Այս առումով նրանք առաջ քաշեցին փիլիսոփայություն-ձևական տրամաբանություն-գիտության լեզու սկզբունքը։ Փիլիսոփայությունը ձևական տրամաբանությանը, իսկ վերջինս էլ գիտության լեզվին հանգեցնելու սկզբունքը այդպես էլ հնարավորություն չտվեց լուծելու էմպիրիկի և տեսականի, զգայականի և վերացականի փոխհարաբերությունը իմացության, գիտելիքի ստացման պրոցեսում։ Հարցի լուծման համար պոզիտիվիստական բոլոր սկզբունքների թուլությունը Պ. Վ. Կոպնինը բացատրում է հետևյալ կերպ. «...նրանք, վեր-



լուծելով գիտության լեզուն, ըստ էության, չեն առնչվում գիտելիքի հետ՝ նրա յուրահատկությունների մեջ...։ Դեռևս Կանտի ժամանակներից փիլիսոփայությունը բավականին ճիշտ ու հանգամանորեն ցույց է տվել, որ գիտելիքն անհրաժեշտորեն իր մեջ ներառնում է զգայական փորձի և մտածողության վերլուծությունը» (Философия и современность, М., 1971, стр. 192)։ Համարյա նույնանման ձգտում է նկատվում նաև հիերոգլիֆների տեսության ներկայացուցիչների մոտ։ Նրանք, ելնելով իրականության արտացոլման մարդկային կարողությունների զարգացման, վերացական մտածողության բնույթից, որոշակի տարբերակում չեն դնում իրականությունից ստացած մեր պատկերների և դրանց համար կամայականորեն ստեղծված նշանների միջև, իրականությունը դիտում են որպես սուբյեկտի գործունեության արդյունք՝ պատկերների ու սիմվոլների կոմպլեքս։ Վերոհիշյալի հետ համաձայնել չի կարելի։ Օբյեկտիվ ռեալականությունն անկախ է զգայություններից ու գիտակցությունից։ Մարդ-բնություն փոխհարաբերության պրոցեսում առաջանում են որոշակի զգայական ու մտային պատկերներ, իսկ նշանային հարաբերության պրոցեսում այդ պատկերների նշանակման համար ստեղծված նշանների և օբյեկտիվ իրականության առարկաների միջև ոչ մի նմանություն չկա։ Եթե մարդկային պատկերների ու դրանց համապատասխան առարկաների միջև առկա է իմացաբանական հարաբերություն, ապա նշանի և առարկայի միջև՝ միայն նշանակման հարաբերություն։ Սա է նշանի և պատկերների փոխհարաբերության դիալեկտիկական-մատերիալիստական սկզբունքը։

ԴԻԱԼԵԿՏԻԿԱԿԱՆ ՄԱՏԵՐԻԱԼԻԶՄԸ մեզ շրջապատող նյութական աշխարհը դիտում է մշտնջենական շարժման, փոփոխության ու զարգացման պրոցեսում։ Իրականության առարկաների և երևույթների փոխադարձ կապը օբյեկտիվ օրինաչափություն է։ Այդ կապը կարող է արտացոլվել բազմաթիվ միջոցներով ու ձևերով։ Մարդկային արտացոլման ամենահզոր զենքը մտածողությունն է։ Այն իր բովանդակությամբ օբյեկտիվ է (արտացոլում է օբյեկտիվ իրականության իրերի ու առարկաների փոխադարձ կապն ու նրանց ներքին, էական հատկությունները) և միշտ էլ սոցիալական բնույթ է կրում (գիտակցության մեջ արտացոլված է անհատի հասարակական փորձը)։ Իրականության վերաբերյալ գիտելիքը ստացվում է արտացոլման այս մակարդակում, որովհետև իրերի ու առարկաների վերացարկումն ու ընդհանրացումը, բառիս լայն իմաստով, մարդկային մտածողության ամենաէական հատկությունն են։ Գիտելիքը, որպես արտացոլման յուրահատուկ ձև, որպես գիտակցության գոյության եղանակ, տարբեր եղանակներով ստացված փաստերի վերամշակման արդյունք է։ Այն կարող է գոյություն ունենալ և՛ իդեալական, և՛ նյութական ձևով։ Ընդ որում գիտելիքի նյութականացման, առարկայացման համար խիստ անհրաժեշտ է որևէ նշանային համակարգ՝ լեզու։ Վերջինս էլ գիտելիքի առարկայական գոյության եղանակն է, որովհետև այն բանից հետո, երբ գիտելիքները ձեռք են բերում առարկայական բնույթ,— նշում է Պ. Վ. Կոպնինը,— դառնում են լեզու (տե՛ս П. В. Копнин. Введение в марксистскую гносеологию, стр. 25)։ Այլ կերպ, լեզուն հանդես է գալիս որպես գիտելիքի, մեր մտքի հաղորդման, արտահայտման ու պահպանման կարևորագույն միջոց։ Ընդ որում մարդու մտքերն ու գիտելիքները լեզվի մեջ դրսևորվում են բառերի, դարձվածքների ու նախադասությունների ձևով։ Այսպես. Սովետական և ամերիկյան տիեզերանավերի կցումը տեղի ունեցավ Եվրոպայի վրա նախադասության մեջ արտահայտված է որոշակի միտք (գիտելիք)։

Լեզվայնացած, արդեն լեզվի մեջ առարկայացված միտքը, մի կողմից, նախադասություն է, մյուս կողմից՝ դատողություն։ Այսինքն՝ այն միաժամանակ արտացոլում և արտահայտում է իրականության առարկաների ու իրերի կապերն ու հարաբերությունները։ Տրամաբանությունն էլ որոշակի գործողություններ է կատարում այնպիսի դատողությունների միջոցով, որոնք ունեն խոսքայնացված (вербализованный) սուբյեկտ և պրեդիկատ։

Մտքերի ձևավորումը կապված է վերացական մտածողության, իրականու-

թյան տրամաբանական արտացոլման հետ։ Ընդ որում դրանց ձևավորմանը նախորդում են բազմաթիվ աստիճաններ։ Դրանցից են՝ զգայական արտացոլումը, անցումը զգայությունից տրամաբանականին և այլն, որտեղ նույնպես արտացոլվում են իմացության օբյեկտի որոշ առանձնահատկություններ, ի հայտ են գալիս համեմատաբար ցածր կարգի ընդհանրություններից բարձրին անցնելու պրոցեսի առանձնահատկությունները։

Դեռևս Ֆ. Էնգելսը ժամանակին շեշտել է այն փաստը, որ իրերի ու առարկաների էությունը կարելի է ճանաչել միայն վերացարկման, աբստրակտ մտածողության միջոցով։ Վերացարկումը մարդկային մտածողության յուրահատուկ կարողություն է։ Այն հնարավորություն է ընձեռում առանձնացնելու դասի մեջ մտնող կոնկրետ առարկաներին հատուկ հատկանիշները, վերացարկելու, անտեսելու մյուսները։ Այս բոլորն ունեն մեկ նպատակ,— այն է. առանձնացնել առարկաների ու պրոցեսների էությանը բնորոշ հատկանիշները, բացահայտել ու յուրացնել ընդհանուրը, իսկ դրանք տրված են լեզվի ու խոսքի մեջ, որովհետև «Ամեն մի բառ (խոսք) արդեն ընդհանրացնում է... Զգայությունները ցույց են տալիս ռեալությունը, միտքն ու բառը՝ ընդհանուրը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 38, էջ 344)։

Վ. Ի. Լենինի այս միտքը ամենևին էլ զգայականի ու վերացականի դիալեկտիկական կապի ու միասնության անտեսում, մերժում չի նշանակում։ Մարդկային իմացության պրոցեսում զուտ զգայականի մասին խոսել չի կարելի։ Այսպես կոչված՝ զուտ զգայությունները հատուկ են միայն կենդանիներին, այս իմաստով էլ Ֆ. Էնգելսը ցույց է տվել, որ, չնայած արծիվն ավելի հեռուն է տեսնում, քան մարդը, բայց վերջինիս աչքն իր քիչ տեսածի մեջ ավելի շատ բան է նկատում։ «...մարդկային աչքի առանձնահատուկ կառուցվածքը մարդկային իմացության համար բացարձակ սահման չի հանդիսանում։ Մեր աչքին միանում են ո՛չ միայն նաև այլ զգայարաններ, այլև մեր մտածողության գործունեությունը» (Ֆ. Էնգելս, Բնության դիալեկտիկա, Երևան, 1969, էջ 245)։ Այսինքն՝ մարդու զգայական ընկալումները միշտ էլ որոշակիորեն կապված են մտածողության հետ, մշակվում ու կարգավորվում են նրա կողմից։ Այս առումով էլ ակնառու է տարբերությունը մարդու և կենդանիների զգայությունների միջև։ Այդուհանդերձ մարդկային զգայությունների և մտածողության միջև անջրպետ դնել չի կարելի նաև այն պատճառով, որ զգայական պատկերներն ընդգրկված են գիտակցության ոլորտում, կապված մտածողության հետ, իմաստավորված բնույթ ունեն և, ինչպես կտեսնենք, հաճախ կարող են արտահայտվել նաև լեզվական տարրերի միջոցով։ Վերոհիշյալ փաստը դեռևս չի հաստատում այն հանգամանքը, որ մարդկային զգայությունները դրսևորվում են գիտելիքի ձևով։ Չնայած և՛ գիտելիքը, և՛ զգայությունները, որպես իդեալական, ոչ նյութական երևույթներ, օբյեկտիվ իրականության արտացոլումներն են, բայց նրանց նույնացումը խորթ է դիալեկտիկական մատերիալիզմի իմացության տեսությանը։

ԳԻՏԵԼԻՔԻ ՁԵՎԱՎՈՐՈՒՄՆ ՈՒ ԳՈՅՈՒԹՅՈՒՆԸ կապված են գիտակցության ու վերացական մտածողության հետ։ Ինչպես ցույց են տվել մարքսիզմի կլասիկները, գիտելիքը գիտակցության գոյության կարևորագույն եղանակն է, որով ինչ-որ բան գոյություն ունի նրա համար։ Այս առումով էլ գիտելիքը որպես «գիտակցություն (...) երբեք չի կարող լինել այլ բան, քան գիտակցված գոյ (...)» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 25)։

Ինչպես տեսնում ենք, գիտելիքը երևան է գալիս որպես գիտակցված կեցություն, իսկ վերջինս, այլ կերպ, կոչվում է կեցության արտացոլում։ Կեցությունը կարող է արտացոլվել տարբեր ձևերով, բայց ամեն մի արտացոլում դեռևս գիտելիք չէ։ Գիտելիքի ծագման համար անհրաժեշտ է որոշակի հետեվություն: Այս տունը նոր է արտահայտությունը՝ հետևության սկզբնական փուլ է, յուրահատուկ նախադասություն-դատողություն, որտեղ իր ուժը դեռևս պահպանում է արտացոլման զգայական մոմենտը։ Տվյալ նախադասության մեջ այս ցուցական դերանունը մատնացույց է անում կոնկրետ առարկան, որը



մեր գիտակցության մեջ հանդես է գալիս զգայական պատկերի ձևով։ Սա նշանակում է, որ հիշյալ դատողության մեջ մենք վերաճանաչում և անվանում ենք զգայարանների միջոցով մեզ տրվող օբյեկտիվ իրականության կոնկրետ իրերն ու առարկաները։ Հետևաբար, գիտելիքի ստացման, որոշակի հետևություն անելու համար, ամենից առաջ, անհրաժեշտ է այն բանի արտացոլումը, ինչի մասին արվում է հետևությունը։ Վերը նշված օրինակում այդ «ինչը» հայտաբերվում է զգայարանների միջոցով։ Այդ զգայական կոնկրետ պատկերը, ճիշտ է, դեռևս գիտելիք չէ բառիս լայն իմաստով, բայց այն պարունակում է որոշակի բովանդակալից ինֆորմացիա, որի ընկալման, յուրացման ու արտահայտման հիման վրա էլ ստացվում է գիտելիքը։

Եթե ինֆորմացիան կարելի է հայտաբերել և ընկալել զգայարանների միջոցով, ապա յուրացումն ու արտահայտումը մարդկային մտածողությանն ու լեզվին հատուկ երևույթներ են։ Հետևաբար, գիտելիքն ստացվում է իրականության վերացական արտացոլման աստիճանում, լեզվի ու մտածողության կողմից զգայական ընկալումների վերամշակման, իմաստավորման ու բառայնացման շնորհիվ։

Մարդկային մտածողության առաջացումը նրա զգայական կարողությունների և իմացության պրոցեսում նրանց կարևորագույն դերի անտեսում չի նշանակում։ Մտածողությունը յուրահատուկ վերամշակման է ենթարկում զգայական ընկալումները, նրանց օժտում մարդկային գծերով, հոգեկան արտացոլման մակարդակից բարձրացնում գիտական իմացության աստիճանի։ Այլ կերպ պատկերացնել հնարավոր չէ, որովհետև մատերիան,— ինչպես ցույց է տվել Վ. Ի. Լենինը,— մարդուն տրված է նրա զգայությունների մեջ. «Այլ կերպ, քան զգայությունների միջոցով, մենք չենք կարող ոչինչ իմանալ նյութի որևէ ձևի և շարժման որևէ ձևի մասին» (Վ. Ի. Լենին, Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ, էջ 386)։ Նյութի և շարժման որևէ առանձին ձևի մեր զգայական պատկերներն ունեն յուրահատուկ բնույթ և, որպես օբյեկտիվ աշխարհի սուբյեկտիվ պատկերներ, սոցիալական են, մարդ—բնություն փոխհարաբերության արդյունք. «... որքան որ մարդը մարդկային է, ու հետևաբար և նրա զգայությունները և այլն մարդկային են, այնքան էլ տվյալ առարկայի հաստատումն այլ մարդկանց կողմից ևս նրա սեփական բավականությունն է...» (К. Маркс и Ф. Энгельс, Из ранних произведений, М., 1956, стр. 616):

Այդուհանդերձ, ինչպիսին էլ որ լինեն զգայական պատկերները, միշտ էլ արտացոլում են առարկաների որոշակի կողմեր. մինչ մտածողության անմիջական մասնակցության շնորհիվ է միայն բացահայտվում դրանց հարստությունը, խորությունը։ Դրանց գիտակցմամբ էլ իրականանում է ընդհանրացման ու վերացարկման պրոցեսը, ճանաչողության օբյեկտն ընդգրկվում է մտային գործունեության համակարգի մեջ։ Այս իմաստով վերացական մտածողության, ռացիոնալ իմացության էությունը, մի կողմից՝ ընդհանրացումն ու վերացարկումը, իսկ մյուս կողմից՝ պատրաստի աբստրակցիաների միջոցով որոշակի գործողությունների կատարումն է։

Անհերքելի է այն փաստը, որ զգայական ընկալումները ևս օժտված են ընդհանրացման որոշ կարողությամբ, սակայն սա ամենևին չի նշանակում, թե դրանք ներառնում են մտածողությունը։ Այն, որ մտածողությունը միշտ էլ վերահսկում է մարդու զգայական գործունեությունը, որ զգայական պատկերները իմաստավորված են, երբեք նման եզրակացության հիմք լինել չի կարող։ Մարդկային իմացության ստեղծագործական բնույթը ևս պայմանավորված է այն բանով, որ ընդգրկում է և՛ զգայականը, և՛ վերացականը՝ իրենց ներքին միասնությամբ, որտեղ ակնառու կերպով դրսևորվում են նրանց փոխադարձ կապն ու փոխպայմանավորվածությունը։ Դիալեկտիկական մատերիալիզմի իմացության տեսությամբ նշվում է զգայականի և վերացականի կարևոր նշանակությունն իմացության պրոցեսում, շեշտվում, որ ո՛չ միայն վերացական մտածողությունն է պայմանավորված զգայական-ընկալումներով, այլ

*թյան մասին որոշակի տվյալներ ենք ստանում զգայական ընկալումների միջոցով։ Լեզվական ապարատը հնարավորություն է ընձեռում գրանցելու, անվանելու զգայական պատկերները։ Ընդ որում, եթե դրանք խոսքայնացվում, նշանակվում են առանձին բառերի միջոցով, ապա դրանց և նոր ձևավորվող պատկերների հարաբերակցությունը գրանցվում է նախադասության մեջ, բառերի զուգորդմամբ։ Արդյունքը լինում է այն,— նշում է Ա. Դ. Նասեդկինը, որ «...առարկան դառնում է արտացոլված և նկարագրված։ Առաջանում է միևնույն առարկայի երկու արտացոլում (զգայական և լեզվամտային— Է. Ա.), որոնք բովանդակությամբ նման են, իսկ արտացոլման նյութով (միջոցներով)՝ տարբեր։ Առարկայի մասին զգայա-պատկերային ինֆորմացիան այսպես է վերակոդավորվում լեզվատրամաբանական ինֆորմացիայի՝ անցումը կենդանի հայեցողությունից մտքին»* (А. Д. Наседкин, Язык как средство формирования мысли, в сб. «Язык и мышление», М., 1967, стр. 71):

*Այսպիսով, զգայականն ու վերացականը հանդես են գալիս որպես իմացության միասնական պրոցեսի տարրեր, բայց միաժամանակ փոխպայմանավորված մոմենտներ։ Ճիշտ է, վերացական մտածողության պրոցեսում մենք ավելի ենք հեռանում իրականությունից, բայց մարդկային մտածողության ծագման ու գոյության հիմքը զգայականն է, և Վ. Ի. Լենինի պատկերավոր արտահայտությամբ «Իմացության շարժումը* դեպի *օբյեկտը միշտ կարող է ընթանալ միայն դիալեկտիկորեն. ետ քաշվել՝ ավելի դիպուկ հարվածելու համար» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 38, էջ 352)։ Այնպես որ, վերացական մտածողության իրականությունից հեռացված, կտրված լինելու հանգամանքը օբյեկտիվության մասին գիտելիքի ձեռքբերման նպատակ է հետապնդում միայն։*

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԹԵ՛ ՊԱՀԱՆՋԿՈՏՈՒԹՅՈՒՆ, ԹԵ՛ ՎՍՏԱՀՈՒԹՅՈՒՆ

**Բ. Ա. ԱՆԴՐԵԱՍՅԱՆ**
ՀԿԿ Ապարանի շրջկոմի առաջին քարտուղար

*Մեր ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ մշտապես հոգ է տանում կադրերի պատրաստման արդյունավետ սիստեմի ստեղծման, նրանց զարգացման, ընտրության և դաստիարակության մասին։ Սովետական պետության պատմության ընթացքում չի եղել կուսակցության մի համագումար կամ համակուսակցական կոնֆերանս, որն այս կամ այն ձևով չանդրադառնար կադրային քաղաքականությանը, սոցիալիստական շինարարության վճռական տեղամասերը կադրերով ամրապնդելու, նրանց հետ տարվող աշխատանքը բարելավելու հարցերին։ ՍՄԿԿ XXV համագումարը նոր ուժով շեշտեց կադրային քաղաքականության, կադրերի պատասխանատվության և նրանց նկատմամբ պահանջկոտության բարձրացման խնդիրը։ Համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Ներկուսակցական դեմոկրատիայի հետևողական զարգացումը, կուսակցության յուրաքանչյուր անդամի նկատմամբ պահանջկոտության բարձրացումը՝ լենինյան այս սկզբունքներն անցած փուլ չեն։ Դրանք կուսակցության զարգացման հիմքն են նաև մեր օրերում» (ՍՄԿԿ* Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, *«Հայաստան», 1976, էջ 106)։*

*Ճիշտ գնահատելով ղեկավար կադրերի կարևոր դերը կոմունիստական շինարարության մեծ ու բարդ խնդիրների լուծման գործում, կուսակցության Ապարանի շրջանային կոմիտեն առանձնահատուկ ուշադրություն է նվիրում նրանց դաստիարակության և տեղաբաշխման հարցերին։ Պետք է խոստովանել, որ մեր շատ կազմակերպություններում երկար տարիներ այդ հարցերը անուշադրության էին մատնված։ Դրա հետևանքով շրջանում ստեղծվել էր այնպիսի վիճակ, երբ որոշ աշխատողներ, նույնիսկ վստահված աշխատանքը ձախողելուց հետո, երկար ժամանակ թողնվում էին նույն պոստերում կամ փոխադրվում էին այլ, բայց անպայման դարձյալ ղեկավար աշխատանքի։ Դժվար չէ պատկերացնել կադրային այս, թող թույլ տրվի ասել՝ քաղաքականության հետևանքները։ Նման դեպքերում ստեղծվում է անխուսափելի բարեհոգության մթնոլորտ, որտեղ արտաքուստ ամեն ինչ բարվոք է, և որտեղ մարդիկ սկսում են մտածել իրենց անփոխարինելիության մասին։ Այս հանգամանքները խիստ բացասաբար էին անդրադառնում շրջանի ընդհանուր առաջընթացի, նրա էկոնոմիկայի զարգացման վրա։ Վիճակը շտկելու համար կուսակցության շրջանային կոմիտեն կիրառեց կադրերի պատասխանատվությունը և նրանց նկատ-*

մամբ պահանջկոտությունը բարձրացնելու, կուսակցական-պետական կարգապահությունն ամրապնդելու կուրս։ Երբ կուսշրջկոմը, նրանց գործունեությունը գնահատելիս, առաջնորդվեց այդ սկզբունքներով, պարզվեց, որ որոշ կադրեր չեն համապատասխանում իրենց զբաղեցրած պաշտոններին, ի վիճակի չեն լուծելու իրենց ղեկավարած կոլեկտիվների առջև ծառացած տնտեսական ու քաղաքական խնդիրները։ Դեռ ավելին, առանձին ընկերներ, ձախողելով վստահված բնագավառի գործերը, այնքան էին շեղվել ուղիղ ճանապարհից, որ կուսակցական և նույնիսկ քրեական պատասխանատվության ենթարկվեցին։

Այս հարցերի մասին, իհարկե, հանգամանորեն խոսվեց կուսակցության շրջանային կազմակերպության XXXIII կոնֆերանսում, շրջկոմի 1975 թ. փետրվարյան պլենումում, որտեղ քննարկվում էին կուսակցական և պետական կարգապահության ամրապնդման ասպարեզում սկզբնական կուսկազմակերպությունների խնդիրները՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան (1975 թ.) պլենումի որոշումների կենսագործման կապակցությամբ։

Պետք է ասել, որ ստեղծված բարձր պահանջկոտության մթնոլորտը բարերար ազդեցություն գործեց շատերի վրա։ Համոզվելու համար բերենք թեկուզ երկու օրինակ բնակչության սպասարկման ոլորտից։ Գազի գրասենյակը տևականորեն թերակատարում էր ծառայությունների առաջադրանքները, հաճախ էին բնակիչները դժգոհում։ Սակայն, երբ գազի գրասենյակի պետի պաշտոնը վստահվեց երիտասարդ մասնագետ Ս. Ստեփանյանին, և նրա նկատմամբ շրջանի ղեկավար մարմինները դրսևորեցին բարձր պահանջկոտություն, վիճակն արմատապես փոխվեց։ Այժմ այդ հիմնարկությունը սիստեմատիկաբար կատարում ու գերակատարում է պետական պլաններն ու սոցպարտավորությունները, բարձրացրել է սպասարկման կուլտուրան. դժգոհությունները վերացել են։

Բնակչության կենցաղային սպասարկման կոմբինատը տարիներ շարունակ չէր կատարում պետական առաջադրանքները, թողարկվող արտադրանքի վատ որակն ու սպասարկման ցածր կուլտուրան հասարակական բասական կարծիք էին ստեղծել ձեռնարկության և նրա ղեկավարի վերաբերյալ։ Սակայն այժմ, ճիշտ հետևություններ անելով իրենց հասցեին արված քննադատական դիտողություններից, կենցաղային սպասարկման կոմբինատի ղեկավարները շտկել են գործերի վիճակը, և ձեռնարկությունն աստիճանաբար առաջադիմում է։

Վերջին տարիներին կուսակցության շրջանային կոմիտեն առանձնահատուկ ուշադրություն է նվիրում երիտասարդ կադրերի դաստիարակության և առաջքաշման լուրջ ու կարևոր գործին, հնարավորություններ է ստեղծում նրանց գիտելիքների ու եռանդի դրսևորման համար։ Մինչդեռ մի ժամանակ տիրում էր այն մտավախությունը, թե իբր երիտասարդ կադրերին պատասխանատու պոստեր վստահելը ճիշտ չէ, թե նրանք դեռևս բավականին փորձ չունեն, գործը կտապալեն և այլն։ Սակայն շրջկոմը համարձակորեն առաջ քաշեց երիտասարդ կադրերին։ Խոսենք կոնկրետ փաստերով։ Շրջսովետի գործկոմի ժողկրթության բաժնի վարիչ Ս. Աբրահամյանը երկար ժամանակ էր աշխատում այդ պոստում, բայց վերջին տարիներին կարծես իրեն սպառել էր, բաժնում գործերը լավ չէին ընթանում, ընկել էր պետական, աշխատանքային կարգապահությունը։ Կարծիքներ կային, թե դեռևս նպատակահարմար չէ նրան ազատել այդ պոստից, թե, իբր, չկա համապատասխան մեկ ուրիշ թեկնածու, որը փոխարիներ նրան։ Այնուամենայնիվ, շրջկոմը որոշեց ժողկրթության բաժնի վարիչի պարտականությունը վստահել երիտասարդ կոմունիստ, նույն բաժնի տեսուչ Ս. Ղազարյանին։ Անցած երեք տարիների նրա գործունեությունը ցույց է տալիս, որ շրջկոմը ճիշտ է վարվել այդպիսի ընտրություն կատարելով։ Երիտասարդ կոմունիստն իր ողջ գիտելիքներն ու կազմակերպչական ունակությունները նվիրաբերում է մատաղ սերնդի կրթության և դաստիարակության գործը շրջանում ամուր հիմքերի վրա դնելու նպատակին։

Կամ մեկ ուրիշ օրինակ։ Արագածի սովխոզը նյութական մեծ վնասներ էր կրում։ Այստեղ թերակատարվում էին գյուղատնտեսական մթերքների արտա-



դրության ու մթերումների պետական պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները, բարձր էր արտադրվող մթերքների ինքնարժեքը։ Ի՞նչ անել։ Հարկ համարեցինք գործն սկսել կադրերից. շուտով սովխոզի դիրեկտոր առաջադրեցինք երիտասարդ կոմունիստ, գյուղատնտեսության մասնագետ Բ. Հակոբյանին։ Այժմ տնտեսության դեմքը անճանաչելիորեն փոխվել է, ստեղծվել է պատշաճ կարգ ու կանոն, գործերն ընթանում են կազմակերպված ձևով, հաջողությամբ են լուծվում տնտեսական խնդիրները։

Կուսակցական աշխատանքի փորձը հաստատել է, որ մարդուն ճիշտ գնահատելու համար լուրջ նշանակություն ունեն բնութագրերն այն հիմնարկությունների ու կազմակերպությունների, որտեղ նա աշխատել կամ աշխատում է։ Այդ բնութագրերի նշանակությունը նույնքան մեծ է, որքան օբյեկտիվորեն ու լիակատարությամբ են դրանք արտացոլում մարդու քաղաքական ու գործարար հատկանիշները, նրա կարողություններն ու ունակությունները, գործի նկատմամբ նրա վերաբերմունքը։ Շրջկոմը, կադրերին առաջ քաշելիս, հաշվի է առնում կոլեկտիվների, աշխատավորության կարծիքը։ Դա առանձնապես կարևոր է սխալներից խուսափելու համար։ Ասածը հիմնավորելու նպատակով բերենք երկու օրինակ։

Շրջսովետի գործկոմի գյուղվարչությունում աշխատում էր երիտասարդ մասնագետ Կ. Ղազարյանը։ Նա իր կոլեկտիվում, շրջանի ակտիվի մեջ ճանաչված էր որպես խելացի, բանիմաց աշխատող։ Նկատելի էր նրա հեղինակությունը հատկապես իր ծննդավայրում՝ Վարդենիս գյուղում։ Այդ հանգամանքը նկատի ունենալով՝ շրջկոմը Ղազարյանին երաշխավորեց Վարդենիսի կոլտնտեսության վարչության նախագահ։ Եվ ի՞նչ։ Համագյուղացիները կարծես դրան էին սպասում. ինչպես ասում են, գրկաբաց ընդունեցին նրան և միաձայն ընտրեցին իրենց տնտեսության ղեկավար։ Ճիշտ է, դեռևս վաղ է լուրջ տեղաշարժերի մասին խոսելը, բայց որ վիճակն աստիճանաբար շտկվում է կոլտնտեսությունում, դա արդեն անվիճելի է։

Շրջանի արդյունաբերական ձեռնարկություններից մեկը՝ գարեջրի գործարանը, մեծ մտահոգություն էր պատճառում. այստեղ արտադրական պլանները հազիվ կատարվում էին 40 տոկոսով, խիստ ցածր էր գարեջրի որակը, ձեռնարկությունում տիրում էին թափթփվածություն, անկարգություն։ Ստեղծված իրավիճակը պահանջում էր իրականացնել կտրուկ միջոցառումներ։ Նախ, անհրաժեշտ էր լուծել դիրեկտորի հարցը։ Եվ դարձյալ ծառացավ նույն խնդիրը. ո՞ւմ վստահել։ Շրջկոմը կանգ առավ գործարանի մասնագետ Ն. Միքայելյանի թեկնածության վրա. դիրեկտորի բացակայության ժամանակ նրան էր վստահվել ձեռնարկության ղեկավարման գործը, կուսկազմակերպությունը, կոլեկտիվն արդեն նրան ճանաչել էին այդ պոստում։ Կարճ ժամանակամիջոցում նոր դիրեկտորը կարողացավ համախմբել կոլեկտիվը, կարգապահությունը դնել ամուր հիմքերի վրա։ Ձեռնարկությունում արդեն կազմակերպվում և անցկացվում են ինժեներա-տեխնիկական աշխատողների և բանվորների որակավորման պարապմունքներ, միջոցառումներ են մշակվում հանրապետության առաջավոր ձեռնարկությունների փորձն արմատավորելու, արտադրությունը գիտականորեն կազմակերպելու համար։ Առաջին հաջողություններն առկա են. անհամեմատ բարձրացել է գարեջրի որակը, այն արագ սպառվում է, լայն պահանջարկ ունի։ Այժմ Ապարանի գարեջուրն առաքվում է հանրապետության 11 շրջան։

Առաջ քաշելով կադրերին՝ կուսշրջկոմը նրանց շրջապատում է հոգատարությամբ, օգնում աշխատանքում, միաժամանակ նրանց նկատմամբ ցուցաբերում բարձր պահանջկոտություն, դաստիարակում պատասխանատվության զգացումով։ Այս բանին շրջկոմը հասնում է ամենօրյա հսկողության, հետևողական աշխատանքի, առաջավոր փորձի արմատավորման ճանապարհով, իսկ ամենակարևորը՝ ընդունած որոշումների կատարման ստուգումը կազմակերպելով։ 1975 թ. փետրվարի 14-ին շրջկոմի բյուրոն իր նիստն անցկացրեց Ծաղկաշեն գյուղում. քննարկում էր այդ նույն կոլտնտեսությունում մատղաշի ինտենսիվ աճեցման հարցը։ Շրջանային կոմիտեի բյուրոյին մասնակցեցին բոլոր տնտեսությունների ղեկավարները, սկզբնական կուսկազմակերպություն-

ների քարտուղարները, ֆերմաների վարիչները, մասնագետները։ Հարցի քննարկումն անցավ գործարար մթնոլորտում։ Բյուրոն բոլոր տնտեսություններին պարտավորեցրեց ձեռնամուխ լինել մատղաշի ինտենսիվ աճեցման գործին։ Շրջանային կոմիտեն հանդես բերեց հետևողականություն և միջոցառումներ իրականացրեց ընդունած որոշումը կենսագործելու համար։ Կադրերն իրենց հերթին մեծ պատասխանատվությամբ հետամուտ եղան այդ որոշման կենսագործմանը։ Դրա շնորհիվ այժմ շրջանի գրեթե բոլոր տնտեսություններում արմատավորվել է անասունների ինտենսիվ աճեցման եղանակը։

Այդ լավ գործի արդյունքներն այսօր շոշափելի են. շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները տասներորդ հնգամյակի անդրանիկ տարվա առաջին կիսամյակի մսի պետվաճառքի առաջադրանքները կատարեցին 160,4 տոկոսով (ներառյալ արտապլանային առաջադրանքը)՝ մթերակայան հանձնելով միայն միջակ և միջակից բարձր սնվածությամբ անասուններ։ Իսկ հանձնած մսի որակի այդպիսի ցուցանիշ շրջանը ձեռք է բերել առաջին անգամ։

Կադրերի մեծ պատասխանատվության մասին է խոսում նաև ցեղական երինջների աճեցման միջկոլտնտեսային պետական ձեռնարկության ստեղծման նկատմամբ նրանց ցուցաբերած սթափ վերաբերմունքը։ Քասախի կոլտնտեսության անասնապահական լքված ու չօգտագործվող օբյեկտների բազայի վրա, շրջանի հիմնարկ-ձեռնարկությունների շեֆական օգնությամբ ստեղծվեց երինջների աճեցման համալիրը։ Այն արդեն իր տրամադրության տակ ունի երկու խոշոր վերակառուցված օբյեկտներ, սկսել է երրորդի շինարարությունը։ Այդ տնտեսությունը, որի ղեկավարն է երիտասարդ մասնագետ Լ. Մելքոնյանը, ամեն տարի շրջանի կոլտնտեսություններին կտա 650—700 գլուխ ցեղական հղի երինջներ, դրանով կնպաստի տնտեսություններում ցեղաբուծության զարգացմանը և պետությանը կհանձնի բարձրորակ միս։ Այժմ աճեցրած 10—11 ամսական երինջների միջին քաշը հասնում է 300—350 կիլոգրամի, իսկ նրանցից ամեն մեկը օրական աճում է 700—900 գրամով։

Այս ձեռնարկության փորձի հիման վրա տեսնելով անասունների ինտենսիվ եղանակով աճեցման առավելությունները՝ տնտեսությունների ղեկավարներն ու կուսկազմակերպությունները բարձր են գնահատում միջտնտեսային կոոպերացման նշանակությունը։ Եվ, պատահական չէ, որ, քննարկելով ՍՄԿԿ Կենտկոմի «Միջտնտեսական կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումն ավելի զարգացնելու մասին» որոշումը, նրանք մեծ հավանություն տվեցին այդ կարևորագույն միջոցառմանը և այն ընդունեցին որպես գործունեության ծրագիր իրենց տնտեսությունների հետագա զարգացման համար։

Կուսակցությունը պահանջում է, կադրերին ճիշտ ընտրելու համար, հաշվի առնել նրանց քաղաքական ու գործնական հատկանիշները։ Պրակտիկան ցույց է տվել, որ, երբ խախտվում է այս զուգակցումը, անտեսվում է սկզբունքներից որևէ մեկը, ապա ընտրված կադրը իրեն չի արդարացնում։ Այդպիսի դառը փորձերի հանդիպել ենք նաև մենք։ Հաշվի առնելով, որ երիտասարդ մարդն ունի բարձրագույն կրթություն, մենք նրան վստահել ենք տնտեսության ղեկավարությունը, բայց, ցավոք, նա չի կարողացել գլխավորել կոլեկտիվը, կազմակերպել մարդկանց։ Ստիպված ենք եղել շուտով նրան փոխադրել այլ աշխատանքի՝ իր մասնագիտությամբ։ Դա նշանակում է, որ կադրերի ընտրության ժամանակ չի կարելի ցուցաբերել միակողմանիություն, այսինքն՝ հաշվի առնել միայն քաղաքական կամ միայն գործնական հատկանիշները։

Ղեկավարվելով Վ. Ի. Լենինի այն հայտնի դրույթով, որ կարգապահության ամեն մի խախտում, թեկուզ աննշան, չպետք է մնա աննկատ, քանի որ անպատժելիության գիտակցումը հարուցում է ավելի կոպիտ խախտումներ, շրջկոմը ճշտորեն է զուգակցում կադրերի նկատմամբ հոգատարությունը և սկզբունքային պահանջկոտությունը։ Մեզ համար ղեկավար սկզբունք է ՍՄԿԿ XXV համագումարի այն պահանջը, որ մարդկանց նկատմամբ վստահությունն ու հարգանքը պետք է զուգորդվեն հանձնարարված գործի համար պահանջկոտու-



թյան հետ։ Եվ կուսշրջկոմը, նկատելով աշխատողների դրական կողմերը, ըստ արժանվույն գնահատելով նրանց պրակտիկ գործունեությունը, միաժամանակ ոչ մի զիջում չի կատարում այս կամ այն աշխատողի նկատմամբ, եթե նա որևէ էական սխալ է կատարել կամ արատավորել կոմունիստի վեհ կոչումը։ Այսպես, օրինակ. ժամանակին գնահատելով երիտասարդ կոմունիստ Ռ. Ղազարյանի քաղաքական և գործնական հատկանիշները, շրջկոմը նրան վերցրեց աշխատանքի իր ապարատում, սկզբում՝ որպես հրահանգիչ, իսկ հետո առաջ քաշեց քաղլուսատան վարիչ։ Սակայն, երբ հայտնի դարձավ, որ նա կեղծ ճանապարհով գրանցվել է Երևան քաղաքում և բնակարան ձեռք բերել, շրջկոմը նրան ազատեց աշխատանքից և խստորեն տուժարկեց։

Կուսակցական կյանքի նորմերը խախտելու համար վերջերս աշխատանքից ազատվեց և կուսակցական կանոնադրությամբ խիստ տուժարկվեց նաև մթերումների և որակի պետական տեսչության աշխատող Ռ. Աշոտյանը։ Կոմունիստին անվայել արարք դրսևորելու համար պատժվել են շրջսովետի գործկոմի քարտուղար Ամալյա Աղաբաբյանը և ուրիշ ղեկավար աշխատողներ։

Կուսակցությունը մշտապես պահանջում է, որպեսզի բոլոր ղեկավարները լինեն գաղափարապես համոզված և սկզբունքային, կարողանան միշտ նայել առաջ, գործը կազմակերպել գիտական հիմունքներով, ժամանակին հայտաբերել թերությունները և վճռական միջոցներ ձեռնարկել դրանք վերացնելու համար։ Այս իմաստով շրջանի առաջավոր տնտեսությունների ղեկավարների շարքում աչքի է ընկնում Շենավանի կոլտնտեսության վարչության նախագահ, գյուղատնտեսական գիտությունների թեկնածու Բ. Ղազարյանը։ Աշխատանքներն այս տնտեսությունում կազմակերպվում են իսկական գիտական հիմունքներով, նորն ու առաջավորն անմիջապես արմատավորվում են արտադրության մեջ, նորանոր միջոցառումներ են իրականացվում հողագործության և անասնապահության վարման կուլտուրան բարձրացնելու համար։ Տնտեսությունն իններորդ հնգամյակի բոլոր առաջադրանքները կատարել է չորս ու կես տարում և այժմ ընթանում է վերելքի ուղիով, տարեցտարի ավելանում են կոլտնտեսականների եկամուտները։

Շենավանցիներն առաջինը հանդես եկան գյուղերը բարեկարգ և օրինակելի կենցաղավարության բնակավայրեր դարձնելու նախաձեռնությամբ։ Նրանց կոչը քննարկվեց և լայն արձագանք գտավ շրջանի բոլոր գյուղերում։ Եվ իրենք արդեն շատ գործ են կատարել այդ ասպարեզում։ Բանն այն է, որ կուսկազմակերպությունը (քարտուղար՝ Ս. Սարգսյան), գյուղական սովետը (նախագահ՝ Խ. Հակոբյան) և կոլտնտեսության վարչությունը գործում են համերաշխ, պատասխանատվության բարձր զգացումով և աշխատավորության շրջանում ճիշտ են կիրառում կուսակցության քաղաքականությունը, կադրերի նկատմամբ ցուցաբերում են վստահություն, ընկերական օգնություն, միաժամանակ՝ խիստ պահանջկոտություն։

Մեծ նշանակություն ունի Վ. Ի. Լենինի ցուցումը կադրերի հաջորդականության մասին։ Այդ հարցը կրկին անգամ ընդգծվեց ՍՄԿԿ XXV համագումարում։ Ինչ խոսք, որ հին կադրերը բավականին փորձ ու հմտություն ունեն, գիտեն ճիշտ կողմնորոշվել։ Հենց դրանք էլ նրանց առավելություններն են։ Սակայն հին կադրերը կամա-ակամա աստիճանաբար ասպարեզից հեռանում են և, բացի այդ, նրանց մի մասը հակում ունի համառորեն նայել դեպի անցյալը, կառչել հնից և չտեսնել նորը կյանքում։ Այսպիսի փաստեր նկատվում են նաև մեզ մոտ։ Սակայն, ղեկավարվելով կուսակցության պահանջներով և հարազատ մնալով կադրերի հաջորդականության լենինյան սկզբունքին, կուսշրջկոմը բարձր է գնահատում հին կադրերի ծառայությունը, նրանց ուղարկում է հանգստի, փոխարենը առաջադրելով պրակտիկայում փորձված երիտասարդների։

Կադրային քաղաքականության մեջ կուսակցությունը միշտ էլ ղեկավարվել է հին և երիտասարդ կադրերի համագործակցության սկզբունքով։ ՍՄԿԿ XXV համագումարը պահանջեց կուսակցության կադրային քաղաքականությունն այսուհետ ևս ուղղել այն բանին, որպեսզի հին կադրերի նկատմամբ ունեցած հարգալից վերաբերմունքի հետ միասին առավելագույն չափով օգ-

տագործվեն նրանց փորձն ու գիտելիքները, առաջ քաշվեն երիտասարդ, հեռանկարային աշխատողներ։ Համագումարն այդ սկզբունքը համարեց կադրերի փոխարինելիության պարտադիր պայման։ Այս առումով շատ կարևոր է կադրերի ռեզերվի ստեղծման գործը։ Այդ խնդիրը համակողմանի արծարծվել է Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմի՝ 1975 թ. հունվարյան պլենումում։ Պլենումին տված զեկուցման մեջ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը հանգամանորեն վերլուծեց հանրապետությունում կադրային քաղաքականության կիրառման դրվածքը և այդ քաղաքականության ամենախոցելի տեղը համարեց կադրերի անհրաժեշտ և պատրաստված ռեզերվի բացակայությունը։ «Կուսակցական օրգանների խնդիրն է,— ասաց ընկ. Կ. Դեմիրճյանը,— կադրերի ընտրության աշխատանքը կազմակերպել նրա անընդհատ պրոցեսի մեջ, այն դնել գիտական հիմքի վրա, ստեղծել և միշտ ունենալ գործնական աշխատանքում աճած և ստուգված կադրերի ակտիվ ռեզերվ» («Լենինյան ուղիով», 1975, № 2, էջ 42)։

Արդարությունը պահանջում է խոստովանել, որ մեր շրջանային ղեկավար կազմակերպությունները և թույլ են զբաղվել կադրերի ռեզերվ ստեղծելու և նրանց հետ աշխատանք կազմակերպելու հարցերով։ Այդ պատճառով առանձին հիմնարկ-ձեռնարկություններում կամ տնտեսություններում կադրերի տեղաշարժեր կատարելու անհրաժեշտության դեպքում կանգնում ենք դժվարությունների առաջ։ Այդ բացը լրացնելու և ՀԿԿ հունվարյան (1975 թ.) պլենումի որոշումը կենսագործելու նպատակով այժմ շրջկոմում և մյուս ղեկավար օրգաններում պլանավորված աշխատանք է տարվում կադրերի ռեզերվ ստեղծելու և նրանց աճեցնելու համար։

Շրջանի կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները վերակառուցում են իրենց գործունեությունը ՍՄԿԿ XXV համագումարի, ՀԿԿ XXVI համագումարի պահանջներին համապատասխան, աշխատավորական կոլեկտիվների ուժերը նպատակամղում տասներորդ հնգամյակի խնդիրների հաջող լուծմանը։ Այդ հնարավոր կլինի, եթե մենք հետևողականորեն կիրառենք կադրերի նկատմամբ վստահությունը պահանջկոտության հետ զուգորդելու կուսակցական ճիշտ սկզբունքը։

# ԴԵՊՈՒՏԱՏԻ ԱԿՏԻՎՈՒԹՅԱՆ ԱՐԳԱՍԻՔԸ

**Ն. Կ. ԲԱԲԱՅԱՆ**
Եղեգնաձորի շրջսովետի գործկոմի նախագահ

ԲԱԶՄԱԲՈՎԱՆԴԱԿ Է ՄԵՐ ԿՅԱՆՔԸ։ Զարգացած սոցիալիստական հասարակարգն ամեն օր նոր ու պատասխանատու խնդիրներ է առաջադրում աշխատավորների դեպուտատների սովետներին։ Բարդ ու դժվարին, բազմազան ու բազմաբնույթ են սովետների առջև ծառացած խնդիրները, որոնք բխում են ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներից։

Սովետական շինարարության պրակտիկան ցույց է տվել, որ սովետներն իրենց խնդիրները հաջողությամբ են լուծում միայն այն դեպքում, երբ դեպուտատներն ակտիվ են ու նախաձեռնող, երբ նրանք արդարացնում են ընտրողների հույսերը, բարձր պատասխանատվությամբ են վերաբերվում իրենց պարտականությունների կատարմանը, անձնական օրինակով համախմբում մարդկանց, մոբիլիզացնում նրանց՝ լուծելու տեղական և համապետական նշանակություն ունեցող հարցերը։

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXV համագումարում բարձր գնահատեց դեպուտատի ստատուսի մասին ընդունած օրենքը, որը հստակորեն սահմանեց դեպուտատի իրավունքներն ու պարտականությունները, ինչպես նաև պետական ու հասարակական մարմինների պարտականությունները նրանց հանդեպ։ Դա,— ասաց ընկ. Լ. Բրեժնևը,— շոշափելի արդյունքներ է տվել։ Սովետների դեպուտատների նախաձեռնությամբ այժմ արծարծվում և լուծվում են բազմաթիվ կարևոր հարցեր։ Պետք է ուղղակի ասել, որ ընտրողների նակազների հիման վրա դեպուտատների արած առաջարկություններն արտացոլում են մեր ժողովրդի պահանջմունքներն ու կարիքները, մեր ամբողջ կյանքը։ (տե՛ս ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին և արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 134)։

Հիրավի, օրենսդրական այդ ակտն ըստ ամենայնի ընդլայնեց դեպուտատի գործունեության ոլորտը, նպաստեց նրա ակտիվության բարձրացմանը, նախաձեռնության զարգացմանը։ Աշխատավորների դեպուտատների Եղեգնաձորի գյուղական, ավանային և շրջանային սովետների աշխատանքի փորձից կարելի է հիշատակել բազմաթիվ փաստեր, ապացուցելու համար, որ ստատուսի մասին օրենքը բարերար ազդեցություն է ունեցել սովետների ու դեպուտատների գործունեության վրա։

Դժվարին են մեր բնակլիմայական պայմանները։ Էկոնոմիկայի գերակշռող ճյուղը գյուղատնտեսությունն է, ուր արտադրությունը կազմակերպվում է սակավահողության և հաճախակի կրկնվող երաշտի առաջացրած դժվարությունների հաղթահարման պայմաններում։ Այս հարցերը մշտապես գտնվում են տեղական սովետների, նրանց գործկոմների և յուրաքանչյուր դեպուտատի ուշադրության կենտրոնում։ Ահա թե ինչու մեծ կարևորություն ենք տալիս գյուղատնտեսության ինտենսիվացմանը։ Մեզ լրջորեն անհանգստացնում է նաև այն փաստը, որ մինչև վերջերս էլ շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզ-

ներում առավել ռացիոնալ չէր օգտագործվում հողը։ Դրա համար ՀԿԿ XXVI համագումարում Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ միանգամայն իրավացիորեն քննադատական խոսք ասվեց նաև մեր շրջանի կուսակցական ու սովետական մարմինների հասցեին։

Շրջսովետի գործկոմը 1976 թ. փետրվարի 6-ին, քննարկելով հողերի պահպանման և ռացիոնալ օգտագործման հարցը, մշակեց կոնկրետ միջոցառումների պլան, դեպուտատներից և գյուղատնտեսության մասնագետներից ստեղծվեց հողօգտագործմանը հսկող շրջանային հանձնաժողով։ Նույնանման հանձնաժողովներ ստեղծվեցին նաև գյուղերում։ Գյուղատնտեսության բնագավառի աշխատողները պայքար ծավալեցին՝ «Խնայենք ու պահպանենք մեր բոլոր հարստությունների ակունքը, համաժողովրդական հարստությունը՝ հողը, նրանից ստանանք առավելագույն բերք ու բարիք» նշանաբանով։

Այդ շարժումը մեծ տարածում գտավ առանձնապես տնտեսությունների մեխանիզատորների շրջանում։ Աշխատավորների դեպուտատների շրջսովետի դեպուտատ, Խաչիկ գյուղի սովխոզի առաջավոր մեխանիզատոր, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Վաղինակ Խաչատրյանը կոչով դիմեց իր ընկերներին՝ «Մշակենք յուրաքանչյուր հողակտորը, ուր բարձրանում է տրակտորը»։ Արդյունքը եղավ այն, որ ընթացիկ տարում կոլտնտեսություններում ու սովխոզներում շրջանառության մեջ մտավ ավելի քան 600 հեկտար հողատարածություն, որ անցյալում չէր մշակվում։ Այդ հողատարածություններում հիմնականում ցանվեցին բազմամյա խոտաբույսեր։

Առավել դրական աշխատանք կատարվեց Խաչիկի սովետական տնտեսությունում։ Վաղինակ Խաչատրյանն ու իր ընկերները՝ Վարանցով Աբրահամյանը, Սարգիս Խաչատրյանը, Անդրանիկ Աբրահամյանը տրակտորներով բարձրացան լեռնալանջերը և մեկ տասնօրյակում հերկեցին 140 հեկտար նախկինում չօգտագործված տարածություն և այն նախապատրաստեցին խոտացանության համար։ Նրանց օրինակով աշխատեցին նաև Արփիի, Ելփինի, Աղավնաձորի, Քարագլխի և Եղեգիսի պետական տնտեսությունների ու Ագարակաձորի կոլտնտեսության մեխանիզատորները։

Շրջանի էկոնոմիկայի զարգացման համար կենսական նշանակություն ունեն մելիորատիվ և ոռոգման աշխատանքները։ Դեռևս 55 տարի առաջ Վլադիմիր Իլյիչ Լենինը Անդրկովկասի և Դաղստանի կոմունիստներին ուղղած իր հայտնի նամակում հիշեցնում էր, որ այս երկրամասի համար ամենից ավելի է պետք ոռոգումը, որը կվերածնի երկիրը։ Մեծ առաջնորդի պատգամները հանրապետության կուսակցական և սովետական մարմինների հոգածության շնորհիվ հաջողությամբ են կատարվում։

Շրջանում քիչ չեն ճանաչված առաջավոր դեպուտատ այգեգործներն ու մելիորատորները, որոնք ջանք ու եռանդ չեն խնայում հողից առավելագույնն ստանալու համար։ Արենիի գյուղական սովետի դեպուտատ, անվանի այգեգործ, «Պատվո նշան» շքանշանի ասպետ Հովհաննես Մկրտչյանը միևնույն հողակլիմայական պայմաններում, 1975 թ. մեկ հեկտարից ստացավ 186 ցենտներ խաղողի բերք, այն դեպքում, երբ կոլտնտեսության միջինը կազմեց 76 ցենտներ։ Ո՞րն է նրա հաջողության գաղտնիքը։ Երկու հեկտարանոց այգին, որը հիմնվել է ութ տարի առաջ, Մ. Մկրտչյանը մշակում է իր ընտանիքի անդամների հետ միասին։ Այստեղ հիմնական աշխատանքները մեքենայացված են, առաջավոր այգեգործը հետևում է, որ դրանք կատարվեն ժամանակին ու բարձր որակով։ Նա պահանջկոտ է ո՛չ միայն իր, այլև մեքենայական աշխատանք կատարող տրակտորիստ-մեքենավարների նկատմամբ։ Ամենակարևորը, այգին լիարժեք է, մոլախոտերից զերծ, խնամքով, տիրոջ սրտացավությամբ էտվում ու ջրվում է։ Զարմանալի չէ, որ դեպուտատ Մ. Մկրտչյանը վայելում է ո՛չ միայն իր ընտրողների, այլև գյուղի ողջ աշխատավորության խորին հարգանքը։

Դեպուտատների ակտիվությամբ, նրանց գործիմացությամբ և ձեռներեցությամբ է մեծապես պայմանավորված նոր հնգամյակում շրջանի ժողովրդական տնտեսության առջև ծառացած խնդիրների հաջող լուծումը։ Իսկ ժողովրդի



ընտրյալները մեծ ուժ են։ Գյուղական ու ավանային և շրջանային քսան սովետներում նրանց թիվը հասնում է 715-ի։ Բոլորն էլ անմիջական կապ են պահպանում իրենց ընտրողների հետ, շատ-շատերն աշխատում են նյութական արտադրության ոլորտում և մրցության առաջավորներ են, իրենց անձնական օրինակով ոգևորում են աշխատավորներին, նրանց ուժերը նպատակամղում կոմունիստական շինարարության ծրագրի իրականացմանը։

Աշխատավորների շրջանում մեծ հեղինակություն են վայելում Եղեգնաձորի կաթնախաղողագործական սովխոզի առաջավոր կթվորուհիներ, ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Ռիմա Բաբայանը, շրջանային սովետի դեպուտատ Անաստասիա Մնացականյանը, Ղավուշուղի կաթնաանասնապահական սովխոզի կթվորուհի, գյուղական սովետի դեպուտատ Նաղլի Մամեդովան, Աղավնաձորի սովխոզի կթվորուհի, շրջսովետի դեպուտատ Թելլի Մելքոնյանը, որոնք վաղուց նվաճել են մեկ կովից 2.000 կգ կաթի ստացման բնագիծը։ Այժմ նրանց օրինակով ու նախաձեռնությամբ կաթնապրանքային ֆերմաներում լայն տարածում է գտել մեկ կովից 2.000 կգ կաթի ստացման համար շարժումը։ Դա անասնապահական զարգացած շրջանների համար, ճիշտ է, սովորական, բայց մեզ համար բարձր ցուցանիշ է։

Արտադրության առաջավոր դեպուտատներն իրենց ամենօրյա աշխատանքային գործունեությամբ, իրենց նախաձեռնությամբ ու առաջարկություններով նպաստում են արտադրության վերելքին ու արդյունավետության բարձրացմանը։ Սակայն ժողովրդի ընտրյալները միայն աշխատանքային լավ օրինակներ չեն տալիս։ Նրանց ակտիվությունը դրսևորվում է մեր կյանքի բոլոր բնագավառներում։ Դեպուտատները մտահոգվում են ո՛չ միայն իրենց կոլտնտեսության, սովխոզի, հիմնարկ-ձեռնարկության, գյուղի գործերով, այլ նաև համապետական հարցերով։ Նրանց ամենօրյա գործունեությունն ընդգրկում է ժողովրդական կրթության, գյուղի սանիտարական վիճակի ու առողջապահության, կուլտուր-լուսավորական հիմնարկությունների, առևտրի և կենցաղային ծառայությունների վիճակը բարելավելու հարցերը։

Լեռնային ու հեռավոր գյուղ է Հորսը։ Այստեղ ապրում են հայեր ու ադրբեջանցիներ, ապրում են հաշտ ու համերաշխ։ Գյուղական սովետի դեպուտատները ևս երկու եղբայր ազգերի ներկայացուցիչներ են։ Նրանց շատ էր մտահոգում այն հարցը, թե ինչո՞ւ գյուղի երիտասարդության մի մասը լքում է հարազատ վայրերը։ Այդ հարցը լուրջ քննարկման առիթ դարձավ։ Դեպուտատներ Հրանտ Վանյանը, Հումբաթ Ալիևը առաջարկեցին հարց հարուցել շրջանային սովետի գործկոմի առջև՝ գյուղում ակումբի նոր շենք և մայրուղուց դեպի բնակավայր ճանապարհ կառուցելու մասին։ Վերադաս կուսակցական ու սովետական մարմիններն ընդառաջեցին։ Կառուցվեց և՛ ակումբի նոր շենք, և՛ հինգ կիլոմետր երկարությամբ բարեկարգ ճանապարհը, որով գյուղը փաստորեն կապվեց մայրուղու հետ, սկսեց երթևեկել ավտոբուսը։ Իսկ երբ իջնում է երեկոն, երիտասարդները շտապում են դեպի նորակառույց ակումբ՝ մասնակցելու կազմակերպվող հետաքրքրական միջոցառումներին։ Այժմ արդեն գյուղի հետ նրանց կապող շատ բան կա։

Մեր հիշողության մեջ դեռևս թարմ է 1975 թ. հունիսին Մոսկվայի Բաումանի ընտրական օկրուգի ընտրողների հանդիպման ժամանակ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի արտահայտած միտքը. «Որքան հասուն է դառնում մեր սոցիալիստական հասարակարգը, որքան նա առաջ է ընթանում դեպի զարգացման բարձրագույն նպատակը՝ կոմունիզմ, այնքան ավելի է բարձրանում մեր քաղաքացիների, աշխատանքային կոլեկտիվների և ամբողջ ժողովրդի հասարակական ակտիվությունը, աշխատավորներն ավելի լայնորեն են ընդգրկվում պետության ղեկավարման գործում»։ Այդ մտքի ցայտուն վկայությունն է նաև մեր աշխատավորների դեպուտատների գործունեությունը։ Հարյուրավոր դեպուտատներ աշխատում են սովետների մշտական հանձնաժողովներում, բնակչության ինքնագործ բազմաթիվ կազմակերպություններում՝ գյուղական թաղային, բնակարանային, ծնողական և այլ կոմիտեներում, կամավոր ժողովրդական դրուժինաներում, ընկերական դատարաններում։

Վաղուց են ավանդույթ դարձել դեպուտատների հանդիպումներն իրենց ընտրողների հետ։ Այդ հանդիպումների ժամանակ աշխատավորներն իրենց հուզող հարցերի վերաբերյալ դեպուտատներին ներկայացնում են բազմաթիվ առաջարկություններ, պահանջներ։ Սովետները հաշվի են առնում, ժամանակին քննարկում դրանք և համապատասխան ընթացք տալիս։ Այսպես, Ղաբախլու գյուղի աշխատավորներին շատ էին հուզում գյուղը տանող ճանապարհի անբարեկարգ վիճակը, խմելու ջրի անկանոն մատակարարումը, դպրոցական հարմարավետ շենքի բացակայությունը, ջրհան կայանի կառուցման և մի քանի այլ՝ գյուղի համար խիստ կենսական նշանակություն ունեցող հարցեր։ Եվ ահա հերթական հանդիպման ժամանակ նրանք այդ հարցերի հրատապ լուծման համար պահանջներ առաջադրեցին շրջանային սովետի իրենց դեպուտատ Զաքար Ղազարյանին։ Շրջանային սովետի գործկոմը, Զ. Ղազարյանի հարցապնդման հիման վրա, իր՝ 1976 թ. փետրվարի 6-ի նիստում քննարկեց Ղաբախլուի ընտրողների պահանջներն ու առաջարկությունները և ընդունեց համապատասխան որոշում։ Որոշմանը հաջորդեց կոնկրետ գործը. շուտով բարեկարգվեց գյուղ տանող ճանապարհը, որով ավտոբուսն ազատորեն մտնում է գյուղ, կարգավորվեց խմելու ջրի ներքին ցանցը, նախագծվում և եկող տարվանից կսկսվի դպրոցի շինարարությունը։ Միջոցառումներ են իրականացվում՝ Ղաբախլուում կառուցելու ջրհան կայան, որը ոռոգելի կդարձնի ավելի քան 170 հեկտար արգավանդ հողատարածություն։

Աշխատավորների դեպուտատների Քարագլխի գյուղական սովետի սեսիայում դեպուտատ Կամո Սահակյանը հանդես եկավ բնակչության կենցաղային սպասարկման բարելավման մասին հարցապնդմամբ։ Իրավ, անբավարար էր կազմակերպվում ինչպես Քարագլխի, այնպես էլ հարևան՝ Թառաթումբ և Աղընջաձոր գյուղերի բնակչության կենցաղային սպասարկումը։ Քարագլխում փաստորեն չկային կենցաղային ծառայության կետեր, մարդիկ իրենց փոքրիկ կարիքները հոգալու համար գալիս էին շրջկենտրոն։ Դեպուտատի հարցապնդումը ուշադրության արժանացավ նաև շրջանային սովետի գործադիր կոմիտեում։ Որոշվեց նորոգել և կենցաղսպասարկման կոմբինատին հանձնել Քարագլխի դպրոցական հին շենքը, որը լիովին կապահովի բնակչության կենցաղային ծառայության պահանջները։

Ժողովրդի ընտրյալների ակտիվությունն առավել լավ է դրսևորվում տեղական սովետների հաշվետու սեսիաներում։ Յուրաքանչյուր տարվա վերջում տվյալ սովետը, նրա գործադիր կոմիտեն, հաշիվ են տալիս բնակչությանը, ընտրողներին՝ կատարված աշխատանքների մասին։ Այդ սեսիաներում լուրջ խոսակցություն է ծավալվում հատկապես չլուծված հարցերի, աշխատանքներում տեղ գտած թերությունների ու թերացումների շուրջ։

Շրջսովետի գործկոմը հաշվի է առնում գյուղական և ավանային սովետների հաշվետու սեսիաներում շրջանային կազմակերպությունների հասցեին արված քննադատական դիտողությունները, եղած կոնկրետ առաջարկությունները, ընտրողների նակազները և դրանք քննարկում իր նիստերում, անհրաժեշտ միջոցառումներ մշակում դեպուտատների բարձրացրած հարցերի լուծման համար։

Բազմաթիվ փաստեր կարելի է բերել, թե ինչպես սովետների դեպուտատները, մեր աշխատավորները մտահոգվում են ո՛չ միայն իրենց գյուղի, հիմնարկ-ձեռնարկության հոգսերով, այլև ավելի մեծ՝ համապետական, համաժողովրդական նշանակություն ունեցող հարցերով։ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը 1976 թ. հունիսի վերջերին տեղի ունեցած՝ Եվրոպայի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների կոնֆերանսում արտասանած ճառում, խոսելով կոմունիզմի կառուցման արդի ժամանակաշրջանում սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման անհրաժեշտության մասին, ասաց. «Մեր հասարակական զարգացման հաջողությունները հնարավոր են միայն որպես մասսաների ազատ և գիտակցական ստեղծագործության արդյունք, որպես այն բանի արդյունք, որ նրանք ավելի ու ավելի ակտիվորեն են օգտագործում իրենց քաղաքացիական իրավունքները, ավելի ու ավելի ակ-



տիվորեն մասնակցում հասարակական կյանքի բոլոր կողմերի ձևավորմանը։

Սոցիալիզմի պայմաններում սովետական մարդու մեջ մշակվել է հիրավի թանկարժեք մի հատկություն, երկրի տիրոջ զգացումը, որը լավ է հասկանում իր աշխատանքի կապը համաժողովրդական գործի հետ, հիշում և մտածում է ընդհանուր շահերի մասին»։

Ահա այդ օրինակներից մեկը. Արենիի կոլտնտեսության և Աղավնաձորի սովխոզի հովիվներ, գյուղական սովետների ակտիվիստներ Մենտոր Գրիգորյանի, Նորիկ Համբարձումյանի, Վահրամ Գրիգորյանի, Սերյոժա Խաչատրյանի և Ֆրիդուն Մանուկյանի նախաձեռնությամբ նշված տնտեսություններում վերջին տարիներս արմատավորվեց ոչխարաբուծության վարման առավել ինտենսիվ եղանակ, կազմակերպվեց ոչխարների վաղ ծին։ Նույն տարում ծնված մատղաշները 30—33 կգ կենդանի քաշով սկսեցին հանձնվել պետական գնման դիմաց։ Բարձրացավ ոչխարաբուծական ֆերմաների շահութաբերությունը, իսկ մայրական կազմը հոտում հասավ 72 տոկոսի։ Սա, իրավ, երկրի տիրոջ զգացումն է, մտահոգությունը ավելի շատ և լիարժեք գյուղատնտեսական մթերքներ ստանալու համար։

Աշխատավորների դեպուտատները, սովետների ակտիվիստները մեծ գործ են կատարում սոցիալիստական համակեցության կանոնների ամրապնդման, կոմունիստական կենցաղավարման սկզբունքների արմատավորման ասպարեզում։ Վերջին տարիներին շրջանի գյուղերում, սովետների նախաձեռնությամբ և դեպուտատների ակտիվ մասնակցությամբ, լայնորեն արմատավորվում են նոր՝ զարգացած սոցիալիստական հասարակարգում ապրող մարդուն վայել վարքն ու բարքը։ Եղեգնաձոր ավանում, Խաչիկ, Արենի, Աղավնաձոր, Քարագլուխ և մի քանի այլ գյուղերում արդեն ավանդույթ են դարձել երիտասարդներին հանդիսավոր կերպով սովետական բանակ ճամփելու արարողությունը, նորածինների ու նորապսակների գրանցումները, «Լավագույն կենցաղավարման համար» նշանաբանով անցկացվող ստուգատես-մրցույթները և այլն։

Սակայն ճշմարտությունը պահանջում է ասել, որ այս բնագավառում ամեն ինչ չէ, որ արված է։ Մեր իրականության մեջ դեռևս շատ կան հնից եկող և սովորույթի ուժով պահպանվող ավելորդ, անհարկի ծեսեր, որոնք լրջորեն անհանգստացնում են մարդկանց, նրանցից խլում ավելորդ ժամանակ ու միջոցներ։ Տեղական իշխանությունների ոչ բոլոր մարմիններն են, որ կարողանում են ակտիվություն, ձեռներեցություն և հետևողականություն դրսևորել՝ բնակավայրերում օրինակելի հասարակական կարգ ու կանոն ստեղծելու, կոմունիստական կենցաղավարման սկզբունքները լիովին արմատավորելու գործում։ Շրջանային, գյուղական և ավանային սովետների գործկոմները դեռևս վատ են կազմակերպում դեպուտատների, գյուղի ակտիվիստների իրավական ուսուցումը, երբեմն տեղերում ծագած որոշ հարցեր օրինական ընթացք չեն ստանում, ձգձգվում է դրանց լուծումը։ Այդ հարցերը հետագայում դառնում են բարդ ու կնճռոտ և ավելորդ դիմում-բողոքների ու գանգատների պատճառ։ Այսպես, Ռինդի, Ագարակաձորի, Մալիշկայի կոլտնտեսություններում դեռևս անբավարար է կենսագործվում գյուղատնտեսական արտելի օրինակելի կանոնադրությունը։ Հետևանքը լինում է այն, որ տեղի է ունենում աշխատուժի հոսունություն, տուժում են տնտեսությունները։ Նշված տնտեսությունների ղեկավարների և գյուղական սովետների գործկոմների մեղքով հետևողականորեն չեն կենսագործվում նաև հողային օրենսդրության պահանջները։ Այստեղ է, որ դեպուտատները և մշտական հանձնաժողովները պետք է հանդես բերեն ակտիվություն ու նախաձեռնություն, օգնեն թերությունների վերացմանը։

ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները նոր ուժ ու եռանդ են տվել եղեգնաձորցիներին։ Մասնակցելով մեր երկրում ծավալված համամիութենական սոցիալիստական մրցությանը՝ ընթացիկ տարվա առաջին կիսամյակում լուրջ հաջողությունների հասան շրջանի անասնապահները։ Նրանք գերակատարեցին պետությանը անասնապահական մթերքներ վաճառելու առաջադրանքները։

Այժմ, երբ լայն աշխատանքներ են տարվում միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսա-

կան արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը զարգացնելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշման կենսագործման համար, ավելի է բարձրացել մեր սովետների, նրանց դեպուտատների ակտիվությունը: Այս հարցին վերաբերվելով երկրի տիրոջ զգացումով, նրանք լրջորեն են մտահոգվում կոլտնտեսությունների ու սովխոզների ներկա վիճակով: Բազմաճյուղ են տնտեսությունները, սակայն որոշ ճյուղեր չեն արդարացնում, նրանց վրա կատարվում են ավելի շատ ծախքեր, բայց ստացվում է ավելի քիչ արդյունք: Ավելին, շրջանի՝ թվով յոթ տնտեսություններ պարբերաբար տարին փակում են վնասով: Սակայն մինչև ե՞րբ: Եվ ահա այդ հարցի լուծումը տալիս է կուսակցության Կենտրոնական կոմիտեն՝ իր որոշմամբ, որը գյուղի աշխատավորության գործերի ու հոգսերի նկատմամբ նրա ցուցաբերած հոգատարության նոր վառ վկայությունն է:

Այդ խնդիրների շուրջ գործնական խոսակցություն ծավալեցին ժողովրդի ընտրյալները վերջերս տեղի ունեցած աշխատավորների դեպուտատների 15-րդ գումարման շրջանային սովետի հերթական 7-րդ սեսիայում, ուր քննարկվում էին շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատանքի արդյունավետության, ինքնարժեքի իջեցման և տնտհաշվարկի սկզբունքների ամրապնդման հարցերը:

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի 9-րդ գումարման 3-րդ սեսիան, ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների առնչությամբ, քննարկելով հանրապետության աշխատավորների դեպուտատների տեղական սովետների գործունեության հետագա կատարելագործման հարցը, նոր ուղիներ նշեց տեղական սովետների աշխատանքի բարելավման, սովետներում ընտրված դեպուտատների ակտիվության բարձրացման համար: «Դեպուտատ լինելը,— ասաց սեսիային տված իր զեկուցման մեջ ՀԿԿ Կենտկոմի քարտուղար, դեպուտատ Հ. Ոսկանյանը,— բարձր պատիվ է և մեծ պարտականություն, և այդ պատիվը տրվում է արժանավորներից արժանավորներին՝ բանվոր դասակարգի, գյուղացիության, աշխատավոր մտավորականության լավագույն ներկայացուցիչներին: Դեպուտատի պարտքն է՝ բոլոր ուժերն ու գիտելիքները նվիրել կոմունիզմի կառուցման գործին, արդարացնել ընտրողների վստահությունը, միշտ գտնվել ժողովրդի կողմից իրենց ներկայացվող պահանջների մակարդակին»:

Աշխատավորների դեպուտատների Եղեգնաձորի շրջանային սովետի գործադիր կոմիտեն այսուհետ ևս ամեն ինչ կանի կոմունիստական շինարարության արդի ժամանակաշրջանում առաջադրված խնդիրների հաջող լուծման գործում տեղական սովետների դեպուտատների և աշխատավորների ակտիվության բարձրացման համար:

---

# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՄՈՆՂՈԼԻԱՅԻ ԵՐԵՎԵԼԻ ԴԵԿԱՎԱՐԸ

**(ՅՈՒ. ՑԵԴԵՆԲԱԼԻ ԾՆՆԴՅԱՆ 60-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)**



Մոնղոլ ժողովրդի պանծալի զավակ Յումժագիյն Ցեդենբալը միջազգային կոմունիստական շարժման ականավոր գործիչներից է, Սովետական Միության հավատարիմ բարեկամը:

Չքավոր արաթի ընտանիքից է սերել նա, բարձրագույն կրթություն ստացել, անցել բեղմնավոր գործունեության արգասավոր ուղի: Երիտասարդական տարիներին նա վարել է կուսակցական և պետական բարձր պաշտոններ, անմնացորդ նվիրվել Մոնղոլիայում սոցիալիզմի կառուցման, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման ամրապնդման, աշխարհում կայուն խաղաղության հաստատման գործին: Այժմ Յու. Ցեդենբալը երկրի պետական իշխանության բարձրագույն օրգանի՝ ժողովրդական Մեծ Խուրալի Նախագահության նախագահն է և Մոնղոլիայի ժողովրդահեղափոխական կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղարը: Նա ՄԺՀ-ի հերոս է և ՄԺՀ Աշխատանքային հերոս:

Նրա գլխավորությամբ Մոնղոլական Ժողովրդական Հանրապետությունն ընթանում է տնտեսական ու կուլտուրական աննախադեպ զարգացման անշեղ ճանապարհով, տարի առ տարի բարգավաճում ու հզորանում, արժանի ավանդ մուծում սոցիալիստական երկրների եղբայրական համագործակցության ընդլայնման ու ամրապնդման գործում:

***

Յումժագիյն Ցեդենբալը ծնվել է 1916 թ. սեպտեմբերի 17-ին Մոնղոլիայի Ուբսունուրյան այմակում, աշխատավորի ընտանիքում: Միջնակարգ կրթություն ստանալուց անմիջապես հետո ուսումնածարավ պատանին ընդունվում է Իրկուտսկի ֆինանսա-տնտեսական ինստիտուտը և 1938 թվականին ավարտում այն: Երիտասարդ ֆինանսիստ-տնտեսագետը վաղ է դրսևորում իր կազմակերպչական ունակությունները, հանդես բերում տնտեսական ու քաղաքական հարցերի խորագիտակություն: Այդ արժանիքների համար նրան առաջ են քա-

շում ղեկավար աշխատանքի, վստահում շատ պատասխանատու պաշտոններ: Այսպես, 1939—1940 թթ. Ցեդենբալն աշխատում է ՄԺՀ-ի ֆինանսների մինիստրի տեղակալ, ապա՝ մինիստր:

Յու. Ցեդենբալը մոնղոլ ժողովրդի ականավոր առաջնորդ մարշալ Չոյբալսանի հավատարիմ զինակիցն էր ու մարտական ընկերը, իր ուսերին կրում էր սոցիալիզմի կառուցման համար մղվող պայքարի և երկրորդ համաշխարհային պատերազմի տարիների դժվարությունները: Երիտասարդ հասակում (1939 թ.) զինվորագրվելով Մոնղոլական ժողովրդա-հեղափոխական կուսակցությանը՝ Ցեդենբալը խորապես ուսումնասիրում է մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ ուսմունքը, դառնում հետևողական մարքսիստ, իր կուսակցության գործին անսահմանորեն նվիրված անխոնջ մարտիկ ու առաջնորդ: Հատկանշական է, որ 1940 թ. քսանչորսամյա Յու. Ցեդենբալին վստահվում է Մոնղոլական ժողովրդա-հեղափոխական կուսակցության գլխավոր քարտուղարի պատասխանատու պարտականությունը, որը նա ազնվորեն կատարում է մինչև 1954 թվականը: 1941—1945 թվականներին նա միաժամանակ Մոնղոլիայի ժողովրդա-հեղափոխական բանակի գլխավոր հրամանատարի տեղակալն էր և ղեկավարում էր բանակի քաղաքական վարչությունը:

Այդ տարիներին Ցեդենբալը հսկայական աշխատանք է կատարում կուսակցական ու զինվորական կադրերի պատրաստման ու դաստիարակության, աշխատավորական զանգվածների հեղափոխական նվաճումների պաշտպանության կազմակերպման ասպարեզներում, ջանքեր չի խնայում նոր հասարակարգի հիմքերի ամրապնդման համար:

Երկրորդ համաշխարհային պատերազմի բարդ ու դժվարին տարիներին Ցեդենբալը ինքնամոռաց զբաղվում է երկրի տնտեսական ու ռազմական հզորության ամրապնդմամբ, կուլտուրական շինարարության պրոբլեմների լուծմամբ, կազմակերպում սովետական ժողովրդին ցույց տրվող օգնությունը գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղած նրա հերոսական պայքարում: Մոնղոլական Ժողովրդական Հանրապետության կողմից սովետական բանակին ցույց տրվող նյութական օժանդակության կազմակերպման գործում ներդրած մեծ ավանդի համար ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը 1944 թ. նրան պարգևատրում է Լենինի շքանշանով:

1945 թ. օգոստոսին ՄԺՀ բանակը մարշալ Չոյբալսանի և Ցեդենբալի հրամանատարությամբ ակտիվորեն մասնակցում է միլիտարիստական Ճապոնիայի ջախջախմանը: Մարտական գործողությունները գլխավորելու համար ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը Ցեդենբալին պարգևատրում է Կուտուզովի առաջին աստիճանի շքանշանով:

Հետպատերազմյան տարիներին Ցեդենբալը ծավալում է պետական ու տնտեսական բազմակողմանի և արգասավոր գործունեություն: 1945—1952 թթ. նա կառավարության պրեմիերմինիստրի տեղակալն էր, իսկ 1945—1948 թվականներին միաժամանակ վարում է պետական պլանային կոմիտեի նախագահի պաշտոնը: Այդ տարիներին Ցեդենբալը անսպառ եռանդ է ցուցաբերում երկրի կառավարման հստակ կազմակերպման խնդրում, մեծ ջանքեր գործադրում էկոնոմիկայի բոլոր ճյուղերի առաջընթացի ապահովման, հիմնավորված պլանների մշակման, տնտեսական զարգացման պոտենցիալի արդյունավետ օգտագործման, սոցիալիզմի կառուցման հաստատուն և ամուր հիմքերի ստեղծման համար: Այդ ժամանակահատվածը հատկանշական է նրանով, որ ավելի են զարգանում սոցիալիզմի հաղթանակի համար նյութական և կուլտուրական նախապայմանների ընստեղծման, երկրի տնտեսական և կուլտուրական շինարարության տեմպերը: Մոնղոլիան առաջընթաց քայլեր է անում սոցիալիզմի նյութական բազայի հիմնման ճանապարհին: Դրվում են ծանր արդյունաբերության բազմաթիվ ճյուղերի հիմքերը, երկաթուղային տրանսպորտի զգալի մասը:

Մարշալ Չոյբալսանի մահից հետո ժողովրդական Մեծ Խուրալի նախագահությունը 1952 թ. Ցեդենբալին նշանակում է Մոնղոլիայի Ժողովրդական Հանրապետության Մինիստրների սովետի նախագահ: 1958 թ. մայիսից նա Մոնղոլական ժողովրդա-հեղափոխական կուսակցության առաջին քարտուղարն է, իսկ 1974 թվականից՝ միաժամանակ ժողովրդական Մեծ Խուրալի Նախագահության նախագահը:

Պետության ու կուսակցության ղեկավարի պաշտոններում ավելի ցայտուն են դրսևորվում Ցեդենբալի կազմակերպչական ունակությունները, ներքին ու արտաքին ամենահրատապ պրոբլեմների, միջազգային իրադրության սթափ ու ճիշտ գնահատման լավագույն հատկությունները: Նա երևան է բերել մարքսիստական տեսության և այն պրակտիկայի հետ ճիշտ զուգակցելու խորիմացություն:

***

Իր աշխատություններում ու հոդվածներում, զեկուցումներում ու ճառերում Յու. Ցեդենբալը ճիշտ ու խորությամբ վերլուծել է նախընթաց ժամանակաշրջանում Մոնղոլիայում կատարված սոցիալական տեղաշարժերը, հասարակական զարգացման իրական պրոցեսն իր ամբողջ լայնությամբ և ընդգրկումներով: Այդ առնչությամբ նա շոշափել է գիտական սոցիալիզմի տեսության և պրակտիկայի մի շարք կարևոր հարցեր, մարքսիստական դիրքերից գնահատել սոցիալիզմի կառուցման առանձնահատկությունները Մոնղոլիայում:

Քննարկելով կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ընդհանուր օրինաչափությունները՝ Ցեդենբալը հստակ կերպով մեկնել է իր երկրի զարգացման առանձնահատկությունները: «Մոնղոլական Ժողովրդական Հանրապետությունը,— գրել է նա,— որի առջև ծառացած էր ֆեոդալիզմից սոցիալիզմին անցնելու պրոբլեմը, պետք է լուծեր հակաիմպերիալիստական ու հակաֆեոդալական, նոր տիպի բուրժուա-դեմոկրատական հեղափոխության խնդիրը: Այդ խնդրի լուծումը անխզելիորեն կապված էր նոր տիպի բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը սոցիալիստական հեղափոխության վերաճելու համար պայքարի նախապայմանների ստեղծման հետ՝ երկիրը ոչ-կապիտալիստական ուղիով սոցիալիստական զարգացման փոխադրելու համար»: Այսպիսով, Ցեդենբալը զարգացնում էր Վ. Ի. Լենինի առաջադրած մարքսիստական այն ճիշտ դրույթը, ըստ որի առանձին. տնտեսապես հետամնաց երկրներում հնարավոր է անցումը ֆեոդալիզմից սոցիալիզմին՝ շրջանցելով կապիտալիստական զարգացման փուլը: Մոնղոլական Ժողովրդական Հանրապետության տնտեսական ու կուլտուրական զարգացման պրակտիկան, սոցիալիզմի կառուցման փորձը այդ դրույթի ճշմարտացիության կոնկրետ ապացույցն են:

Հանրահայտ է, որ նախահեղափոխական Մոնղոլիան արևելքի ամենահետամնաց երկըրներից էր: Այստեղ իսպառ բացակայում էր արդյունաբերությունը, էկոնոմիկայի հիմքը անասնապահությունն էր, որը վարվում էր ոչ-գիտական եղանակներով: Երկրում իշխում էին ֆեոդալական-ճորտատիրական հարաբերությունները, որոնք կաշկանդում էին երկրի տնտեսական ու կուլտուրական զարգացումը: Տնտեսական և կուլտուրական հետամնացությունը հաղթահարելու, սոցիալիզմի հիմքերի կառուցումը և նոր հասարակարգի հաղթանակն ապահովելու համար պահանջվեցին Մոնղոլիայի ժողովրդա-հեղափոխական կուսակցության, նրա անդամների ու ղեկավարների վիթխարի ջանքերը: Այդ հասումներում անուրանալի է Յու. Ցեդենբալի ներդրումը: Տակավին 1960 թ. փետրվարի 19-ին «Պրավդա» թերթում հրապարակած «Սոցիալիստական վերափոխումները Մոնղոլիայի ժողովրդական տնտեսությունում» իր հոդվածում Յու. Ցեդենբալը նշել է, որ Մոնղոլիայում տեղի է ունենում սոցիալիստական վերափոխումների բուռն պրոցես, որն ընդգրկում է հասարակական կյանքի բոլոր կողմերը: Սոցիալական արմատական փոփոխությունների թվին է պատկանում արաթական անհատ տնտեսությունների կոոպերացումը, որը հաջողությամբ ավարտվեց 1959 թվականին: «Մոնղոլ ժողովուրդը,— գրել է այդ հոդվածում հեղինակը,— վերացնելով ֆեոդալների դասակարգը և վերջնականապես հաղթահարելով երկրի էկոնոմիկայի կախվածությունն արտասահմանյան կապիտալից, իր կուսակցության ղեկավարությամբ, քառասնական թվականներից ձեռնամուխ եղավ տընտեսական ու կուլտուրական անհրաժեշտ նախապայմանների ստեղծմանը՝ աստիճանաբար սոցիալիզմին անցնելու համար»:

Այդ նախապայմաններից մեկը, որը վճռական նշանակություն ուներ տվյալ փուլում, Յու. Ցեդենբալը համարում է գյուղատնտեսության կոոպերացումը: Նա նշում է, որ Մոնղոլական ժողովրդա-հեղափոխական կուսակցությունը, ղեկավարելով գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման ընթացքը, Մոնղոլիայի պայմաններում ստեղծագործաբար կիրառում էր Վ. Ի. Լենինի գլխավոր կոոպերատիվ պլանի հիմնական սկզբունքները, սովորում էր կոլտընտեսային շինարարության նկատմամբ ՍՄԿԿ-ի ղեկավարման համաշխարհային-պատմական փորձի հիման վրա: Մոնղոլական Ժողովրդական Հանրապետությունում, գրել է Յու. Ցեդենբալը, տնտեսությունների կոոպերացման փորձը մեկ անգամ ևս հաստատեց մարքսիզմ-լենինիզմի անսասան դրույթն այն մասին, որ սոցիալիզմի ուղին մտնող յուրաքանչյուր երկրի ներհատուկ են սոցիալիստական զարգացման ընդհանուր և գլխավոր օրինաչափությունները, որոնցից մեկը համարվում է արտադրության միջոցների նկատմամբ մասնավոր սեփականության վերացումը և սոցիալիստական սեփականության հաստատումը, գյուղատնտեսության աստիճանական վերակառուցումը սոցիալիստական հիմքի վրա:

Մեկ սերնդի կյանքի օրոք մոնղոլ ժողովուրդն անցել է ֆեոդալական հետամնացությունից մինչև բարգավաճած սոցիալիստական հասարակարգ ձգվող ուղին: Հենվելով եղբայրական երկրների, ամենից առաջ, Սովետական Միության բազմակողմանի օգնության վրա, ինչպես նշել է Յու. Ցեդենբալը, հանրապետության աշխատավորներն ստեղծել են ժամանակակից ինդուստրիա, որն այսօր տալիս է գյուղատնտեսության և արդյունաբերության ողջ համախառն արտադրանքի երկու երրորդը: Զարգանում են վառելիքային, էներգետիկ, լեռնահանքային, մետաղամշակման, անտառափայտի, փայտամշակման, պոլիգրաֆիայի, տեքստիլ, բրդեղենի, կարի, կաշվի և կոշկեղենի արդյունաբերությունը, շինանյութերի արտադրությունը: Արդյունաբե-

րական խոշոր կենտրոն է դարձել երկրի մայրաքաղաք Ուլան-Բատորը: Նրանից հյուսիս՝ Խարա գետի հովտում, 60-ական թվականներին ստեղծվել է Դարխան սոցիալիստական քաղաքը: Մոնղոլ շինարարները Սովետական Միության, Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Բուլղարիայի, Հունգարիայի մասնագետների համագործակցությամբ կառուցել են բնակելի թաղամասեր, հանրապետության խոշորագույն ջերմաէլեկտրակայանը, ցեմենտի և սիլիկատե աղյուսի գործարաններ, սննդամթերքի ու մսի կոմբինատներ, ոչխարի մորթու մշակման ֆաբրիկա, ածխահանքեր և այլն: Երկրի ծայրագույն արևելքում բուռն կերպով զարգանում է ևս մեկ ինդուստրիալ կենտրոն՝ Չոյբալսան քաղաքը:

Հսկայական վերելք է ապրում գյուղատնտեսությունը: Ներկայումս ՄԺՀ-ում կան 300-ից ավելի գյուղատնտեսական միավորում և պետական տնտեսություն: Առաջացել է նոր ճյուղ՝ երկրագործությունը: Բերքառատ տարիներին Մոնղոլիան հացահատիկի ներքին պահանջները բավարարում է սեփական արտադրության հաշվին: Հանրապետությունում հետևողականորեն կենսագործվում է անասնապահության զարգացման նպատակին ուղղված ՄԺՀԿ կոմպլեքսային ծրագիրը, ամրապնդվում է կերի բազան: Ստեղծվել է համակցված կերի արդյունաբերություն՝ 20 գործարան և արտադրամաս:

Մոնղոլական Ժողովրդական Հանրապետությունում առաջընթացի վիթխարի քայլեր է կատարել ազգային մշակույթը: Ակնհայտ են կուլտուրական հեղափոխության արդյունքները՝ բնակչության համատարած գրագիտություն, միջնակարգ և բարձրագույն ուսումնական հաստատությունների, ժամանակակից առողջապահության լայն ցանց, բուռն կերպով ծաղկող գրականություն, արվեստ և այլն: Ներկայումս յուրաքանչյուր 10 հազար բնակչին հասնում է 2.511 սովորող, որից՝ բարձրագույն ուսումնական հաստատությունների 94 ուսանող, բնակչության այդ նույն թվին ընկնում են 20 բժիշկ և 98 հիվանդանոցային մահճակալ:

Մոնղոլական Ժողովրդական Հանրապետությունը առաջնակարգ տեղ է գրավում Ասիայում բնակչության կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակով: Անցած հնգամյակում (1971—1975 թթ.) ժողովրդի բարեկեցության բարձրացման նպատակով իրականացված միջոցառումների շնորհիվ բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտներն աճել են 17 տոկոսով: Տարեցտարի արագորեն ավելանում է բնակչությանը գործվածքի, հագուստի, կոշկի, ռադիոընդունիչների, սառնարանների, լվացքի մեքենաների, փոշեծծիչների, մոտոցիկլետների և այլ ապրանքների վաճառքը:

Սոցիալական կյանքի արմատական վերափոխումները խոր հետք են թողել ժողովրդի հասարակական-դասակարգային կազմի վրա. ձևավորվել է ազգային բանվոր դասակարգը, որը դարձել է առաջատար ուժ և արաթական զանգվածների ու նոր մտավորականության հետ հաջողությամբ շարունակում է առաջընթացի երթը: Մոնղոլիայի ժողովրդա-հեղափոխական կուսակցության XVII համագումարը, որը տեղի ունեցավ 1976 թ. հունիսին, առաջադրելով նոր, վեցերորդ հնգամյակի սոցիալ-տնտեսական խնդիրները, դրանց լուծման գործում կարևորեց սոցիալական այդ երեք խմբերի վճռորոշ դերը: Բանվոր դասակարգը, կոոպերացված արաթությունը, ժողովրդական ինտելիգենցիան, Մոնղոլիայի ողջ աշխատավորները,— գրել է ընկ. Ցեդենբալը,— համագումարի հավանությանն արժանացած պլաններն ընկալեցին որպես կենսական գործ, որպես իրենց արմատական շահերից բխող ծրագիր: Ընկ. Ցեդենբալը համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ վերլուծել է անցած հնգամյակում ՄԺՀԿ-ի ծավալած բազմակողմանի և արգասավոր գործունեությունը, հանրապետության աշխատավորների պատմական նվաճումները համարել որպես կուսակցության ընտրած ուղու ճշմարտացիության վառ ապացույց: Նա նոր հնգամյակը (1976—1980 թթ.) որակել է որպես խոշոր մասշտաբների խնդիրների լուծման ժամանակաշրջան, խնդիրներ, որոնց նպատակն է ծրագրային դիրքորոշման իրականացումը՝ Մոնղոլիան մոտակա ապագայում ինդուստրիալ-ագրարային երկրի վերածումը:

***

Մեծ են Յու. Ցեդենբալի ծառայությունները սովետա-մոնղոլական բազմակողմանի հարաբերությունների ամրապնդման գործում: Այդ հարաբերությունները բազմաբնույթ են և ընդգրկում են քաղաքական, ռազմական, դիվանագիտական, տնտեսական, կուլտուրական և մյուս բնագավառները: Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանը (1971 թ). նրա ջանքերի, ծառայությունների արժանի գնահատանքն է:

Իր հոդվածներում ու ելույթներում Յու. Ցեդենբալը միշտ էլ արտահայտել է ՄԺՀ կառավարության, կուսակցության, մոնղոլ ժողովրդի խոր երախտագիտությունը Սովետական Միությանը՝ ՄԺՀ-ին ցույց տրվող եղբայրական, անշահախնդիր օգնության համար: Այն, ինչ ձեռք ենք բերել մենք, ասել է ընկ. Ցեդենբալը, անխզելիորեն կապված է կուսակցության արտաքին քաղաքականության, Սովետական Միության և մեր երկրի եղբայրական կապերի խորացման անփոփոխ կուրսի հետ: Նա կարևորում է նաև համագործակցության ամրապնդումը սոցիալիզմի մյուս երկրների հետ: ՄԺՀԿ XVII համագումարում ընկ. Ցեդենբալը այդ բարեկամությունը բնութագրեց որպես ինտերնացիոնալիզմ՝ գործողության մեջ: Վերջին երեք հնգամյակներում Սովետական Միության և սոցիալիստական մյուս պետությունների ֆինանսա-տեխնիկական օգնությամբ Մոնղոլիայի արդյունաբերության մեջ հսկայական չափերի են հասել կապիտալ ներդրումները: 1971—1975 թթ. ՍՍՀՄ-ի տնտեսական և տեխնիկական աջակցությամբ շահագործման են հանձնվել ավելի քան 150 տարբեր օբյեկտներ: Ընկ. Ցեդենբալը խորին շնորհակալությամբ է նշում, որ նոր, վեցերորդ հնգամյակում (1976—1980 թթ.) ՍՍՀՄ-ի կողմից ցույց տրվող օգնությունը, անցած հնգամյակի համեմատությամբ, կաճի երկու անգամ: Կկառուցվեն արդյունաբերական նոր ձեռնարկություններ, կուլտուր-կենցաղային տասնյակ օբյեկտներ, կկազմակերպվեն հողագործական և անասնապահական բարձրարդյունավետ տնտեսություններ, կյուրացվեն զգալի տարածությամբ նոր հողեր:

ՄԺՀ-ն ժողովրդա-հեղափոխական կուսակցության ղեկավարությամբ վարում է հակաիմպերիալիստական պայքարի, միջազգային լարվածության թուլացման, համընդհանուր խաղաղության հաստատման կուրս: Այդ խնդիրները ըստ ամենայնի արծարծվել են Յու. Ցեդենբալի հոդվածներում ու ելույթներում, վերլուծվել և ընդհանրացվել մարքսիզմ-լենինիզմի դրույթների տեսանկյունից: Հակաիմպերիալիստական պայքարում նոր հաղթանակների հասնելու համար նա անհրաժեշտ է համարում ապահովել բոլոր հեղափոխական ջոկատների համագործակցությունը, նրանց մղել ակտիվ հարձակողական գործողությունների: «Հակաիմպերիալիստական միասնական ճակատի ընդլայնման և ամրապնդման հարցերը,— գրել է Յու. Ցեդենբալը,— արդիականության կենսական հարցեր են: Դրանք անմիջականորեն կապված են և զարգացող երկրների ապագայի հետ, քանի որ այդ պետությունների սոցիալ-տնտեսական առաջընթացը պայմանավորված է նեոգաղութարարների փորձերի դեմ մղվող պայքարի մասշտաբներով ու արդյունավետությամբ, սոցիալիստական աշխարհի հետ համագործակցության խորացմամբ» (Избранные статьи и речи, изд. полит. литературы, Москва, 1974, стр. 458): Յու. Ցեդենբալը դեռևս 1949 թ. ղեկավարել է խաղաղության պաշտպանության կողմնակիցների մոնղոլական պատվիրակությունը (Փարիզ—Պրագա) և հետագայում ՄԺՀ-ի և ՄԺՀԿ-ի ջանքերն ուղղել Մոնղոլիայի միջազգային կապերի ընդլայնմանը, խաղաղության ամրապնդմանն առնչվող պրոբլեմների լուծմանը: Ներկայումս ՄԺՀ-ն մասնակցում է ՄԱԿ-ի և մի շարք միջազգային այլ կազմակերպությունների գործունեությանը: Խաղաղասեր արտաքին քաղաքականության շնորհիվ հանրապետությունն արժանի հեղինակություն է նվաճել: Միայն վերջին տարիներին ՄԺՀ-ն դիվանագիտական հարաբերություններ է հաստատել երկու տասնյակից ավելի պետությունների հետ: ՄԺՀ-ի արտաքին քաղաքականության մեջ կարևոր տեղ են գրավում Ասիայի մայր ցամաքի անվտանգության հարցերը: Մոնղոլիայի կառավարությունը պաշտպանում է Ասիայում կոլեկտիվ անվտանգության սիստեմի ստեղծման սովետական կառավարության առաջարկությունը: Ցեդենբալի նախաձեռնությամբ նա մայր ցամաքի պետությունների հետ տարբեր մակարդակներում ակտիվորեն երկկողմ կոնսուլտացիաներ է անցկացնում այդ հարցի շուրջը:

Յու. Ցեդենբալի գործունեությունն անխզելիորեն կապված է ՄԺՀ-ի և ՄԺՀԿ-ի պատմության հետ: Սկսած քառասնական թվականներից՝ Մոնղոլիայում սոցիալիզմի կառուցմանն ուղղված բոլոր միջոցառումների մշակմանն ու իրականացմանը նա ցույց է տվել ամենաակտիվ ու եռանդուն մասնակցություն: Սովետական ժողովուրդն ուրախանում է մոնղոլ ժողովրդի աննախադեպ հաջողություններով և բարձր գնահատում սոցիալիզմի կառուցման և երկրի բարգավաճման գործում նրա լավագույն զավակի՝ Յումժագիյն Ցեդենբալի խոշոր ծառայությունները: Մեր մարդիկ խորապես համոզված են, որ նա կշարունակի իր բեղմնավոր գործունեությունը՝ հանուն եղբայրական Մոնղոլիայի հետագա ծաղկման ու բարգավաճման, ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների հետ հետագա բազմակողմանի համագործակցության ամրապնդման, աշխարհում խաղաղության ամրապնդման:

Յու. Ցեդենբալը Սովետական Միության մեծ բարեկամն է: Նա բազմիցս այցելել է մեր երկիրը, գլխավորել ՍՄԿԿ XX—XXV համագումարների ՄԺՀԿ պատվիրակությունը, անկեղծորեն ուրախացել մեր ժողովրդի ձեռք բերած հոյակապ նվաճումներով, դարձել սովետական հասարակարգի զարգացման փորձը Մոնղոլիայի պայմաններում տարածելու ջատագով:

Կ. Ա. ՂԱԶԱՐՅԱՆ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՊՐԵԼԱԿԵՐՊԻ ՎԵՀՈՒԹՅՈՒՆԸ

## Վերածնության ճանապարհին

(ՍՈՑԻՈԼՈԳԻԱԿԱՆ ՀԵՏԱԶՈՏՈՒԹՅԱՆ ՄԻ ՔԱՆԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐ)

**Ա. Պ. ՀԱՅՐԻՅԱՆ**
Բժշկական գիտությունների
դոկտոր

Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո սկսվում է աշխարհով մեկ ցրված, օտարության մեջ դեգերող հայերի վերադարձը հայրենիք— Հայկական ՍՍՀ: Հայրենադարձների թիվը Սովետական Հայաստանում այժմ անցնում է 200 հազարից. նրանք եկել են տարբեր տարիներին, տարբեր վայրերից— Իրանից, Սիրիայից, Լիբանանից, Բուլղարիայից, Ռումինիայից, Հունաստանից, Կիպրոսից, Եգիպտոսից, ԱՄՆ-ից, Ֆրանսիայից և այլ երկրներից: Նրանց մեջ կան ինչպես խոշոր արդյունաբերական քաղաքների, նույնպես և գյուղական վայրերի բնակիչներ:

Ըստ զբաղմունքի և հասարակական խմբերի, հայրենադարձները մեծ մասամբ բանվորներ են, զանազան մասնագիտության վարպետներ, արհեստավորներ ու ծառայողներ, իսկ որոշ մասը՝ տարբեր բնագավառների մտավորականներ: Գյուղական բնակչության շրջանում գերակշռում են գյուղացի բատրակները, կան նաև որոշ թվով նախկին հողատերեր: Աշխատելով արտադրության տարբեր բնագավառներում, կոլտնտեսային ու սովխոզային դաշտերում, ինչպես նաև գիտության ու կուլտուրայի տարբեր ասպարեզներում, նրանք մասնակցում են հանրապետության տնտեսական, հասարակական, կուլտուրական կյանքին, աջակցում նրա հետագա զարգացմանն ու բարգավաճմանը: Հայրենադարձ հայերի նորոգ կյանքի, կենցաղի ու աշխատանքի պայմանների, իրենց հայրենիքի կառուցման վեհ գործին նրանց ակտիվ մասնակցության մասին բավական բան է գրված, սակայն դեռևս կոնկրետ ուսումնասիրված և հանգամանորեն լուսաբանված չէ այդ երևույթի սոցիալ-հիգիենիկ առումը, որը շատ կարևոր է: Ելնելով դրանից և հենվելով գյուղաբնակ հայրենադարձների շրջանում մեր երկար տարիների աշխատանքային փորձի տվյալների վրա, մտածեցինք բացահայտել, օբյեկտիվորեն ներկայացնել հայրենադարձ հայ ընտանիքների կյանքի պայմանները նախկին բնակավայրերում, մինչև հայրենիք վերադառնալը և ապա՝ Սովետական Հայաստանում:

Տվյալ ուսումնասիրության համար մշակել ենք վիճակագրական հատուկ ձև՝ «Քարտ՝ Հայկական ՍՍՀ հայրենադարձ գյուղական բնակչի ընտանիքի սոցիոլոգիական ուսումնասիրության». հետազոտության միավոր է ընդունվել ընտանիքը, քանի որ այն լավագույն ձևով կարող է արտահայտել բնակչության սոցիալ-տնտեսական կյանքի ամենաբնորոշ կողմերը, դրսևորել ժողովրդի կրթության ու կուլտուրայի մակարդակը, նրա սովորույթները...

Ինչպես նշեցինք, մեր ջանքերի բուն նպատակն է կոնկրետ ուսումնասիրության միջոցով հայտնաբերել ու ստացված փաստացի նյութերի համեմատական վերլուծությամբ ցույց տալ հայրենադարձ հայ գյուղաբնակի կենսապայմաններն այժմ ու մինչև հայրենիք վերադառնալը: Մենք ուսումնասիրել ենք հիմնականում Արարատյան դաշտավայրի— Արարատի, Արտաշատի, Աշտարակի, Մասիսի, Էջմիածնի, Աբովյանի, ինչպես և Հրազդանի շրջանների գյուղերում բնակվող հայրենադարձ ընտանիքների պայմանները: Ուսումնասիրված որոշ գյուղերում բնակչության հիմնական մասը հայրենադարձներ են: Մեզ հաջողվեց հավաքել ծրագրով նախատեսված վիճակագրական նյութը՝ 3.060 ընտանիքներում (պլանավորված 3.000-ի փոխարեն): Ուսումնասիրությամբ ընդգրկված ընտանիքների անդամների ընդհանուր թիվը հասնում է 19.249-ի, որոնցից 11.705-ը՝ երեխաներ: Այդ բավական մեծածավալ աշխատանքում մեզ անհրաժեշտ օգնություն ցույց տվին տեղական իշխանությունները և բուժաշխատողները: «Քարտերը» հիմնականում լրացրել են բժիշկները, իսկ առանձին դեպքերում նաև միջին բուժաշխատողները: Նախատեսված աշխատանքը մասսայաբար սկսելուց առաջ բոլոր տեղերում փորձնականորեն լրացվեցին փոքրաթիվ քարտեր, ստուգվեց դրանց լրացման որակը, և երբ համոզվեցինք, որ աշխատանքը տեղերում կատարվում է ինչպես հարկն է, այդ ժամանակ միայն մասսայականորեն սկսեցինք ուսումնասիրությունն առանձին բնակավայրերում: Մինչև հարցաթերթիկների լրացնելը տեղերում, բնակչության շրջանում նս տարվել է համապատասխան բացատրական աշխատանք այն մասին, թե ի՞նչ նպատակով են հավաքվում այդ տվյալները, նշելով, մասնավորապես, որ աշխատանքն ամբողջովին գիտական նպատակ ունի, և որ ստացվելիք որոշ հետևություններ կօգնեն համապատասխան կազմակերպություններին ու մարմիններին՝ բարելավելու ուսումնասիրվող ընտանիքների բնակարանային, կենցաղային ու հիգիենիկ պայմանները, բավարարելու նրանց կուլտուր-կենցաղային աճող պահանջները: Հետագայում համոզվեցինք, որ նախնական-բացատրական այդ աշխատանքը շատ կարևոր էր և մեծ դեր խաղաց ծրագրված հետազոտությունը հաջող անցկացնելու, ժամանակին ավարտելու համար: Միայն բացառիկ դեպքերում էին առանձին ընտանիքներ հրաժարվում պատասխանել հարցաթերթիկի հարցերին: Հիմնականում մեծ գոհունակությամբ, նույնիսկ նկատելի ոգևորությամբ էին լրացնում հարցաթերթիկները, հաճախ, իրենց նախաձեռնությամբ, տալիս ավելի մանրամասն բացատրություններ, երբեմն էլ նշում իրենց անցյալ կյանքին վերաբերող հետաքրքրական փաստեր: Ընտանիքների գլխավորներից ոմանք, հիմնականում մեծահասակներ, հիշում էին իրենց անցյալը և, համեմատելով, ճիշտ գնահատում ներկա կենսապայմանները:

Մեզ մոտ կան շատ քարտեր, որոնք պարունակում են դրանք լրացնողների երախտագիտության ջերմ խոսքերը, ցանկություններն ու բարեմաղթությունները՝ ուղղված սովետական մեր հայրենիքին:

Քարտը, որը կազմված է 60 հիմնական և 300-ից ավելի ենթահարցերից, լրացվել է յուրաքանչյուր ընտանիքում, մեծ մասամբ ընդգծման միջոցով: Հարցաթերթիկները հիմնականում լրացվել են անանուն, որոշ դեպքերում, կամովին, նշվել են ազգանունները:

Հարցերի միջոցով նախ պարզվել է տվյալ ընտանիքի ապրելավայրը նախկինում և այժմ, Հայկական ՍՍՀ տեղափոխվելուց հետո: Վերջին ցուցանիշը բաժանված է հինգ ժամկետահատվածների. հայրենադարձներ, որոնք Հայկական ՍՍՀ-ում արդեն ապրում են մինչև երեք տարի, այնուհետև՝ 4—5, 6—10, 11—20, 21 և ավելի տարիներ: Հաջորդող հարցերի միջոցով որոշվում են գյուղական բնակչի ընտանիքի գլխավորի հասակա-սեռային կազմը, հասարակական խումբը, աշխատանքի բնույթը, կրթության մակարդակն այժմ և անցյալում: Մի շարք հարցերի միջոցով որոշվում է ընտանիքի կազմը, նրա անդամների թիվը, թոշակառուների առկայությունն այժմ և անցյալում: Երեխաների թվին վերաբերող հարցին հաջորդում է այն, թե, համաձայն իրենց հասակի, որտե՞ղ են հաճախել և հաճախում երեխաները— մսուր-մանկապարտեզ, դպրոց, ինչպես նաև բարձրագույն ու միջնակարգ ուսումնական հաստատություններ: Այնուհետև հարցաթերթիկի միջոցով պարզաբանվում է՝ քանի՞ անուն թերթ ու ամսագիր է ստանում ընտանիքը, գրագետների թիվը ընտանիքում այժմ և նախկինում: Հարցերի միջոցով ջանացել ենք հատկապես պարզել առողջապահության գործի դրվածքը անցյալում և այժմ: Այսպես, բուժսպասարկմանը վերաբերող հարցերի միջոցով որոշվում է, թե ինչպիսի՞ բուժ-հիմնարկություններ են եղել գյուղում անցյալում և կան այժմ, ինչպես նաև դրանց միջին հեռավորությունը ապրելատեղից: Այնուհետև պարզել ենք, թե ինչպիսի՞ պրոֆիլակտիկ պատվաստումներ են ստացել ընտանիքի անդամները զանազան սուր վարակիչ հիվանդությունների դեմ, մինչև Հայկական ՍՍՀ տեղափոխվելը, հաճախո՞ւմ էր նրանց բժիշկը նախկինում, գյուղի բնակիչների շրջանում բուժաշխատողները տանո՞ւմ էին բացատրական, սանիտարա-լուսավորչական աշխատանք:

Հարցաթերթիկում ընտանիքի սանիտարահիգիենիկ պայմանները լուսաբանվում են այնպիսի հարցերի միջոցով, ինչպես՝ բնակարանային պայմանները, սենյակների թիվը, ընտանիքի յուրաքանչյուր անդամի բնակելի տարածության չափը, կոմունալ հարմարությունները: Ժամանակակից ինչպիսի՞ կենցաղային տեխնիկա է օգտագործվում, ինչպես նաև սեփական ավտոմեքենայի առկայությունը և այլն: Նման բովանդակությամբ հարցերը նս վերաբերում են

և՛ անցյալին, և՛ ներկային: Հարցերի միջոցով լուսաբանվում են նաև ընտանիքի նյութական պայմանները, նրա բյուջեն անցյալում և այժմ:

Թերթիկի կարևոր հարցերից է այն, թե ինչպե՞ս է գնահատում հայրենադարձն իր կյանքի պայմաններն այժմ և մինչև Սովետական Հայաստան տեղափոխվելը, իր կարծիքով, ի՞նչ է անհրաժեշտ ընտանիքի պայմաններն առավել բարելավելու համար: Այնուհետև պարզվում է ընտանիքի անդամների մասնակցությունը ընտրական մարմիններում՝ Հայկական ՍՍՀ-ում և արտասահմանյան երկրներում, ինչպես նաև ընտանիքի գլխավոր անդամը, կամ մյուսները հանրօգուտ աշխատանքի համար ստացե՞լ են կառավարական պարգևներ Հայկական ՍՍՀ-ում: Հարցազրույցի վերջին հարցն այն է, թե հայրենադարձը բոլորից բարձր ինչն է գնահատում՝ ապրելով Հայկական ՍՍՀ-ում, սոցիալ-տնտեսական նոր պայմաններում:

Աշխատանքի հաջորդ փուլում ժողոված վիճակագրական ողջ նյութը ենթարկվել է փորձագիտական գնահատման. որոշվել է յուրաքանչյուր քարտի լրացման որակն ու ճշգրտությունը: Այնուհետև ստացված 3.060 քարտերը հանձնվել են էլեկտրոնային հաշվիչ կենտրոն, վիճակագրական մշակման: Վիճակագրական ողջ նյութն ընդգրկված է հինգ ամփոփիչ և 35 թեմատիկ աղյուսակներում, 34 դիագրամներում: Վիճակագրական նյութի վերլուծմամբ հնարավոր եղավ ի հայտ բերել դրանց որակական կողմը, տալ այդ թվական ցուցանիշների պարունակած հասարակական տարբեր երևույթների օբյեկտիվ պատկերը:

Համաձայն մեր աշխատանքային ծրագրի, սկզբում պարզված է հետազոտված ընտանիքների գլխավորների հասակա-սեռային կազմը, որը կարևոր նշանակություն ունի ինչպես ներկայացված, նույնպես և նման այլ ուսումնասիրություններում:

3.060 ընտանիքների գլխավոր անդամների 92,8 տոկոսը (2.840 հոգի) տղամարդիկ են, 7,2-ը (220)՝ կանայք: Հայրենադարձների շրջանում յուրաքանչյուր ընտանիք միջին հաշվով կազմված է 6—7 հոգուց, ընդ որում 4—5՝ երեխաներ. ըստ հասարակական խմբերի, ուսումնասիրված ընտանիքներում գլխավոր անդամները մինչև հայրենադարձությունը ներկայացնում էին հետևյալ պատկերը— բատրակներ՝ 73 տոկոս, բանվորներ՝ 16,9, արհեստավորներ՝ 4,2, ծառայողներ՝ 2,2, հողատերեր՝ 2,8, առևտրականներ՝ 0,5, թոշակառուներ՝ 0,4 տոկոս:

Ներկայումս նրանց գլխավոր անդամների 15,6 տոկոսը թոշակառուներ են, 45 տոկոսը՝ կոլտնտեսականներ, 33,9-ը՝ բանվորներ, 5,5-ը՝ ծառայողներ: Ըստ զբաղմունքի, մինչև հայրենադարձությունը, հետազոտված ընտանիքներում աշխատող գլխավոր անդամների 74,2 տոկոսը եղել են հողագործներ, 3,9-ը՝ անասնապահներ, 2,7-ը՝ այգեգործներ, 0,1-ը՝ գյուղատնտեսներ. «այլ զբաղմունք» նշել է 9,2, «չեմ աշխատել»՝ 9,9 տոկոսը: Այժմ նրանց 56,9 տոկոսը հողագործներ են, 5,1-ը՝ անասնապահներ, 5,3-ը՝ մեխանիզատորներ, 1,8-ը՝ բրիգադավարներ: 0.5 տոկոսը կոլտնտեսություններում և սովխոզներում աշխատում են որպես գյուղատնտեսներ ու անասնաբույժներ, 12,2 տոկոս են կազմում «այլ զբաղմունքներ» նշողները:

Համաձայն մեր ստացած տվյալների, մինչև Սովետական Հայաստան վերադառնալը, ուսումնասիրված ընտանիքներում այսպիսին էր գլխավոր անդամների կրթական մակարդակը. անգրագետներ— 59 տոկոս (այժմ՝ 21,7), տարրական կրթություն ունեցողներ՝ 34,8 (այժմ՝ 49,8), միջնակարգ՝ 1,2 (այժմ՝ 6,9), միջնակարգ-մասնագիտական՝ 0,2 (այժմ՝ 2,4), բարձրագույն՝ 0,3 տոկոս (իսկ այժմ՝ 1,1):

Եթե անցյալում ուսումնասիրված ընտանիքներում դպրոցական հասակի երեխաների ընդհանուր թվի 19,4 տոկոսն էր հաճախում դպրոց, ապա այժմ՝ 86,0 տոկոսը: Տեխնիկումներում սովորում էին, համապատասխանաբար՝ 0,1 և 34,2, բուհերում՝ 0,4 և 10,7 տոկոսը: Ինչպես ցույց են տալիս տվյալները, մինչև հայրենադարձությունը ուսումնասիրված ընտանիքների անդամների 0,2 տոկոսն էր ստանում թոշակ կամ որևէ նպաստ, իսկ այժմ՝ 52,6 տոկոսը: Իրենց նախկին բնակավայրում այդ ընտանիքների 95,3 տոկոսը չէր ստանում ոչ մի օրաթերթ կամ պարբերական հանդես, իսկ այժմ՝ Հայկական ՍՍՀ-ում, նույն գյուղաբնակ ընտանիքների միայն 1,5 տոկոսը չի ստանում: Անհամեմատ տարբեր է նաև բուժսպասարկման վիճակը նախկինում և այժմ: Հայրենադարձների նախկին բնակավայրերում հիվանդանոցներով ապահովված է եղել 8,2, այժմ 35,3 տոկոսը, բժշկական ամբուլատորիաներով՝ 6,6 և 87, բուժական կետերով՝ 2,7, այժմ՝ 12,4, ծննդատներով՝ 2,7 և 40,9, կաթնախոհանոցներով՝ 1,7 և 50, դեղատներով ու դեղատնային կետերով՝ 5,4 և 79,9, այլ բուժհիմնարկներով՝ 2,8 և 6,5 տոկոսը:

Համաճարակային հիվանդությունների դեմ կատարված պրոֆիլակտիկ պատվաստումների ցուցանիշները բացահայտում են, որ ուսումնասիրված ընտանիքների անդամների 63,4 տոկոսն է պատվաստվել (հիմնականում արձանագրված է միայն ծաղկի դեմ), 14,1 տոկոսը նշել է, որ չի հիշում: Նախկինում բնակիչների 12,9



տոկոսի տներն են հաճախել բժիշկներ և բուժաշխատողներ, բնակչության շրջանում տարվող բացատրական սանիտարա-լուսավորական աշխատանքի մասին նշել են հարցվողների միայն 3,5 տոկոսը: Հարցաթերթիկի որոշ պատասխաններ ցույց են տալիս, թե կուլտուր-կենցաղային քանի հիմնարկություն կար իրենց նախկին բնակավայրերում: Դպրոցների առկայության մասին նշել են հարցվողների 48,7, մանկապարտեզների՝ 0,2, մանկամսուրների՝ 0,1, գրադարանների՝ 0,3, խանութների՝ 18,7, բաղնիքների՝ 0,1 և նման այլ հաստատությունների մասին՝ 0,2 տոկոսը: Ընտանիքների 31,7 տոկոսը նշել է, որ այդ գյուղերում չի եղել կուլտուր-կենցաղային և լուսավորական ոչ մի հաստատություն: Իսկ ներկայի համար այդ ընտանիքների 88,6 տոկոսը նշել է մսուրների, 89,7-ը՝ մանկապարտեզների, 97,8-ը՝ բաղնիքների, 97,4-ը՝ ակումբների, 62,2-ը՝ այլ հիմնարկությունների առկայության մասին:

Մինչև հայրենադարձությունը մեր ուսումնասիրած ընտանիքների բնակարանային պայմանները բնութագրվում էին հետևյալ կերպ. սեփական բնակարաններում ապրում էին ներկայացված ընտանիքների 75,6, վարձու տներում՝ 4,9, հանրակացարաններում՝ 0,1 տոկոսը: Այժմ այդ նույն ընտանիքների 60,8 տոկոսն ապրում է սեփական բնակարաններում, 19,8-ը՝ առանձին բնակարաններում՝ 19,3-ը՝ կոմունալ բնակարաններում, 0,1-ը՝ հանրակացարաններում:

Հետաքրքրական են և ուսումնասիրության արդյունքները կոմունալ-կենցաղային այլ՝ ջրամատակարարման, բաղնիքի, գազապահովվածության, կենցաղային տեխնիկայով հագեցվածության առումով. թվական այդ տվյալները բացահայտում են ներկա պայմանների բարվոքությունն ու առավելությունը: Սեփական ավտոմեքենաներ ունեն ուսումնասիրված գյուղաբնակ ընտանիքների 12,9 (անցյալում՝ 0,8) տոկոսը:

Հարցման մասնակիցների 97,8 տոկոսն իրենց բնակ-կենցաղային պայմաններն ու ընտանեկան փոխհարաբերությունները գնահատել են «լավ», իսկ 2,2-ը՝ «վատ»: Մինչև հայրենադարձությունը նույն ընտանիքների անդամների 6,3 տոկոսն է գնահատել «լավ», 20,8-ը՝ «բավարար», 64,1-ը՝ «ծանր», 8,8 տոկոսը՝ «շատ ծանր»:

Ի՞նչ է անհրաժեշտ ներկա բնակ-կենցաղային պայմանների բարելավման համար հարցին ուսումնասիրած ընտանիքների 7,3 տոկոսը նշել է՝ բնակարանային պայմանների, 8,2-ը՝ նյութական պայմանների բարելավում, 18,6-ը՝ ժամանակակից կենցաղային տեխնիկայի և սեփական ավտոմեքենայի ձեռքբերում, 36,4-ը՝ երեխաների ապագայի կարգավորում (հիմնականում նկատի է առնվում նրանց բարձրագույն ուսումնական հաստատություն ընդունվելը), 8,8 տոկոսը՝ «այլ պահանջներ»:

Հավաքված վիճակագրական նյութը ցույց տվեց, որ մինչև հայրենադարձությունը նախկին բնակավայրերում ուսումնասիրված ընտանիքների անդամներից ոչ ոք իրենց բնակված երկրում չի ընտրվել պետական որևէ ընտրական օրգանում: Մինչդեռ այժմ նույն կոնտինգենտից 520 հայրենադարձներ ընտրվել են Հայկական ՍՍՀ-ի տարբեր ընտրական մարմիններում. կան նաև մեր հանրապետության Գերագույն սովետի դեպուտատներ: Ուսումնասիրված ընտանիքների անդամների 28,2 տոկոսը՝ 862 հոգի, ստացել են ՍՍՀՄ շքանշաններ, մեդալներ, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի պատվոգրեր:

Ի՞նչն եք բոլորից բարձր գնահատում, ապրելով Հայկական ՍՍՀ-ում, սոցիալ-տնտեսական նոր պայմաններում հարցին նույն կոնտինգենտի 61,6 տոկոսը պատասխանել է՝ «ընտանիքի կարիքների լրիվ ապահովվածություն», 52,8-ը՝ «լավ հեռանկարներ և լավագույն ապագա երեխաների համար», 86,4-ը՝ «սոցիալ-տնտեսական տեսակետից բարեհաջող պայմաններ», 6,3-ը՝ «առանձնապես ոչինչ չեմ զգում», 2,4-ը՝ գրառել են դրական մտքեր ու խոսքեր, 0,4-ը՝ զանազան մտքեր, դիտողություններ:

Ինչպես ցույց տվեց ստացված և ամփոփված փաստացի նյութը, գյուղաբնակ հայրենադարձների կյանքը Սովետական Հայաստանի պայմաններում անընդհատ փոփոխվել, բարելավվել է. հատկապես վերջին տարիներս տեղի են ունեցել տնտեսական ու կուլտուրական մեծ վերափոխումներ, որոնց արգասիքը կենսապայմանների հետագա բարելավումը, բազմակողմանի զարգացումն ու բարգավաճումն է: Սովետական Հայաստանում բնակվող գյուղաբնակ հայրենադարձների ընտանիքն այժմ նյութապես լրիվ ապահով է, առավել կուլտուրական, ունի կենցաղի համար անհրաժեշտ պարագաներ, ինչպես և հնարավորություն՝ ձեռք բերելու իրեն անհրաժեշտ նորանոր շատ պարագաներ, կազմակերպելու իր կյանքը՝ ժամանակակից աճող պահանջներին համապատասխան:

Բժշկական սպասարկման և առողջության պահպանման տեսակետից, հայրենադարձ գյուղաբնակների նախկին բնակավայրի և ներկա պայմանների միջև ակնբախ է անհամեմատ ավելի մեծ տարբերություն. այնտեղ, ինչպես հարկն է, կազմակերպված չի եղել սանիտարահիգիենիկ և հակահամաճարակային ծառայու-

թյունը, որը հետևանք էր բուժ-պրոֆիլակտիկ հիմնարկությունների մեծ հեռավորության կամ դրանց բացակայության: Մեր երկրում առողջապահության զարգացման ելակետն այն է, որ մարդու առողջության գրավականը ո՛չ միայն ֆիզիկական խանգարումների բացակայությունն է, այլև սոցիալական բարեհաջող պայմանների առկայությունը: Կարելի է ասել, որ մեր ուսումնասիրած ընտանիքների անդամների մեծ մասն այնտեղ զուրկ է եղել այն պայմաններից, որպիսիք ընձեռվել են նրան Սովետական Հայաստան գալուց, սոցիալ-տնտեսական նոր միջավայրում բնակություն հաստատելուց հետո: Այսպիսով, հայրենադարձ ամեն մի ընտանիք, դրա յուրաքանչյուր անդամ անհամեմատ բարենպաստ պայմաններում է գտնվում նաև առողջության պահպանման տեսակետից:

Հանրապետության տեղի բնակիչների և հայրենադարձ գյուղաբնակների կենսապայմանների համեմատական վերլուծությունը ցույց է տալիս, որ այժմ տարբերություն չկա նրանց կյանքի, բնակ-կենցաղային, տնտեսական ու հասարակական ասպարեզներում: Այդ հանգամանքը բնական է և բխում է սոցիալիստական հասարակարգի բուն էությունից, աստիճանաբար վերանում են սոցիալական տարբեր խմբերի կենսապայմանների տարբերությունները: Միաժամանակ անհրաժեշտ է նշել, որ հայրենադարձ գյուղաբնակների կենցաղի պայմաններում դեռևս կան չլուծված կամ մասամբ լուծված զանազան հարցեր, որոնց վրա պետք է հատուկ ուշադրություն դարձնեն սովետական, տնտեսական ու հասարակական համապատասխան կազմակերպությունները:

Ուսումնասիրության արդյունքները, փաստական ողջ նյութը հավաստի ցույց են տալիս սոցիալիստական հասարակարգի անվիճելի առավելությունը, բացահայտում, թե ինչ կարող է տալ առաջավոր սոցիալիստական հասարակարգը աշխատավոր մարդուն, նրա ընտանիքին, ինչպիսի հնարավորություններ կարող է ընձեռել նրա բազմակողմանի զարգացման, կուլտուրական վերածննդի ու ստեղծագործ աշխատանքի համար:

# ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԻ ՄԱՍԻՆ

## *Արդիական պրոբլեմի գիտական արծարծումը*

Մեր երկիրն ապրում է զարգացած սոցիալիստական հասարակարգի էտապում: Այստեղից էլ՝ կոմունիստական արտադրաեղանակի այդ փուլի գիտական գնահատման ու ընդհանրացման, էական գծերի ու զարգացման հիմնական օրինաչափությունների և տենդենցների բացահայտման կարևորությունը, որը և կանխորոշում է պրոբլեմի արդիականությունը:

Զարգացած սոցիալիզմի տեսական հարցերը միայն վերջերս են ուսումնասիրվում և ընդհանրացվում: Եթե զարգացած սոցիալիստական հասարակարգի մասին ռուսերեն լույս են տեսել բազմաթիվ աշխատություններ, ապա մայրենի լեզվով՝ գրախոսվող աշխատանքն առաջինն է:

Պրոֆ. Ս. Բաղալյանը երկար տարիներ զբաղվում է սոցիալիզմի քաղաքատնտեսության սոցիալ-տնտեսական առանձին պրոբլեմների ուսումնասիրությամբ: Զարգացած սոցիալիզմի էկոնոմիկայի պրոբլեմների ուսումնասիրությունը դրանց անմիջական ու օրգանական շարունակությունն է կազմում: Գրախոսվող աշխատությունը[1] բաղկացած է վեց գլուխներից, որոնք մեկը մյուսի տրամաբանական զարգացումն են:

Առաջին գլուխը նվիրված է հասուն սոցիալիզմի փուլի վերլուծությանն ու բնութագրմանը: Սոցիալ-տնտեսական գրականության մեջ մինչև այսօր էլ բանավեճ է ընթանում այդ փուլի գնահատման ու բնութագրման շուրջ: Պրոֆ. Բաղալյանը, տեղյակ լինելով այդ պրոբլեմի մեկնաբանման տեսակետներին, ելակետ ունենալով դրա շուրջ հատկապես Վ. Ի. Լենինի մեթոդոլոգիական նշանակություն ունեցող խիստ արժեքավոր դրույթները և հենվելով կուսակցության համագումարների և ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների համապատասխան որոշումների վրա, պետք է ասել, որ հիմնականում ճիշտ է վերլուծել ու բնութագրել զարգացած սոցիալիզմի փուլը: Հեղինակն իրավացիորեն շեշտում է, որ սոցիալիզմի զարգացման էտապները բնորոշելիս սոցիալիզմը և կոմունիզմը պետք է դիտել ոչ թե որպես տարբեր ֆորմացիաներ, այլ հասարակա-տնտեսական կոմունիստական միասնական նույն ֆորմացիայի զարգացման տարբեր փուլեր, տնտեսական հասունության երկու տարբեր աստիճաններ (էջ 13):

Մեթոդոլոգիական տեսակետից նա ճիշտ է վարվում, երբ անդրադառնում է զարգացած սոցիալիզմի առանձնացման (սահմանազատման) ցուցանիշների սիստեմի և դրանում հիմնական ցուցանիշի հարցին: Կարծում ենք, որ հեղինակն իրավացի է, երբ այդպիսի գլխավոր չափանիշ կամ ցուցանիշ է համարում սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի իրացման աստիճանը (էջ 14), իսկ մյուս ցուցանիշներից առանձնացնում սոցիալիզմին իմանենտ նյութատեխնիկական բազայի առկայությունը, սոցիալիստական արտադրահարաբերությունների հետագա զարգացումն ու կատարելագործումը, սոցիալիզմի տնտեսական օրենքների գործողության շրջանակները, հասարակության սոցիալական միատարրության աստիճանը և այլն: Աշխատության մեջ նշվում է, որ «Սոցիալիզմը իր հասունացման տարբեր էտապներում պահպանելով իր հիմնական հատկանիշները, գտնվում է անընդհատ զարգացման ու կատարելագործման պրոցեսում» (էջ 17—18), որ զարգացած սոցիալիզմը, «...կանգնում է սեփական հիմքերի վրա, դրանով իսկ ավելի լրիվ արտահայտելով իրեն բնորոշ գծերն ու հատկությունները» (էջ 17):

Աշխատության երկրորդ գլխում շարադրվում է հասուն սոցիալիզմի գլխավոր տնտեսական խնդիրը՝ իրեն իմանենտ նյութատեխնիկական

---

1 *Ս. Ա. Բաղալյան*, Զարգացած սոցիալիզմի էկոնոմիկայի հիմնական գծերի մասին, *Երևանի Համալսարանի Հրատարակչություն, 1975, 137 էջ:*

բազայի ստեղծումը, որը միաժամանակ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցումն է: Ընդ որում, աշխատության մեջ շեշտվում է այն ճիշտ միտքը, որ կոմունիզմի նյութատեխնիկական բազան ձևավորվում ու ամրապնդվում է սեփական հիմքի՝ հասուն սոցիալիզմի նյութատեխնիկական բազայի զարգացման ու կատարելագործման հիմքի վրա, գիտա-տեխնիկական հեղափոխության արագ զարգացման պայմաններում: Վերջապես, հասուն սոցիալիստական հասարակարգում կոմունիզմի նյութատեխնիկական բազան ստեղծվում է էկոնոմիկայի վերելքի ինտենսիվ մեթոդների դերի էական մեծացման պայմաններում:

Այդ գլխի ուշագրավ հատվածներից է հասարակական արտադրության երկու ստորաբաժանումների զարգացման տեմպերի հարաբերակցության վերլուծությունը: Հանգամանորեն, մարքսիզմ-լենինիզմի դիրքերից շարադրելով հասարակական արտադրության երկու ստորաբաժանման տեմպերի հաըաբերակցության տեղաշարժերը, հեղինակը անդրադառնում է այդ հարցում տեղ գտած սխալ տեսակետներին և եզրակացնում, որ չնայած հասուն սոցիալիստական հասարակարգում հասարակական արտադրության երկու ստորաբաժանումների, արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի զարգացման տեմպերի հնարավոր փոփոխություններին, ընդհանուր օրինաչափությունն այն է, որ «Զարգացած սոցիալիզմի պայմաններում արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի աճի տեմպերի մոտեցումը ո՛չ միայն չի սահմանափակվում, այլև, ընդհակառակն, ավելի է ընդլայնվում և ուժեղացնում արտադրամիջոցների արտադրության առավել աճի տնտեսական օրենքի գործողությունը» (էջ 48): Պետք է նշել, որ հեղինակը հասարակական վերարտադրության այդ բարդ պրոբլեմի հարցերը շարադրել է տեսական բարձր մակարդակով:

Աշխատության երրորդ և չորրորդ գլուխները նվիրված են արտադրահարաբերությունների՝ մասնավորապես սեփականատիրական և բաշխման հարաբերությունների կատարելագործման հարցերին: Հեղինակը տեսական ու մեթոդոլոգիական ճիշտ դիրքերից է մեկնաբանում նշված սոցիալ-տնտեսական բարդ հարցերը: Սեփականատիրական հարաբերությունների զարգացման ու կատարելագործման հիմնական տենդենցը սոցիալիստական սեփականության երկու ձևերի աստիճանական մերձեցումն ու հեռանկարում միասնական կոմունիստական համաժողովրդական սեփականության վերաճելու երկմիասնական դիալեկտիկական պրոցեսն է (էջ 52): Ընդ որում, հանգամանորեն, փաստական տվյալներով ու համոզիչ վերլուծությամբ ցույց են տրված սեփականության երկու ձևերի մերձեցման եղանակներն ու ուղիները, ընդգծված է այդ պրոցեսում պետական համաժողովրդական սեփականության վճռական դերը, բացահայտված է նաև հասարակական արտադրության հանրայնացման մակարդակի բարձրացման և հատկապես գյուղատնտեսության ինդուստրացման նշանակությունը: Առանձնապես ընդգծվում է կոլտնտեսային արտադրության հանրայնացման պրոցեսների ուժեղացման տենդենցը՝ միջկոլտնտեսային և պետական-կոլտնտեսային արտադրական միավորումների, ագրոարդյունաբերական կոմպլեքսների ստեղծման ուղիներով (էջ 58): Աշխատության այդ նույն բաժնում արծարծվում են նաև զարգացած սոցիալիստական հասարակարգում քաղաքի և գյուղի սոցիալ-տնտեսական էական տարբերությունների բնույթի և դրանց աստիճանական հաղթահարման ու վերացման պրոբլեմները:

Հաջորդ գլխում հատկապես քննարկվում են բաշխման հարաբերությունների բնույթը զարգացած սոցիալիզմի պայմաններում: Իրավացիորեն ընդգծվում է այն միտքը, որ, չնայած սպառման հասարակական ֆոնդերի աճման համեմատաբար արագ տեմպերին, հասուն սոցիալիստական հասարակարգում հասարակության անդամների միջև նյութական և հոգևոր բարիքների բաշխման տիրապետող սկզբունքը մնում է բաշխումն ըստ աշխատանքի քանակի և որակի, վերլուծվում են բաշխման հարաբերությունների կատարելագործումը տնտեսական ռեֆորմի կենսագործման պայմաններում: Հատկապես շեշտվում է աշխատավարձի դերի մեծացումը, ընդգծելով այն միտքը, թե նյութական խթանումը պահանջում է, որ աշխատավարձն ամենուրեք լինի վաստակված: Այդ բաժնում հատուկ ուշադրության է արժանի զարգացած սոցիալիզմի ժամանակ համարժեքայնության սկզբունքի շարադրանքը: Հեղինակը ցույց է տալիս, որ խոսքը տվյալ դեպքում վերաբերում է ոչ թե ապրանք-դրամական, այլ բաշխման հարաբերություններին, որը ժամանակին հանճարեղ կերպով նկատել էր Կ. Մարքսը՝ նշելով, որ «յուրաքանչյուր առանձին արտադրող հասարակությունից ետ է ստանում, բոլոր հանուրդներից հետո, ճիշտ նույնքան, որքան ինքը տալիս է նրան»[1]: Ուստի, համարժեքության սկզբունքը տրամաբանորեն բխում է ըստ աշխատանքի քանակի և որակի բաշխման տնտեսական օրենքի գործողությունից, յուրաքանչյուրի աշխատանքի չափի և սպառման

[1] *Կ. Մարքս*, Գոթայի ծրագրի քննադատությունը, *1955, էջ 16:*



չափի նկատմամբ համընդհանուր տնտեսական վերահսկողությունից (էջ 87):

Աշխատության մեջ յուրովի են վերլուծվում համարժեքայնության հարաբերությունների բնույթը տնտհաշվարկային ընդհանուր համակարգի մեջ, սոցիալիստական պետության ու ձեռնարկությունների, ինչպես նաև արդյունաբերության և կոլտնտեսային արտադրության միջև: Իրավացի է հեղինակը, երբ նշում է, թե պետության և ձեռնարկության միջև բացարձակ համարժեքայնություն լինել չի կարող, որ պետությունը, իբրև սեփականատեր, հավելյալ արդյունքի մի մասը անհատույց կենտրոնացնում է պետական բյուջե և օգտագործում իր հայեցողությամբ: Ինչ վերաբերում է պետության և կոլտնտեսությունների հարաբերություններին, ապա այստեղ անհրաժեշտ է համարժեքային հարաբերություն, որը երկար ժամանակ կոլտնտեսային արտադրանքի շատ տեսակների ցածր գների հետևանքով էապես խախտվել էր:

Աշխատության վերջին երկու գլուխները նվիրված են սոցիալիզմի տնտեսական օրենքների օգտագործման, ինչպես նաև էկոնոմիկայի կառավարման կատարելագործման հարցերին: Պրոֆ. Ս. Բադալյանը զարգացած սոցիալիզմի պայմաններում էկոնոմիկայի պլանային կառավարման պրակտիկայում տնտեսական օրենքների արդյունավետ օգտագործման պայման է համարում սիստեմային ու կոմպլեքսային մոտեցումը: Հանգամանորեն վերլուծվում են նաև տնտեսական շահերի և դրանց միջև հակասությունների բնույթը զարգացած սոցիալիզմի պայմաններում: Այդ բաժնում ուշադրության է արժանի ժողովրդական տնտեսության կառավարման (պլանավորման) դիրեկտիվ ու տնտեսական մեթոդների սահմանների և փոխհարաբերության հարցերը: Ճիշտ է հեղինակի այն մոտեցումը, որ, չնայած սոցիալիստական էկոնոմիկայում առաջատար ու որոշիչ դերը պատկանում է դիրեկտիվ պլանավորմանը, սակայն այդ չի նշանակում, թե դիրեկտիվ պլանավորումը և ապրանքա-դրամական հարաբերությունները հակադրվում են մեկը մյուսին, որ զարգացած սոցիալիստական էկոնոմիկայում ժողովրդական տնտեսության կառավարման պրոբլեմը հանգում է կենտրոնացման ու ապակենտրոնացման չափի հարաբերակցության հարցին, որ զարգացած սոցիալիզմի էտապում էկոնոմիկայի պլանային զարգացման գիտական մակարդակի կատարելագործման պրոցեսում առաջնային նշանակություն են ստանում արտադրության վարման տնտեսական մեթոդներն ու լծակները» (էջ 136), որ «էկոնոմիկայի զարգացման ճիշտ պլանավորումը և գիտական կառավարումը պահանջում են ո՛չ թե հակադրել, այլ հմտորեն զուգորդել ու ներդաշնակորեն օգտագործել տնտեսավարման վարչական ու տընտեսական մեթոդները» (էջ 137):

Այսպիսով, մայրենի լեզվով ունենք Զարգացած սոցիալիզմի էկոնոմիկայի հիմնական գծերի մասին առաջին և հաջողված աշխատություն, ոչ մեծ ծավալով, բայց հարուստ բովանդակությամբ, մատչելի շարադրանքով և տրամաբանական կուռ կառուցվածքով: Աշխատությունը գրված է մարքսիզմ-լենինիզմի մեթոդոլոգիական դիրքերից, արտացոլում է Սովետական Միության կոմունիստական կուսակցության տնտեսական քաղաքականությունը:

Ինչ խոսք, գրախոսվող աշխատությունում կան և որոշ թերություններ ու պակասություններ: Այսպես, աշխատության մեջ հստակ ու միասնական մոտեցում չկա զարգացած սոցիալիզմի փուլի ժամանակաշրջանը սահմանազատելու հարցում: Գրքի 4-րդ էջում նշվում է մինչև վաթսունական թվականների վերջերը, իսկ դրանից անմիջապես հետո՝ վաթսունական թվականները: Իհարկե, այդ հարցում տնտեսագիտական գրականության մեջ կան տարբեր մոտեցումներ, բայց ցանկալի էր, որ հեղինակը հետևողականորեն կանգներ միասնական տեսակետի վրա: Ցանկալի էր հստակություն մըտցընել նաև զարգացած սոցիալիզմի և կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման հարաբերակցության հարցում: Աշխատության 26-րդ էջում մեկ այն իրավացիորեն դիտվում է որպես երկմիասնական դիալեկտիկական պրոցես, մեկ էլ նշվում, որ զարգացած սոցիալիզմի ժամանակ պայմաններ են ստեղծվում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար: Հիմնականում տեսական բարձր մակարդակով վերլուծելով ու շարադրելով սեփականատիրական հարաբերությունների կատարելագործման բարդ պրոբլեմը, աշխատության 60-րդ էջում արվում է այն ընդհանրացումը, թե «զարգացած սոցիալիստական հասարակարգի պայմաններում սեփականության պետական համաժողովրդական և կոլտնտեսային-կոոպերատիվ ձևերի մերձեցման և հեռանկարում միաձուլման սոցիալ-տնտեսական բարդ պրոբլեմի աստիճանական լուծման շնորհիվ կոլտնտեսային արտադրությունը տեխնիկական զինվածության մակարդակով, աշխատանքի կազմակերպման ու վարձատրության ձևերով չի տարբերվի պետական ձեռնարկություններից»: Կարծում ենք, որ այդ հարցերի այդպիսի լուծումը լրիվ կենսագործվելու է արդեն կոմունիզմի բարձրագույն փուլի պայմաններում, չնայած դրա լուծման նախադրյալներն իրոք որ ստեղծվում են զարգացած սոցիալիստական հասարակարգում:

Ցանկալի էր, որ բաշխման հարաբերություն-

ների շարադրանքում ավելի որոշակի ու կոնկրետ վերլուծվեին վարձատրության դիֆերենցման ու համահարթման երկմիասնական դիալեկտիկական պրոցեսները և ցույց տրվեր ըսպառման հասարակական ֆոնդերի դերն այդ հարցում: Իրավացի է հեղինակը, երբ նշում է, թե «կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը զուգընթաց կընդլայնվեն ըստ աշխատանքի բաշխման տնտեսական օրենքի գործողության շրջանակները» (էջ 83), սակայն, ցանկալի էր նշվեին այդ պրոցեսի կոնկրետ ձևերը և ուղիները:

Աշխատության մեջ կան և առանձին վրիպումներ: Ընդհանուր առմամբ, ճիշտ վերլուծելով ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերի աճման պրոցեսը և դրանցում կատարված որակական տեղաշարժերը, 24-րդ էջում իններորդ հնգամյակում ժողովրդական տնտեսության բոլոր հիմնական ֆոնդերի սահմանված աճը վերագրվել է հիմնական արտադրաֆոնդերին: Աշխատության 30-րդ էջի 17-րդ տողում բաց է թողնված «հազար» բառը, որի պատճառով 13,5 հազար ավտոմատացված գծի փոխարեն, ստացվել է 13,5 ավտոմատացված գիծ: Անհաջող է շարադրված 20-րդ էջի նախավերջին միտքը և այլն:

Ինչպես նկատում ենք, նշված թերությունները տեսական-մեթոդոլոգիական բնույթ չունեն: Դրանք մասնակի թերություններ են, որոնք առանձին որակ չեն կազմում և չեն նսեմացնում գրախոսվող աշխատության արժանիքները:

Պրոֆ. Բաղալյանի Զարգացած սոցիալիզմի էկոնոմիկայի հիմնական գծերի մասին աշխատության լույսընծայումը օգտակար կարող է լինել ո՛չ միայն տնտեսագետների, այլև ընդհանրապես հասարակագիտությամբ զբաղվողների, ուսանողության և ընթերցող լայն հասարակության համար:

Մ. Հ. ԱԴՈՆՑ
Պրոֆեսոր

**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ**

**ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Մ. Բ., ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե., ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ. (պատասխանատու քարտուղար), ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ս. Կ., ԿՃՈՋՅԱՆ Թ. Գ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս.** (գլխավոր խմբագրի տեղակալ)

Адрес редакции: 375033, Ереван 33. Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 05612 Պատվեր 1632 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 14.100 Գինը 20 կոպ.*

*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 6/IX 1976 թ.*




# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

НОР ԳՐՔԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու, Հ. 6: *«Հայաստան» Հրատ., 1976:*

Վ. Ի. Լենին— Երկերի լիակատար ժողովածու, Հ. 7: *«Հայաստան» Հրատ., 1976:*

Հայ փիլիսոփայության պատմություն: *ԵՊՀ Հրատ., 1976:*

Հայ գրողների դիմանկարներ: *«Հայաստան» Հրատ., 1976:*

Բ. ԱՌԱՔԵԼՅԱՆ— Ակնարկներ հին Հայաստանի արվեստի պատմության: *Ե., ԳԱ Հրատ., 1976:*

Ա. ՎԱՍԻԼԵՎՍԿԻ— Իմ կյանքի գործը: *«Հայաստան» Հրատ., 1976:*

Ռ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— Ստ. Նազարյանցի փիլիսոփայական հայացքները: *«Հայաստան» Հրատ., 1976:*

Մ. ՄԿՐՅԱՆ— Հայ հին գրականության պատմություն: *ԵՊՀ Հրատ., 1976:*

Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— Արժեքի օրենքը և գնագոյացման արդի հարցեր: *«Հայաստան» Հրատ., 1976:*

Պ. ԿԱԲԻՇԿԻՆ, Ի. ՊՈԼՈՒԲՈՅԱՐԻՆՈՎ— Գյուղատնտեսական մելիորացիա և անտառագիտություն: *«Հայաստան» Հրատ., 1976:*

Գ. ՆԻԿՈՂՈՍՅԱՆ— Երեխաների ուսումնա-դաստիարակչական պրոցեսի կազմակերպումը: *«Հայաստան» Հրատ., 1976:*

**В. И. ЛЕНИН**—Уроки Коммуны. Памяти Коммуны. Политиздат, 1976.

**Ю. ШАРАПОВ—Ленин как читатель.** М., Политиздат, 1976.

**П. СИМУШ—Социальный портрет советского крестьянства.** М., Политиздат, 1976.

**Н. МАРКОВ—Социалистический труд и его будущее.** Некоторые проблемы развития труда в условиях научно-технической революции. М., Политиздат, 1976.

**М. БОГДЕНКО, И. ЗЕЛЕНИН—Совхозы СССР.** Краткий исторический очерк (1917—1975). М., Политиздат, 1976.

**В. КОРОБЕЙНИКОВ—Духовное общение, обмен информацией, идеологическая борьба.** М., Политиздат, 1976.

**Мир вокруг нас.** Беседы о мире и его законах. М., Политиздат, 1976.

**А. КАНДРЕНКОВ—Ключевое звено партийного руководства.** М., Политиздат, 1976.

**И. СУХАНОВ—Обычаи, традиции и преемственность поколений.** М., Политиздат, 1976.

**Е. ГУБИН—Аграрно-промышленное кооперирование и управление производством.** М., «Экономика», 1976.

**Е. ЕФИМОВ, В. ШАТРОВ—Повышение эффективности патентной работы.** М., «Экономика», 1976.

**Социалистический образ жизни и современная идеологическая борьба.** Политиздат, 1976.

**РАВЕРА КАМИЛЛА.** Воспоминания (сокр. пер. итал.). Политиздат, 1976.

**А. А. ЛЕБЕДЕВ—Конкретные исследования в атеистической работе.** Политиздат, 1976.

**Наука и нравственность.** Политиздат, 1976.

**Б. Т. ГРИГОРЬЯН—Философия о сущности человека.** Политиздат, 1976.

ԳԻՆԸ՝ 20 Կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՓՈՔՐ ՏՐԱԿՏՈՐՆԵՐ

Մինսկի տրակտորային գործարանի կոնստրուկտորներն ստեղծել են «МТЗ 80»-ից 10 անգամ փոքր հզորությամբ մեքենաների փորձանմուշներ:

Փոքր տրակտորները լայնորեն կօգտագործվեն այգիների, բանջարանոցների ու մեծ տարածությունների մշակման համար: Դրանք դյուրաշարժ են, ունեն ձեռքի կառավարման սիստեմ, կարող են հերկել, ցաքանել, բուկլից անել և տեղափոխել մինչև կես տոննանոց բեռներ:

## ԳՐՊԱՆԻ ՄԱՆՐԱԴԻՏԱԿ

Հիսուն անգամ մեծացնող մանրադիտակ է թողարկել ամերիկյան ֆիրմաներից մեկը: Այն հնարավորություն է ընձեռում կենսաբանին, երկրաբանին, քրեագետին՝ տեղում անցկացնելու անհրաժեշտ հետազոտություններ ու զննումներ: Մանրադիտակն ունի դիտվող օբյեկտը լուսավորող լամպ:

## ՈՒՆԻՎԵՐՍԱԼ ՏՊԱԳՐԱԿԱՆ ԴԱԶԳԱՀ

ԶՍՍՀ «Կովր» արտաքին առևտրի ֆիրման թողարկել է օֆսետ տպագրության համար նոր, փոքրաչափ մեքենա՝ «Ադաստ»: Այն մեծ արագությամբ կատարում է ինչպես հասարակ սև-սպիտակ, նույնպես և բազմագույն գեղարվեստական վերատպություններ: Տեխնիկապես պարզ է և վստահելի: «Ադաստ»-ի արտադրողականությունը հասնում է րոպեում 100 օտիսկի:

## ՈՒՐԱՆԻՑ ԾԱՆՐ ՏԱՐՐԵՐ

Մինչև օրս ամենածանր բնական տարրը համարվել է ուրանը՝ 92 ատոմական կշռով: Շատ գիտնականներ կարծում էին, թե դրանից ծանր տարրեր կարելի է ստանալ միայն արհեստական ճանապարհով և, իրոք, այդ ճանապարհով ստացվել են 106 ատոմական կշռով տարրեր, որոնք, սակայն, անկայուն են:

Ֆլորիդայի նահանգի Տալլախաս քաղաքի՝ Պոլ Դիրաքի գիտահետազոտական ինստիտուտի ֆիզիկոսներ Ռ. Վ. Ջենտրին և Թ. Ա. Կեխիլը բնական հանքանյութից ստացել են, այսպես կոչված, «գերծանր» տարրեր՝ 116, 124 և 126 ատոմական կշռով: Նրանք հաստատում են, որ այդ «գերծանր» տարրերի կյանքի տևողությունը մոտավորապես հասնում է միլիարդ տարվա, ուստի և դրանք կարելի է համարել կայուն: Այդ տարրերի հայտնաբերումը հավանական է դարձնում նոր «գերծանր» տարրերի գոյությունը:

## ՃՇԳՐԻՏ ՖՈՏՈՄԵՏՐ

Օդեսայի գիտնականները պատրաստել են սարք, որով ճշտորեն որոշվում է շրջապատող միջավայրի վիճակը: Գերզգայուն ֆոտոմետրը բացահայտում է ջրում, օդում կամ հողում սնդիկի միլիոներորդ գրամի առկայությունն իսկ:

Ընդհանրապես, այդպիսի քիմիական հետազոտությունների համար պահանջվում էր բավական ժամանակ: Այս նորույթի շնորհիվ այդ նույն աշխատանքը կարելի է կատարել 5—10 րոպեում:

## ՆՈՐ ԱՂՅՈՒՍ

Ժնևում պատրաստվել է ջերմաձայնամեկուսիչ աղյուս, որը բաղկացած է թեթև բետոնե երկու շերտից և դրանք միացնող մեկուսիչ միջնաշերտից: Այնքան լավ մեկուսիչ է քարե մանրաթելից այդ միջնաշերտը, որ նոր աղյուսից կառուցված տներում կարելի է շատ հանգիստ ապրել նույնիսկ օդանավակայանի կողքին:

Նոր աղյուսները լավ ջերմամեկուսիչ են: